## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**9** ՍԵՊՏԵՄԲԵՐ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ**
**«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении**


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ










# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն քննարկեց Չեխոսլովակիայի կոմկուսի Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՉՍՍՀ-ի պրեզիդենտ Գ. Հուսակի, ԳՍՄԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ԳԴՀ-ի Պետական խորհրդի նախագահ Է. Հոնեկերի, Ռումինական կոմկուսի գլխավոր քարտուղար, ՌՍՀ-ի պրեզիդենտ Ն. Չաուշեսկուի, ԼՄԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Է. Գերեկի, Բուլղարական կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար, ԲԺՀ-ի Պետական խորհրդի նախագահ Տ. Ժիվկովի, ՄԺՀԿ Կենտկոմի առաջին քարտուղար, ՄԺՀ-ի Ժողովրդական մեծ խուրալի նախագահության նախագահ Յու. Ցեդենբալի հետ Ղրիմում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ Լ. Ի. Բրեժնևի ունեցած հանդիպումների և զրույցների արդյունքները:

ՍՄԿԿ Կենտկոմը բարձր է գնահատում և լիովին հավանություն է տալիս ընկեր Լ. Ի. Բրեժնևի գործունեությանը: Վերջերս սովետական կուսակցական-կառավարական պատվիրակության Հունգարական Ժողովրդական Հանրապետություն կատարած այցի ժամանակ ՀՍԲԿ Կենտկոմի առաջին քարտուղար Յա. Կադարի հետ Լ. Ի. Բրեժնևի վարած բանակցությունները, Ղրիմի 1979 թվականի հանդիպումներն ու զրույցները կարևոր փուլ են ինչպես ներքին, այնպես էլ միջազգային խնդիրների լուծման գործում եղբայրական երկրների փոխգործողության հետագա ամրապնդման ճանապարհին:

Անցկացված հանդիպումների առանձնահատուկ նշանակությունն այն է, որ դրանց ուշադրության կենտրոնում էին գտնվում սոցիալիստական պետությունների երկարաժամկետ համագործակցության համար որոշակի նշանակություն ունեցող հեռանկարային հարցերը: Դա կարևոր է, մանավանդ որ աշխարհի սոցիալիստական մասի կոմունիստական ու բանվորական կուսակցությունները թևակոխում են նախահամագումարյան ժամանակաշրջան, երբ կնշվեն նոր հասարակության կառուցման աշխատանքի հերթական խոշոր ուղենիշները:

Ղրիմի 1979 թվականի հանդիպումները ցույց են տալիս, որ սոցիալիստական երկրները վստահաքայլ առաջ են ընթանում իրենց սոցիալ-քաղաքական ու տնտեսական զարգացման ասպարեզում: Նրանց նվաճումները առանձնապես ցայտունորեն են դրսևորվում կապիտալիստական աշխարհի դրության ֆոնի վրա, որը բնութագրվում է ճգնաժամային երևույթների հետագա ուժեղացմամբ:

Միևնույն ժամանակ սոցիալիստական երկրները հաշվի են առնում, որ համաշխարհային տնտեսական կոնյունկտուրայի բարդացումը որոշակի պրոբլեմներ է ստեղծում իրենց համար: Մասնավորապես դա վերաբերում է նավթի ու նավթամթերքների սպառման ձեռք բերված բարձր մակարդակի պահպանմանը, էներգետիկ կարողությունների աճի ապահովմանը:

Միավորելով ջանքերը էներգետիկայի պրոբլեմների լուծման համար, որի օրինակներ են հանդիսանում «Միություն» հզոր գազամուղի համատեղ շինարարությունը, ատոմային էլեկտրակայանների կառուցման խոշոր ծրագիրը, էներգիայի նոր աղբյուրների յուրացման ինտենսիվ աշխատանքը, ավանդական ռեսուրսներն օգտագործելիս կողմնորոշումը դեպի ամենաառաջադիմական տեխնոլոգիայի կիրառումը, սոցիալիստական ընկերակցության երկրները

կայուն հիմք են ստեղծում իրենց ժողովրդական տնտեսության հետագա աճի համար:

ՍՄԿԿ Կենտկոմը գոհունակությամբ նշում է, որ եղբայրական երկրները համառորեն հետևում են սոցիալիստական էկոնոմիկաների մասնագիտացումն ու կոոպերացումը զարգացնելու և խորացնելու կուրսին, որն արտացոլվեց նաև Ղրիմի հանդիպումների արդյունքներում: Այդ կուրսը հուսալիորեն տանում է դեպի գիտատեխնիկական առաջընթացի բարձունքների նվաճում, արտադրության արդյունավետության և արտադրանքի որակի բարձրացում՝ ի շահ սոցիալիզմի երկրների ժողովուրդների բարեկեցության հետագա աճի:

Տնտեսական փոխօգնության խորհրդի հավանությանն արժանացած համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերը, արտադրության կոոպերացման ու մասնագիտացման երկարաժամկետ զարգացման երկկողմ փաստաթղթերի վրա կատարվող աշխատանքի մոտալուտ ավարտումը ազգային և ինտերնացիոնալ մեծ նշանակություն ունեցող նոր պատասխանատու խնդիրներ են դնում ՍՍՀՄ պետպլանի, եղբայրական երկրների հետ համագործակցությանը մասնակցող սովետական բոլոր մինիստրությունների ու գերատեսչությունների առջև: Դրանց հետևողական կենսագործումը կդառնա առաջիկա 11-րդ հնգամյակի օրգանական մասը:

Ղրիմի 1979 թվականի հանդիպումները կրկին ցուցադրեցին եղբայրական սոցիալիստական պետությունների անսասան նվիրվածությունը խաղաղության և խաղաղ համագործակցության քաղաքականությանը: Սպառազինությունների մրցավազքը սանձահարելու և սահմանափակելու հետևողական գիծ, հաստատակ կողմնորոշում դեպի միջազգային լարվածության թուլացում, դեպի քաղաքական լարվածության թուլացումը ռազմական լարվածության թուլացմամբ լրացնելը, ժողովուրդների ազատ անկախ զարգացման իրավունքների պաշտպանություն՝ սրանք են սոցիալիստական արտաքին քաղաքականության հաստատ ուղղությունները, որոնք ծանրակշիռ հաստատում ստացան Ղրիմի հանդիպումների ընթացքում:

Արդի միջազգային կյանքի հարցերի հարցը սպառազինությունների մրցավազքի սահմանափակումն ու դադարեցումն է: Սոցիալիստական երկրների համոզմամբ հենց այդ ուղղությամբ կարևոր քայլ հանդիսացավ ստրատեգիական հարձակողական սպառազինությունների սահմանափակման սովետաամերիկյան նոր պայմանագրի ստորագրումը: Այդ պայմանագիրը համոզչորեն վկայում է, որ բարի կամքի առկայության դեպքում միանգամայն հնարավոր է գտնել անմիջականորեն պետությունների անվտանգությանը վերաբերող ամենաբարդ պրոբլեմների փոխադարձաբար ընդունելի լուծումներ:

Ռազմական լարվածության թուլացման գործում առաջադիմությունը կարելի է ապահովել միայն այն դեպքում, եթե դեպի այդ նպատակը գնան բոլոր կողմերը: Կենտրոնական Եվրոպայում զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու Վիեննայի բանակցություններում, զինաթափման կոմիտեում, սպառազինությունների մրցավազքի սանձահարման խնդրին նվիրված մյուս բանակցություններում սոցիալիստական երկրները հաստատակամորեն որոնում են կոնստրուկտիվ լուծումներ և պատասխան ջանքեր գործադրելու կոչ են անում Արևմուտքի երկրներին: Անշուշտ, արևմտաեվրոպական երկրների տերիտորիաներում զենքի, այդ թվում հրեշավոր կործանարար ներգործություն ունեցող զենքի նորանոր յեռներ կուտակելու ՆԱՏՕ-ի որոշակի շրջանների ձգտումը որևէ խելամիտ արդարացում չունի և չի կարող ունենալ: Եվրոպայում ռազմական հավասարակշռությունը իրողություն է: Եվ միանգամայն հնարավոր է քայլ առ քայլ նվազեցնել այստեղ միմյանց դիմակայող խմբավորումների զինված ուժերի ու սպառազինությունների մակարդակը:

Հելսինկիում ընդունված եզրափակիչ ակտի դրույթները լրիվ ծավալով հետևողականորեն իրացնելը,— իսկ դրա օգտին հանդես են գալիս բոլոր եղբայրական սոցիալիստական երկրները,— հուսալիորեն կծառայեր Եվրոպան կայուն խաղաղության, բարիդրացիության ու համագործակցության մայրցամաք դարձնելուն:



Սովետական Միությունը Վարշավայի պայմանագրի մյուս անդամների հետ հաստատակամորեն հանդես է գալիս Եվրոպայում փոխադարձ վստահության ամրապնդման միջոցառումներն ընդլայնելու, սոցիալիստական ու կապիտալիստական պետությունների ռազմական դիմակայումը թուլացնելու օգտին: Այդ նպատակով ԱՄՆ-ի և Կանադայի մասնակցությամբ համաեվրոպական կոնֆերանսի գումարումը, որն առաջարկել են Վարշավայի պայմանագրի մասնակիցները, Մադրիդում կայանալիք հանդիպման հաջող անցկացումը կարող էին էապես ազդել Եվրոպայի ու ամբողջ աշխարհի քաղաքական կլիմայի առողջացման վրա:

ՍՄԿԿ Կենտկոմը սկզբունքորեն կարևոր է համարում, որ Ղրիմի հանդիպումներում ընդգծվում էր իմպերիալիստական ու գերիշխանական ճնշման օբյեկտ դարձած բոլոր ժողովուրդների հետ սոցիալիստական պետությունների ինտերնացիոնալ համերաշխությունը այսուհետ ևս ամրապնդելու անհրաժեշտությունը: Այդ կապակցությամբ նշվեց Պեկինի նվաճողական քաղաքականության շարունակման վտանգավորությունը և կրկին հավաստվեց Սովետական Միության համերաշխությունը Վիետնամի, Լաոսի և Կամպուչիայի հետ: Իր բախտի տերը լինելու յուրաքանչյուր ժողովրդի իրավունքը սրբազան է և պետք է խստիվ հարգվի:

Սովետական Միությունը համակարծիք է չմիացած երկրների կառավարությունների ու պետությունների ղեկավարների ս. թ. սեպտեմբերին Հավանայում բացվող վեցերորդ կոնֆերանսի խաղաղասիրական, հակաիմպերիալիստական, հակագաղութային նպատակներին և պաշտպանում է դրանք:

ՍՄԿԿ Կենտկոմը համապատասխան մինիստրություններին ու գերատեսչություններին պարտավորեցրեց գործնական միջոցներ ձեռնարկել եղբայրական կուսակցությունների և երկրների ղեկավարների հետ ընկեր Լ. Ի. Բրեժնևի զրույցներից բխող խնդիրների իրականացման ուղղությամբ:

---

# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ ԵՎ ՍՍՀՄ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը որոշում են ընդունել «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին»:**

*ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ելնելով կուսակցության XXV համագումարի, Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումներից և ՍՍՀՄ սահմանադրության դրույթներից, անհրաժեշտ են համարում իրականացնել էկոնոմիկայի պլանային ղեկավարումն է՛լ ավելի կատարելագործելու, արտադրության կառավարման գործում դեմոկրատական հիմունքները զարգացնելու և աշխատավորական կոլեկտիվների ստեղծագործական նախաձեռնությունը բարձրացնելու միջոցառումների սիստեմ:*

*Խնդիրն այն է, որ բարձրացվի պլանավորման և տնտեսավարման մակարդակը, դրանք համապատասխանեցվեն արդի փուլի՝ զարգացած սոցիալիզմի փուլի պահանջներին, ձեռք բերվի հանրային արտադրության արդյունավետության նշանակալի բարձրացում, գիտատեխնիկական առաջադիմության արագացում և աշխատանքի արտադրողականության աճ, բարելավվի արտադրանքի որակը և այդ հիման վրա ապահովվի երկրի էկոնոմիկայի և սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ վերելքը:*

**I. Ժողովրդական տնտեսության մեջ պլանային աշխատանքի մակարդակը բարձրացնելու միջոցառումների մասին:** *Որոշման մեջ նշվում է, որ ամբողջ պլանային աշխատանքի բարելավման կարևորագույն ուղղություններն են ժողովրդատնտեսական վերջնական բարձր արդյունքների հասնելու առավել արդյունավետ ուղիների ընտրությունը, ճյուղային և տերիտորիալ զարգացման, հեռանկարային և ընթացիկ պլանների ռացիոնալ զուգակցումը, միջճյուղային և ներճյուղային համամասնությունների կատարելագործումը, էկոնոմիկայի հաշվեկշռված աճի ապահովումը:*

*ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ մինիստրություններին ու գերատեսչություններին և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդներին առաջարկված է ՍՍՀՄ տնտեսական և սոցիալական զարգացման պլանները մշակելիս ապահովել՝*

*տնտեսական և սոցիալական պրոբլեմների կոմպլեքսային լուծումը, ուժերի և ռեսուրսների համակենտրոնացումը համապետական կարևորագույն ծրագրերի կատարման վրա, թույլ չտալով նեղ-ճյուղային մոտեցում պլանների մշակմանը.*

*հանրային աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի աճի տեմպերի արագացման նպատակին ուղղված գիտատեխնիկական հայտնագործությունների և հետազոտությունների իրացման արագացումը.*

*արտադրական ֆոնդերի, նյութական, աշխատանքային և ֆինանսական ռեսուրսների ռացիոնալ օգտագործումը, ժողովրդական տնտեսության մեջ խնայողության ռեժիմի ուժեղացումը և կորուստների վերացումը.*



*ճյուղերի և տնտեսական շրջանների զարգացման գործում առաջնությունների ճիշտ սահմանումը՝ ժողովրդատնտեսական համամասնությունների մեջ առաջադիմական փոփոխություններն ապահովելու, կապիտալ ներդրումների և ամբողջ հանրային արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար.*

*էկոնոմիկայի համամասնական և հաշվեկշռված զարգացման համար անհրաժեշտ նյութական և ֆինանսական ռեզերվների ստեղծումը:*

*ՍՍՀՄ պետպլանը կոչված է որակական նոր մակարդակի բարձրացնել պլանավորման բովանդակությունը՝ հեռանկարային պլանների դերի ուժեղացման, ծրագրային-նպատակային մեթոդի լայն կիրառման, գիտականորեն հիմնավորված տեխնիկատնտեսական նորմաների ու նորմատիվների սիստեմի ներդրման հիման վրա:*

*Որոշմամբ սահմանված է տնտեսական ու սոցիալական զարգացման հեռանկարային և ընթացիկ պլանները կազմելու կարգը:*

*Նախատեսված են մի շարք միջոցառումներ, որոնց նպատակն է ուժեղացնել հնգամյա պլանի դերը, որպես երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման պլանավորման գլխավոր ձևի և ձեռնարկությունների, միավորումների ու մինիստրությունների տնտեսական գործունեության կազմակերպման հիմքի: Նախատեսվում է մասնավորապես հնգամյա պլանի կազմում յուրաքանչյուր տարվա համար մշակել նյութական և աշխատանքային ռեսուրսների, արտադրական կարողությունների հաշվեկշիռներ, ֆինանսական հաշվեկշիռ և բնակչության դրամական եկամուտների ու ծախսերի հաշվեկշիռ. հաստատել տնտեսական նորմատիվները. տնտեսական կառավարման բոլոր մակարդակներում հնգամյա պլանի կատարումը գնահատել հնգամյակի սկզբից աճող արդյունքով:*

*ՍՍՀՄ պետպլանին հանձնարարված է ՍՍՀՄ շահագրգռված մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների մասնակցությամբ որոշել և մինչև հերթական հնգամյակի սկիզբը հաստատել նպատակային կոմպլեքսային գիտատեխնիկական, տնտեսական և սոցիալական ծրագրերի, ինչպես նաև առանձին շրջանների և տերիտորիալ-արտադրական կոմպլեքսների զարգացման ծրագրերի ցանկը, դրանց մշակման կարգն ու ժամկետները: Մոտակա հեռանկարի նկատառումով առաջնահերթ ծրագրերի թվում նախատեսվում է վառելիքի և մետաղի խնայողության, ԲԱՄ-ի շինարարության և այդ մայրուղու անցման շրջաններում արդյունաբերության զարգացման, ձեռքի աշխատանքի կիրառումը կրճատելու, ժողովրդական սպառման նոր ապրանքների արտադրությունն ավելացնելու ծրագրերի մշակումը:*

*ՍՍՀՄ տնտեսական ու սոցիալական զարգացման տարեկան պլանները կազմել հնգամյա պլանի՝ տվյալ տարվա առաջադրանքների և տնտեսական նորմատիվների հիման վրա, նախատեսելով հիշյալ առաջադրանքների անհրաժեշտ կոնկրետացում, գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների ներդրում, ինչպես նաև հնգամյա պլանի կատարումն ապահովող տնտեսական և կազմակերպական միջոցառումների կիրառում:*

*Տարեկան պլանի կազմումը սկսել ներքևից՝ արտադրական միավորումներից (ձեռնարկություններից) և կազմակերպություններից: Սոցիալիստական մրցության ծավալման և ներտնտեսական ռեզերվների օգտագործման հիման վրա արտադրական միավորումների (ձեռնարկությունների) և կազմակերպությունների կոլեկտիվները մշակում են հանդիպական պլաններ, որոնք գերազանցում են հնգամյա պլանի՝ համապատասխան տարվա համար սահմանված առաջադրանքները: Արտադրական միավորումների (ձեռնարկությունների) ու կազմակերպությունների նախաձեռնությամբ ընդունված և նյութական ռեսուրսների հետ համաձայնեցված հանդիպական պլանները մտցվում են տարեկան պլանի կազմի մեջ:*

*Արտադրական միավորումների (ձեռնարկությունների) և կազմակերպությունների հնգամյա ու տարեկան պլանները կազմել տնտեսական և ինժեներային հաշվարկների հիման վրա, թույլ չտալով պլանային առաջադրանքների*

սահմանում՝ ելնելով միայն համապատասխան ցուցանիշների ստեղծված դինամիկայից:

Կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները, տնտեսական մարմինները պետք է ապահովեն արտադրական միավորումների (ձեռնարկությունների) և կազմակերպությունների աշխատավորական կոլեկտիվների ակտիվ մասնակցությունը հնգամյա և տարեկան պլանների մշակմանը, ինչպես նաև դրանց կատարման նկատմամբ վերահսկողության իրականացմանը:

Որոշման մեջ սահմանվում է հնգամյա պլաններում արդյունաբերական մինիստրությունների, միավորումների ու ձեռնարկությունների համար հաստատվող (բաշխելով ըստ տարիների) ցուցանիշների և տնտեսական նորմատիվների սիստեմը:

Ցուցանիշների թվում մասնավորապես նախատեսվում են՝ զուտ արտադրանքի (նորմատիվային), իսկ առանձին ճյուղերում՝ ապրանքային արտադրանքի աճը համադրելի գներով. արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը նատուրալ արտահայտությամբ. աշխատանքի արտադրողականության աճը. արտադրանքի մեկ ռուբլու դիմաց աշխատավարձի նորմատիվը. բանվորների և ծառայողների թվի լիմիտը և ձեռքի աշխատանքի կիրառումը կրճատելու առաջադրանքը. շահույթի ընդհանուր գումարը, իսկ առանձին ճյուղերում՝ արտադրանքի ինքնարժեքի իջեցումը. հիմնական ֆոնդերի, արտադրական կարողությունների և օբյեկտների գործարկում. պետական կապիտալ ներդրումների և շինմոնտաժային աշխատանքների լիմիտը. նոր տեխնիկայի ներդրման առաջադրանքները և գիտատեխնիկական միջոցառումների կիրառումից ստացվող տնտեսական արդյունքը. նյութատեխնիկական ռեսուրսների կարևորագույն տեսակների մատակարարումների ծավալը:

Զուտ արտադրանքի ցուցանիշին անցնելը իրականացվում է համապատասխան ճյուղերը դրան նախապատրաստելու համեմատ:

Որոշման մեջ նախատեսվում է, որ սկսած տասնմեկերորդ հնգամյակից, տարեկան պլանների մեջ արդյունաբերական մինիստրությունների, միավորումների, ձեռնարկությունների համար հաստատվում են ցուցանիշներ, որոնք կոնկրետացնում, իսկ առանձին դեպքերում ճշգրտում են հնգամյակի համապատասխան տարվա համար սահմանված առաջադրանքները: Մինիստրությունները, միավորումներն ու ձեռնարկությունները մի շարք ցուցանիշներ ու նորմատիվներ տարեկան պլանների մեջ հաստատում են ինքնուրույնաբար, ելնելով հնգամյա պլանի համապատասխան տարվա առաջադրանքներից կամ նորմատիվներից: Ըստ կնքված պայմանագրերի արտադրանքի մատակարարումների պարտավորությունների կատարումը գնահատելու համար միավորումների և ձեռնարկությունների համար հաստատվում է իրացվող արտադրանքի ծավալ:

ՍՍՀՄ պետպլանին՝ շահագրգռված մինիստրությունների և գերատեսչությունների հետ համատեղ 1979—1980 թվականներին անհրաժեշտ փոփոխություններ մտցնել արտադրվող արտադրանքի նատուրալ չափանիշների սիստեմի մեջ՝ գիտականորեն հիմնավորված տեխնիկատնտեսական ցուցանիշների կիրառման հիման վրա, որոնք թույլ են տալիս հաշվի առնել արտադրանքի արդյունավետությունը, որակը և մյուս սպառողական հատկությունները, ինչպես նաև իրականացնել անցում սարքավորումների արտադրության պլանավորմանը ըստ ընդլայնված արտադրացանկի՝ չափման այնպիսի միավորներով, որոնք ավելի լրիվ են արտացոլում նրա արտադրողականությունը և մյուս տնտեսական հատկանիշները:

Որոշման մեջ նախատեսված է, որ ՍՍՀՄ-ի, միութենական ու ինքնավար հանրապետությունների, երկրամասերի, մարզերի, քաղաքների ու շրջանների, ինչպես նաև մինիստրությունների, գերատեսչությունների, միավորումների, ձեռնարկությունների և կազմակերպությունների տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների կազմի մեջ մշակվում են հավաքական բաժիններ՝ սոցիալական զարգացման ընագավառի միջոցառումների ամբողջ կոմպլեքսի գծով, ներառյալ աշխատողների աշխատանքի պայմանների բարելավ-



ման, նրանց որակավորման և պրոֆեսիոնալ վարպետության բարձրացման, բնակչության հանրակրթական և կուլտուրական մակարդակի բարձրացման, կյանքի, բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների, բժշկական սպասարկման բարելավման միջոցառումները և սոցիալական զարգացման մյուս միջոցառումները՝ դրանք շաղկապելով արտադրության զարգացման, կապիտալ շինարարության և դրանց արդյունավետության բարձրացման առաջադրանքների հետ:

Տնտեսական ու սոցիալական զարգացման պլաններում գիտության ու տեխնիկայի նվաճումների համակողմանի հաշվառումն ապահովելու համար ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն և ՍՍՀՄ պետշինը, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի հետ համատեղ, պետք է մշակեն գիտատեխնիկական կարևորագույն պրոբլեմների և բնական ռեսուրսների կոմպլեքսային օգտագործման պրոբլեմների լուծման ծրագրեր, հաշվի առնելով ֆունդամենտալ և կիրառական հետազոտությունների արդյունքների գործադրումը, և դրանցում որոշել աշխատանքների վերջնական նպատակները, տեխնիկատնտեսական արդյունքները, իրականացման ժամկետներն ու փուլերը:

ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդները կմշակեն ու կհաստատեն ճյուղերի տեխնիկական մակարդակի բարձրացման պլանները, ինչպես նաև բնության և շրջակա միջավայրի պահպանության աշխատանքների պլանները:

ՍՍՀՄ ստանդարտների պետական կոմիտեին առաջարկված է 1979—1981 թվականներին վերանայել մեքենաների ու սարքավորումների հնացած ստանդարտները, ավարտել ժողովրդական սպառման ապրանքների կարևորագույն տեսակների ստանդարտացման կոմպլեքսային ծրագրերի մշակումը, դրանցում ապահովելով համաձայնեցված պահանջներ հումքի, նյութերի, կոմպլեկտավորող առարկաների և պատրաստի արտադրանքի նկատմամբ:

Սահմանվում է կարգ, որի համաձայն ՍՍՀՄ մինիստրություններն ու գերատեսչությունները և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդները պարտավոր են իրականացնել նոր ձեռնարկությունների նախագծում ու շինարարություն, գործող ձեռնարկությունների ընդլայնում և վերակառուցում՝ արտադրության բարձր արդյունավետ տեխնոլոգիայի և նորագույն տեխնիկայի կիրառման հիման վրա, որոնք նոր գործարկվող կարողություններում ապահովեն այնպիսի արտադրանքի թողարկումը, որն իր տեխնիկական մակարդակով և որակով համապատասխանի հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին կամ գերազանցի դրանց:

ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեն շահագրգռված մինիստրությունների ու գերատեսչությունների հետ համատեղ 1979—1980 թվականներին պետք է կատարի թողարկվող մեքենաների, սարքավորումների և արտադրական նշանակություն ունեցող մյուս տեխնիկայի տեխնիկական մակարդակի գնահատում: Մշակել և իրականացնել պատրաստվող և նոր յուրացվող առարկաների տեխնիկատնտեսական ցուցանիշները բարձրացնելու միջոցառումներ և արտադրությունից հանել հնացած արտադրանքը: Հետագայում այդպիսի գնահատում կատարել պարբերաբար:

Անհրաժեշտ է համարվել բարձրացնել ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ մինիստրությունների և գերատեսչությունների պատասխանատվությունը տնտեսական ու սոցիալական զարգացման պետական պլանների առաջադրանքների հաշվեկշռվածության համար: Սահմանված է տասնամյա ժամանակամիջոցի, հնգամյակի և մեկ տարվա համար նյութական հաշվեկշիռներ մշակելու կարգը: Անհրաժեշտ տեսականու և որակի արտադրանքի ասպարեզում ժողովրդական տնտեսության և բնակչության պահանջմունքի բավարարման համար պատասխանատվություն են կրում այն մինիստրությունները, որոնք գլխավորող են տվյալ արտադրանքի արտադրության մեջ:

Որոշմամբ նախատեսված է հիմնականում 1980 թվականին ավարտել արտադրական միավորումների (ձեռնարկությունների) փոխադրումը տևական տնտեսական ուղղակի կապերի: Տևական տնտեսական ուղղակի կապերի դեպքում արդյունաբերության արտադրական միավորումների (ձեռնարկություննե-

ծությունը ուժեղացնելու նպատակով նախատեսվում է տասնմեկերորդ հնգամյակից սկսած հնգամյա պլանով հաստատված առաջադրանքների հիման վրա արդյունաբերական մինիստրությունների համար սահմանել (նրանց պատրաստ լինելու համեմատ) շահույթից կատարվող այն մասհանումների կայուն նորմատիվ (բաժանելով ըստ տարիների), որոնք նրանց տրամադրության տակ են դրվում արտադրության, գիտության ու տեխնիկայի զարգացման պլանային ծախսումների ֆինանսավորման և տնտեսական խթանման ֆոնդերի գոյացման համար։ Կապիտալ ներդրումների ֆինանսավորման սեփական միջոցների անբավարարության դեպքում որոշմամբ նախատեսվում է օգտագործել բանկային վարկը և պետական բյուջեի միջոցները։

Գիտատեխնիկական առաջադիմությունը արագացնելու և նոր բարձրարդյունավետ արտադրանքի թողարկումը ընդլայնելու համար նախատեսվում է 1980 թվականին ավարտել արդյունաբերական մինիստրությունների գիտահետազոտական, կոնստրուկտորական, նախագծային-կոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների, փորձառական (փորձարարական) կազմակերպությունների, գիտաարտադրական և արտադրական միավորումների (ձեռնարկությունների) փոխադրումը պատվեր-կարգադրերի (պայմանագրերի) հիման վրա նոր տեխնիկայի ստեղծման, յուրացման և ներդրման աշխատանքների կազմակերպման տնտհաշվարկային սիստեմի։

Մինիստրություններում և գերատեսչություններում ստեղծվում է գիտության ու տեխնիկայի զարգացման միասնական ֆոնդ՝ գիտահետազոտական, փորձարարական-կոնստրուկտորական ու տեխնոլոգիական աշխատանքների ֆինանսավորման և այն ծախսերի փոխհատուցման համար, որոնք կապված են արտադրանքի նոր տեսակների և տեխնոլոգիական պրոցեսների մշակման և յուրացման, աշխատանքի գիտական կազմակերպման արմատավորման հետ, ինչպես նաև արտադրանքի որակի բարելավման լրացուցիչ ծախսերի և նոր արտադրանքի արտադրության առաջին տարիներին ավելի բարձր ծախսերի ֆինանսավորման հետ։

Սահմանվում է, որ նոր տեխնիկայի ստեղծման և արմատավորման համար գիտաարտադրական և արտադրական միավորումների (ձեռնարկությունների), գիտահետազոտական, նախագծային-կոնստրուկտորական և տեխնոլոգիական կազմակերպությունների աշխատողների պարգևատրումը իրականացվում է այն ամբողջական տնտեսական արդյունքի համեմատ, որը փաստորեն ստացվել է ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների օգտագործման շնորհիվ։ Մեքենաշինության գիտաարտադրական և արտադրական միավորումներում (ձեռնարկություններում) ու կազմակերպություններում մտցվում են միանվագ պարգև-հավելավճարներ սարքավորումների ու մեքենաների հատկապես կարևոր և բարձրարդյունավետ տեսակների մշակման, յուրացման ու մասսայական թողարկման համար, ինչպես նաև սկզբունքորեն նոր տեխնոլոգիական պրոցեսների ստեղծման ու յուրացման համար՝ աշխատանքների ղեկավարներին և այն աշխատողներին խրախուսելու նպատակով, որոնք անմիջականորեն մասնակցել են տեխնիկայի այդ տեսակների ու տեխնոլոգիական պրոցեսների ստեղծմանն ու յուրացմանը։

Բարձրորակ արտադրանքի թողարկումն ընդլայնելու և արտադրանքի տեսականու սիստեմատիկ նորացումն ապահովելու գործում տնտեսական լծակների դերի ուժեղացման համար նախատեսվում են ատեստավորման սիստեմի հետագա զարգացման և արտադրատեխնիկական արտադրանքի որակի բարելավման խթանման միջոցառումներ։ Ընդ որում, բարձրացվում են իր հատկանիշներով հայրենական և արտասահմանյան լավագույն նմուշներին համապատասխանող նոր բարձրարդյունավետ արտադրանքի մեծածախ գնի խրախուսական հավելավճարի չափերը՝ կախված այդ արտադրանքի թողարկումից և օգտագործումից ստացվող տարեկան տնտեսական արդյունքից։

Նոր բարձրարդյունավետ արտադրանքի և պետական որականիշ ստացած արտադրանքի մեծածախ գնի հավելավճարը մեծացվում է այն դեպքերում, երբ այդ արտադրանքի արտադրությունը հիմնված է հայտնագործություններ կամ գյուտեր ճանաչված մշակումների վրա։ Բարձրացվում են նաև պահանջները



այն արտադրանքի նկատմամբ, որին շնորհվում է որականիշ, ինչպես նաև ուժեղացվում է բարոյապես հնացած արտադրանքի թողարկման համար սանկցիաների դերը։

Ժողովրդական սպառման ապրանքների որակի զգալի բարելավման և դրանց պետական որականիշի շնորհման դեպքում արտադրական միավորումների (ձեռնարկությունների) տնտեսական խթանման ֆոնդերի համար մասհանումները կատարվում են ավելի բարձր չափերով, հաստատված նորմատիվներին համապատասխան։

Աշխատանքի արտադրողականության աճի արագացմամբ և կադրերի հոսունության կրճատմամբ աշխատավորական կոլեկտիվների շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով արտադրանքի մեկ ռուբլու դիմաց աշխատավարձի երկարաժամկետ նորմատիվների կիրառման հիման վրա ուժեղացնել յուրաքանչյուր աշխատողի և ամբողջ աշխատավորական կոլեկտիվի աշխատավարձի կախումը արտադրական միավորումների (ձեռնարկությունների) աշխատանքի արտադրողականության աճից և աշխատանքի վերջնական արդյունքների բարելավումից։ Այդ նորմատիվները որոշելիս ելնել աշխատանքի տեխնիկապես հիմնավորված նորմաներից և նախատեսել աշխատավարձի աճի համեմատությամբ աշխատանքի արտադրողականության ավելի արագ աճ։

Որոշմամբ արտադրական միավորումներին (ձեռնարկություններին) իրավունք է վերապահված սահմանված նորմատիվի կամ աշխատավարձի պլանային ֆոնդի դիմաց ստացված աշխատավարձի ֆոնդի խնայողության հաշվին տարիֆային դրույքներից ու ռոճիկներից բացի հավելավճար տալ բանվորներին և ինժեներատեխնիկական աշխատողներին։ Աշխատանքի ցուցանիշների վատացման դեպքում վերոհիշյալ հավելավճարումները վերացվում են։

Աշխատանքի տեխնիկապես հիմնավորված նորմաների արմատավորման և ժամանակին դրանց վերանայման նախաձեռնությունը խթանելու համար նախատեսվում է բանվորներին միանվագ պարգև-հավելավճար տալ այդ նորմաների վերանայման շնորհիվ ստացվող խնայողության հաշվին։

Մինիստրություններին, գերատեսչություններին, միավորումներին, ձեռնարկություններին ու կազմակերպություններին առաջարկված է մշակել և իրականացնել աշխատանքի կազմակերպման և խթանման բրիգադային ձևը լայնորեն զարգացնելու միջոցառումներ, նկատի ունենալով, որ տասնմեկերորդ հնգամյակում այդ ձևը պետք է դառնա հիմնականը։

Արտադրական բրիգադների կոլեկտիվներին (խորհուրդներին) իրավունք է վերապահված իրենց համար սահմանված նորմատիվների և միջոցների սահմաններում որոշել բրիգադի ամբողջ կոլեկտիվի աշխատանքի արդյունքների դիմաց վճարվող պարգև-հավելավճարների ու վաստակի չափերը, հաշվի առնելով բրիգադի յուրաքանչյուր անդամի ռեալ ներդրումը աշխատանքի ընդհանուր արդյունքների մեջ. բրիգադի անդամներին ներկայացնել հավելավճարումների և լրացուցիչ վարձատրության՝ պրոֆեսիոնալ վարպետության և մասնագիտությունների համատեղման համար ադմինիստրացիային և արհմիութենական կազմակերպությանը առաջարկել սահմանված կարգով փոխել աշխատողի կարգը, հաշվի առնելով նրա աշխատանքի որակը. որոշել բրիգադի ներսում սոցիալիստական մրցության հաղթողներին և նրանց խրախուսման չափերը. ներգործարանային սոցիալիստական մրցության արդյունքների հիման վրա բրիգադի անդամներից թեկնածուներ առաջադրել նյութական ու բարոյական խրախուսման համար։

Որոշման մեջ սահմանված են միջոցառումներ ռեսուրսների լավագույն օգտագործմամբ միավորումների (ձեռնարկությունների) շահագրգռվածությունը բարձրացնելու նպատակով։

Սահմանվում է արտադրանքի մատակարարումների վերաբերյալ պայմանագրերի խախտման համար սանկցիաների կիրառման պարտադիր լինելը։

Կնքված պայմանագրերին համապատասխան մատակարարված արտադրանքի դիմաց ժամանակին վերջնահաշիվները ապահովելու և վճարային կարգապահության պահպանման համար գնորդների պատասխանատվությունը բարձրացնելու նպատակով նախատեսվում է, որ վճարման ժամկետը լրանալիս

և գնորդի մոտ ժամանակավորապես միջոցներ չլինելու դեպքում նրա հաշվարական վճարային փաստաթղթերի դիմաց վճարում են ՍՍՀՄ պետբանկը և ՍՍՀՄ շինբանկը դրամական վարկի հաշվին, այդ վարկի պարտքը վերագրելով գնորդին։



Պլանավորման և տնտեսական խթանման կատարելագործման որոշման մեջ նախատեսված միջոցառումները տարածվում են արդյունաբերության բոլոր ճյուղերի և կապիտալ շինարարության վրա։ Արդյունաբերության և շինարարության առանձին ճյուղերում դրանց կիրառման առանձնահատկությունները սահմանում է ՍՍՀՄ պետպլանը՝ ՍՍՀՄ ֆինանսների մինիստրության և ՍՍՀՄ աշխատանքի ու սոցիալական հարցերի պետական կոմիտեի հետ համատեղ, իսկ շինարարության մեջ՝ նաև ՍՍՀՄ պետշինի հետ համատեղ։

Ժողովրդատնտեսական բեռների և ուղևորների փոխադրումների կազմակերպումը արմատապես բարելավելու, ինչպես նաև տրանսպորտի ձեռնարկությունների ու կազմակերպությունների գործունեության վերջնական արդյունքների վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունը ուժեղացնելու նպատակով որոշումը հաղորդակցության ճանապարհների մինիստրությանը, ծովային նավատորմի մինիստրությանը, քաղաքացիական ավիացիայի մինիստրությանը, միութենական հանրապետությունների ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրություններին, ՌՍՖՍՀ գետային նավատորմի մինիստրությանը պարտավորեցնում է մշակել տվյալ հարցի վերաբերյալ առաջարկություններ։

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը ՍՍՀՄ պետպլանի, ՍՍՀՄ պետմատի, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, ՍՍՀՄ պետշինի, ՍՍՀՄ ֆինանսների մինիստրության, ՍՍՀՄ աշխատանքի ու սոցիալական հարցերի պետական կոմիտեի, ՍՍՀՄ գների պետական կոմիտեի, ՍՍՀՄ պետբանկի, ՍՍՀՄ շինբանկի, ինչպես նաև ՍՍՀՄ մյուս մինիստրությունների ու գերատեսչությունների և միութենական հանրապետությունների մինիստրների խորհուրդների կարևորագույն խնդիրներից մեկն են համարում սույն որոշմամբ նախատեսված միջոցառումների կիրառումը։

---

# ՄԱՐՔՍԻԶՄ—ԼԵՆԻՆԻԶՄԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՄԱՆ ՀԱՄԱՐ

## ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ՍԻՍՏԵՄԻ ՆՈՐ ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԻՆ ՍԿՍԵԼՈՒ ԱՌԹԻՎ

ՍՈՎԵՏԱԿԱՆ ԺՈՂՈՎՈՒՐԴԸ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ հաստատակամորեն պայքարում է 1979 թվականի և ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի պլանների հաջող կատարման, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա աճի, մեր հայրենիքի հզորության ամրապնդման համար։

Իր ամբողջ հեղափոխական-վերափոխիչ գործունեության մեջ մեր կուսակցությունն անշեղորեն ղեկավարվում է մարքսիզմ-լենինիզմով։ Կոմունիստների, բոլոր սովետական մարդկանց գիտակցականության, աշխատանքային ու քաղաքական ակտիվության բարձրացումը նա դիտում է որպես կոմունիստական շինարարության խնդիրների հաջող իրականացման վճռական պայման։ Կոմունիստական դաստիարակության արդյունավետության բարձրացման նկատառմամբ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հոգատարության նոր դրսևորումը դարձավ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը։

Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի միջուկն է բոլոր սովետական մարդկանց մեջ գիտական աշխարհայացքի, կուսակցության գործին, կոմունիստական իդեալներին անսահման նվիրվածության, սոցիալիստական հայրենիքի նկատմամբ սիրո, պրոլետարական ինտերնացիոնալիզմի կազմավորումը։ Այս խնդրի լուծման գործում մարքս-լենինյան կրթությանը առաջատար դեր է պատկանում։

Մարքսիզմ-լենինիզմի մասսայական ուսումնասիրությունը սովետական ապրելակերպի բնորոշ գիծն է դարձել։ Անցած ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմում պարապել են ավելի քան 22 միլիոն կոմունիստ և անկուսակցական ակտիվիստ, կոմերիտական քաղուսավորության ցանցում՝ 8 միլիոն երիտասարդ աշխատավոր, ավելի քան 40 միլիոն բանվոր, կոլտնտեսական, ծառայող սովորել են տնտեսագիտական կրթության սիստեմում և պրոպագանդայի մասսայական ձևերում։ Նրանք ուսումնասիրել են մարքս-լենինյան տեսությունը, ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան ու նոյեմբերյան (1978 թ.) պլենումների փաստաթղթերը, ՍՍՀՄ արտաքին քաղաքականության և համաշխարհային ասպարեզում գաղափարական պայքարի հարցերը, ընկեր Լ. Ի. Բրեժնևի աշխատությունները, նրա «Մալայա զեմլյա», «Վերածնունդ», «Խոպան» գրքերը։ Ունկնդիրների մոտ 70 տոկոսը տիրապետել է նոր դասընթացների՝ «Զարգացած սոցիալիզմի սահմանադրությունը» և «ՍՄԿԿ գաղափարական աշխատանքի հրատապ հարցերը»։

Այս ամենը նպաստել է կոմունիստների, բոլոր ունկնդիրների կողմից կուսակցության ներքին ու արտաքին քաղաքականության, երկրի սոցիալ-տնտեսական զարգացման հեռանկարների խոր ըմբռնմանը։

Սակայն չի կարելի չտեսնել, և դա նշված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, որ կուսակցական ու կոմերիտական ուսուցման, տնտեսագիտական կրթության կազմակերպման գործում, պրոպագանդայի մասսայական ձևերում քիչ չեն էական թերություններն ու թուլությունները։ Շատ դեպքերում ցածր է կոմունիստների ու կոմերիտականների, ղեկավար կադրերի պատասխանատվությունը հեղափոխական տեսության ստեղծագործական ուսումնասիրման համար, հաղթահարված չեն ձևականությունը և տիրացուականությունը, միշտ չէ, որ պարապմունքների որակը համապատասխանում է ունկնդիրների աճած կրթական ու կուլտուրական մակարդակին։

Այս և մյուս թերությունների վերացումը քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման որակի և ներգործունության բարձրացման մեծ ռեզերվ է։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն խնդիր է դրել կուսակցական կազմակերպություններին, գաղափարական հիմնարկների, պրոպագանդիստական կադրերի ուշադրությունը կենտրոնացնել պրոպագանդայի և ագիտացիայի բարձր գիտական մակարդակի ապահովման, դրանց գործարարության ու կոնկրետության ուժեղացման, տնտեսական ու քաղաքական խնդիրների լուծման, բուրժուական գաղափարախոսության ու բարոյախոսության նկատմամբ անհաշտվողականության դաստիարակման, կյանքի հետ նրա կապի ամրապնդման վրա։

«Կուսակցության հեղափոխական տեսության, քաղաքականության իմացությունը,— ընդգծված է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ,— սովետական մարդկանց մեջ պետք է վերածվի կոմունիզմի համար, խորթ գաղափարախոսության ամեն տեսակ դրսևորումների դեմ պայքարող կայուն մարտիկի համոզմունքի, նրա ակտիվ կենսադիրքորոշման, դառնա գործողության ուղեցույց զարգացած սոցիալիզմի հրատապ պրոբլեմների լուծման համար»։ Առաջիկա ուսումնական տարին պետք է լուրջ ավանդ ներդնի այս խնդրի իրականացման գործում։

Քաղաքական կրթության կատարելագործման հիմնական ուղին է ուսումնական պրոցեսի գաղափարական-տեսական մակարդակի բարձրացումը, դրա բովանդակության հրատապացումը, աշխարհայեցական նպատակամղվածության ուժեղացումը։ Կուսակցական կազմակերպությունները կոչված են ապահովելու կոմունիստների, անկուսակցական ակտիվի կողմից Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների, մարքսիզմ-լենինիզմի բաղկացուցիչ մասերի, ՍՄԿԿ պատմության, կուսակցական համագումարների փաստաթղթերի, ընկեր Լ. Ի. Բրեժնևի, կուսակցության մյուս ղեկավարների աշխատությունների խոր և ստեղծագործական ուսումնասիրումը։ Կարևոր է մարքս-լենինյան ուսմունքը բացահայտել որպես ի շահ աշխատավորների հասարակության հեղափոխական վերափոխման՝ պատմական փորձով ստուգված գիտություն, համոզիչ կերպով ցույց տալ ՍՄԿԿ-ի հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներին, կուսակցության անդուլ կոլեկտիվ գործունեությունը գիտական կոմունիզմի տեսության ու պրակտիկայի ստեղծագործական զարգացման ուղղությամբ։ Այդպիսի մոտեցումը քաղաքական կրթության բովանդակության նկատմամբ, անկասկած, կնպաստի դրա արդյունավետության բարձրացմանը։

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման սիստեմի նոր տարին ընթանալու է տասներորդ հնգամյակի եզրափակիչ փուլում, Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 110-րդ տարեդարձին և ՍՄԿԿ XXVI համագումարին նախապատրաստվելու ժամանակաշրջանում։ Անմար է սովետական մարդկանց հետաքրքրությունը լենինյան տեսական ժառանգության նկատմամբ։ Յուրաքանչյուր նոր սերունդ, կյանք մտնելով, լենինիզմի գանձարանից քաղում է ոգու ուժ, կենսական նպատակների պարզություն, անսահման հավատ կոմունիստական իդեալների նկատմամբ։ Կուսակցությունը բոլոր սովետական մարդկանց կոչ է անում ապրել, աշխատել ու պայքարել լենինաբար, կոմունիստաբար։ Անհրաժեշտ է բոլոր պայմաններն ստեղծել կոմունիստներին ու բոլոր աշխատավորներին լենինյան գաղափարների հարստությանն ավելի լայնորեն հաղորդակից դարձնելու համար։



Կուսակցական և կոմերիտական ուսուցման, տնտեսագիտական կրթության և մասսայական պրոպագանդայի բոլոր ձևերում պարապմունքները նոր ուսումնական տարում սկսվելու են «Լենինիզմը մեր դարաշրջանի հեղափոխական դրոշն է» թեմայի ուսումնասիրությունից։ Այդ պարապմունքի նպատակն է կրկին անգամ ցույց տալ Լենինի՝ մարդու, մտածողի, Կ. Մարքսի ու Ֆ. Էնգելսի ուսմունքի և գործի հանճարեղ շարունակողի, պրոլետարական հեղափոխության և հասարակության սոցիալիստական վերափոխման մեծ տեսաբանի ու ստրատեգի վեհությունը։ Կարևոր է բացահայտել մարքսիզմ-լենինիզմի՝ որպես կոմունիստական գաղափարախոսության ամբողջական, ինտերնացիոնալ բնույթը, գաղափարախոսություն, որը ոչ անցողական նշանակություն ունի ամբողջ համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման համար։

Ուսումնական տարին կավարտվի «Լենինի գործը ապրում և հաղթանակում է» թեմայով։ Խնդիրն այն է, որ ունկնդիրներն ընդհանուր տեսական հարցերի հետ միասին վերլուծեն կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման, սոցիալիստական հասարակական հարաբերությունների կատարելագործման ու նոր մարդու դաստիարակման ուղղությամբ իրենց աշխատավորական կոլեկտիվների գործունեության տարբեր կողմերը, ավելի խորապես գիտակցեն իրենց ամենօրյա աշխատանքի՝ որպես լենինյան գաղափարների, կուսակցության պլանների կենսագործման անմիջական պրոցեսի, նշանակությունն ու իրենց պատասխանատվությունը։

Քաղդպրոցներում և մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցներում հանձնարարվում են հետևյալ ուսումնական դասընթացները. «Վ. Ի. Լենինի կենսագրությունը», «Զարգացած սոցիալիզմի սահմանադրությունը», «ՍՄԿԿ ներքին և արտաքին քաղաքականության հարցերը», «Փիլիսոփայական գիտելիքների հիմունքները», «Քաղաքատնտեսություն», «ՍՄԿԿ պատմություն», «Գիտական կոմունիզմ»։ Առաջներում արդեն ուսումնասիրված այս դասընթացներից բացի, մտցվում է նորը՝ «Ուսմունք, որը վերափոխում է աշխարհը»։ Այդտեղ խտացված կերպով շարադրված է հասարակության, սոցիալիստական հեղափոխության և սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման մասին մարքս-լենինյան ուսմունքի էությունը։ Ունկնդիրները կկարողանան հետևողականորեն ծանոթանալ պատմական նոր պայմաններում Վ. Ի. Լենինի կողմից մարքսիզմի ստեղծագործական զարգացմանը, կոմունիստական կուսակցության՝ նոր տիպի կուսակցության, ստեղծմանը, սոցիալիզմի կառուցման լենինյան պլանին և ՍՍՀՄ-ում դրա իրականացմանը, համաշխարհային ասպարեզում մարքսիզմ-լենինիզմի ազդեցության աճին, միջազգային կոմունիստական շարժման՝ որպես արդիականության ամենաազդեցիկ ուժի, զարգացմանը, խաղաղության լենինյան քաղաքականությանը՝ գործողության մեջ։

Մարքսիզմ-լենինիզմի բազմաթիվ հրատապ պրոբլեմներ կուսումնասիրվեն տեսական ու մեթոդոլոգիական սեմինարներում, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցներում։ Այստեղ կոմունիստների ուշադրությունը կենտրոնացվում է մարքս-լենինյան տեսության, կոմունիստական շինարարության, ժամանակակից համաշխարհային զարգացման, կոմունիստական կուսակցության քաղաքականության արմատական պրոբլեմների խոր վերլուծության վրա։ Լայնորեն ուսումնասիրվելու են այնպիսի հրատապ թեմաներ, ինչպիսիք են «Կ. Մարքսը, Ֆ. Էնգելսը, Վ. Ի. Լենինը սոցիալիստական հեղափոխության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի մասին», «Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մասին», «Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն սոցիալիստական դեմոկրատիայի մասին», «Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն կոմունիստական բարոյականության մասին», «Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն գիտության, կրթության ու դաստիարակության մասին», «Վ. Ի. Լենինը, ՍՄԿԿ-ն գրականության և արվեստի մասին»։ Սեմինարներում զգալի տեղ կգրավի ՍՄԿԿ արտաքին քաղաքականության, համաշխարհային ասպարեզում գաղափարական պայքարի, սովետական հասարակության քաղաքական սիստեմի, սոցիալիզմի համաշխարհային սիստեմի զարգացման պրոբլեմների ուսումնասիրությունը։ Հաշվի առնե-

լով ունկնդիրների հետաքրքրությունը, առանձին դեպքերում կարող են ուսումնասիրվել տեսական ու մեթոդոլոգիական նաև այլ պրոբլեմներ։

Կուսակցական-տնտեսական ակտիվի և ղեկավար կադրերի համար հանձնարարվում է ուսումնասիրել կուսակցական կյանքի ու ղեկավարման սկզբունքների լենինյան նորմերը, կուսակցական շինարարության, արհմիությունների, կոմերիտմիության նկատմամբ կուսակցական ղեկավարության, ՍՄԿԿ գաղափարական աշխատանքի հրատապ հարցերը։ Հանձնարարվող պրոբլեմները կարող են ուսումնասիրվել նաև քաղինֆորմատորների, ագիտկոլեկտիվների ղեկավարների սեմինարներում, հաշվի առնելով նրանց աշխատանքի առանձնահատկությունը և ուղղությունը։

Վերոհիշյալ պրոբլեմների վրա ունկնդիրների աշխատանքի համար հիմնական ուսումնական բազա պետք է լինեն Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի երկերի, ՍՄԿԿ փաստաթղթերի, Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների համապատասխան ժողովածուները։ Մարքս-լենինյան տեսության հրատապ պրոբլեմների ուսումնասիրումը անմիջականորեն սկզբնաղբյուրներով՝ կոմունիստների կողմից հեղափոխական աշխարհայացքին տիրապետելու առավել արդյունավետ ուղին է։ Մարքսիզմ-լենինիզմի սկզբնաղբյուրների ավելի ու ավելի լայն ուսումնասիրությունը նոր ուսումնական տարվա կարևոր առանձնահատկությունն է։

Կուսակցական-տնտեսական ակտիվի սեմինարների և դպրոցների համար հանձնարարվում են հետևյալ առարկաները. «Զարգացած սոցիալիզմ. տեսության և պրակտիկայի հարցեր», «ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը», «ՍՄԿԿ ագրարային տեսությունը և քաղաքականությունը», «Սոցիալիստական ապրելակերպը»։

Նոր ուսումնական դասընթացներ մտցնելը էապես ընդլայնում է մեր կադրերի, ժողովրդական տնտեսության տարբեր ճյուղերի մասնագետների, բոլոր կոմունիստների քաղաքական ուսուցման նկատմամբ դիֆերենցված մոտեցում ցուցաբերելու, մարքս-լենինյան տեսության ուսումնասիրման և կոմունիստական շինարարության պրակտիկայի օրգանական միասնություն ապահովելու կուսակցական կազմակերպությունների հնարավորությունները։

Նոր դասընթացները թույլ են տալիս խորացնել և կոնկրետացնել ղեկավար կադրերի ուսման բովանդակությունը։ Դրանց ուսումնասիրումը ղեկավար աշխատողներին թույլ կտա ընդլայնել իրենց գաղափարական-քաղաքական ու կուլտուրական մտահորիզոնը, ավելի խորապես մտնել աշխատավորների շրջանում դաստիարակչական աշխատանքի կազմակերպմանը, ապահովել գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության միասնությունը։ Ժամանակակից ղեկավարի համար մարքսիզմ-լենինիզմին տիրապետելը կոմունիստական շինարարության ավելի ու ավելի բարդացող խնդիրների հմտորեն լուծման պարտադիր պայմանն է, ժամանակի պահանջը։

Մարքսիզմ-լենինիզմի համալսարաններում, ինչպես և նախորդ տարիներին, ուսումնասիրվելու են ՍՄԿԿ տեսության ու քաղաքականության, գաղափարական աշխատանքի հրատապ հարցերը, փիլիսոփայությունը, քաղաքատնտեսությունը, գիտական կոմունիզմը, ՍՄԿԿ պատմությունը, ինչպես նաև տնտեսագիտական դասընթացները՝ կապված կառավարչական աշխատանքի, գիտատեխնիկական առաջադիմության կառավարման պրոբլեմների հետ։ Մարքսիզմ-լենինիզմի համալսարանները, որոնք ունկնդիրներին տալիս են բարձրագույն քաղաքական կրթություն, մնում են որպես պրոպագանդիստների, դասախոսների, գաղափարական ակտիվի մյուս ջոկատների պատրաստման բազա՝ հատկապես գյուղական կուսակցական կազմակերպությունների համար։ Դրա հետ մեկտեղ աճում է նրանց դերը ուսուցչության, տեխնիկումների, բուհերի դասախոսների, ստեղծագործական մտավորականության գաղափարական կոփման գործում։

Նոր ուսումնական տարվա կարևոր խնդիրներից մեկն է ապահովել տընտեսական մեխանիզմի հետագա կատարելագործման և կուսակցական ու պետական մարմինների խնդիրների մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման, ինչպես



նաև «Պլանավորումը բարելավելու և արտադրության արդյունավետության ու աշխատանքի որակի բարձրացման վրա տնտեսական մեխանիզմի ներգործությունն ուժեղացնելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման լայն պարզաբանումն ու ուսումնասիրումը։ Դրանք հսկայական նշանակություն ունեն երկրի ամբողջ քաղաքական կյանքի, սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման արագացման և աշխատավորների բարեկեցության բարձրացման համար։

Այս կապակցությամբ տնտեսագիտական կրթության սիստեմում, կուսակցական ուսուցման տնտեսագիտական սեմինարներում, կուսակցական-տնտեսական ակտիվի դպրոցներում, մարքսիզմ-լենինիզմի համալսարանների համապատասխան բաժանմունքներում անհրաժեշտ է անցկացնել հատուկ պարապմունքներ։ Վերոհիշյալ որոշումների գաղափարները, կոնկրետ ցուցումները պետք է օրգանապես մտնեն մարքս-լենինյան կրթության սիստեմի այն բոլոր ուսումնական դասընթացների բովանդակության մեջ, որոնք շոշափում են սոցիալ-տնտեսական հարաբերությունների, կառավարման, պլանավորման, բաշխման ու խթանման կատարելագործման հարցերը։

Տնտեսավարման մեխանիզմի հետագա կատարելագործման պրոբլեմները և ուղիները պետք է դառնան ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ղեկավար կադրերի ու մասնագետների, աշխատավորական լայն զանգվածների խոր ուսումնասիրման առարկա։ Այդ թեմաների ուսումնասիրումը կնպաստի աշխատավորական կոլեկտիվներում գործարարության և կուսակցության կողմից առաջ քաշվող խնդիրների իրականացման համար պատասխանատվության մթնոլորտի ստեղծմանը, տնտեսական աճի ներքին ռեզերվների հայտնաբերման և օգտագործման ուղղությամբ աշխատավորների ստեղծագործական ջանքերի ակտիվացմանը։

Բանվորների և կոլտնտեսականների համար տնտեսագիտական կրթության սիստեմում հանձնարարվում են «Սոցիալիզմը և աշխատանքը», «Արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման առաջավոր փորձը» դասընթացները։ Կոմունիստական աշխատանքի դպրոցների և այդ դասընթացներն արդեն ուսումնասիրած՝ ուսման մյուս մասսայական ձևերի համար նպատակահարմար է պարապմունքները կազմակերպել այնպիսի ծրագրով, որի հիմնական բովանդակությունն են կազմում Վ. Ի. Լենինի «Մեծ նախաձեռնություն», «Ինչպես կազմակերպել մրցությունը» աշխատությունները, արտադրության առաջավորների փորձը։

Ինժեներատեխնիկական աշխատողները, ժողովրդական տնտեսության մասնագետները, կառավարման բոլոր օղակների ղեկավարները շարունակելու են հետևյալ դասընթացների ուսումնասիրությունը. «Ինժեներային աշխատանքը սոցիալիստական հասարակության մեջ», «Ղեկավարի աշխատանքը», «Արտադրանքի որակի կոմպլեքսային կառավարման առաջավոր փորձը», «Գյուղատնտեսական արտադրության արդյունավետության բարձրացման առաջավոր փորձը», «Բրիգադային կապալը տնտեսական հաշվարկի ձև է»։ Այնտեղ, ուր այդ առարկաների ուսումնասիրությունն արդեն ավարտված է, տնտեսագիտական կրթության սիստեմում հանձնարարվում են «ՍՄԿԿ տնտեսական քաղաքականությունը» և «ՍՄԿԿ ագրարային տեսությունն ու քաղաքականությունը»։

Կուսակցական կազմակերպությունները շատ բան պետք է անեն, որպեսզի զգալիորեն բարձրացվի աշխատավորների տնտեսագիտական կրթության որակը, ուժեղացվի դրա կապը տասներորդ հնգամյակի ավարտական փուլի խնդիրների լուծման հետ։

Միշտ կուսակցության հատուկ հոգատարության առարկա է եղել և մնում է պատանեկության գաղափարական-քաղաքական, աշխատանքային ու բարոյական կոփումը։ Կուսակցական կազմակերպությունները մեծ աշխատանք են կատարում երիտասարդությանը մարքսիզմ-լենինիզմի հեղափոխական ուսմունքով զինելու, նրա մեջ կոմունիստական գիտակցականություն, կոմունիզմ կառուցելու պատրաստակամություն, կամք և կարողություն կազմավորելու, երիտասարդ սերնդի մեջ սոցիալիզմի ճակատագրի, հայրենիքի բարգավաճման

և անվտանգության համար պատմական պատասխանատվության զգացում դաստիարակելու ուղղությամբ։

Այդ խնդրի հաջող լուծման համար զգալի հնարավորություններ ունի կոմերիտական քաղաքական լուսավորությունը։ Կոմերիտմիության կոմիտեները պետք է կուսակցական կազմակերպությունների ղեկավարությամբ ապահովեն կոմերիտականների ու երիտասարդության քաղաքական և տնտեսագիտական ուսուցման աշխարհայեցական նպատակասլացության ուժեղացումը, բարձրացնեն նրանց հետաքրքրությունը մարքս-լենինյան կրթության նկատմամբ, նրանց մեջ դաստիարակեն գիտելիքների, կուլտուրայի ձգտում, բարձրացնեն աշխատանքային և քաղաքական ակտիվությունը «Կոմունիզմ սովորել» լենինյան անմահ պատգամի, ՀամԼԿԵՄ XVIII համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևի առաջ քաշած խնդիրների կենսագործման համար մղվող պայքարում։

Նոր ուսումնական տարում կուսակցական կոմիտեները պետք է մշակեն և իրականացնեն մարդկանց աթեիստական դաստիարակության ուժեղացման կոնկրետ միջոցառումներ, բարձրացնեն կոմունիստների և կոմերիտականների պատասխանատվությունը կրոնական նախապաշարմունքների դեմ մղվող պայքարում։

Քաղաքական և տնտեսագիտական ուսուցման հաջողությունն ամբողջությամբ կախված է պրոպագանդիստներից, նրանց տեսական ու մեթոդական մակարդակից, մարդկանց հետ աշխատելու կարողությունից։ Նոր պահանջների լույսի ներքո կուսակցական կոմիտեներին անհրաժեշտ է քաղաքական դպրոցների ու սեմինարների ղեկավարների կազմն ամրապնդել լավ պատրաստված և հմուտ կոմունիստներով, շարունակ բարձրացնել պրոպագանդիստների պատասխանատվությունը դաստիարակչական աշխատանքի բովանդակության և արդյունքների համար։ Անհրաժեշտ է պրոպագանդիստական աշխատանքը դիտել որպես կարևորագույն կուսակցական հանձնարարություն։

Արդի պայմաններում, երբ անշեղորեն բարձրանում է ունկնդիրների կրթության, լայնատեղյակության և սոցիալական ակտիվության մակարդակը, պրոպագանդիստի աշխատանքը բարդանում է, պահանջվում են մշտական ջանքեր ու ստեղծագործական որոնումներ, անձնական ժամանակի մեծ ծախսումներ մարքս-լենինյան տեսության, կուսակցության քաղաքականության սիստեմատիկ ուսումնասիրման, կուսակցական պրոպագանդայի գիտական հիմունքներին և առաջավոր փորձին տիրապետելու համար։ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշմանը համապատասխան, ՍՄԿԿ մարզկոմները, երկրկոմները, միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմները ամենուրեք անց են կացնում կուսակցական ուսուցման սիստեմի պրոպագանդիստների և պրոպագանդիստական սեմինարների ղեկավարների երկշաբաթյա դասընթացներ, նրանց ազատելով հիմնական աշխատանքից։

Դասընթացներում պրոպագանդիստների վերապատրաստումը կոչված է էապես հարստացնելու նրանց գաղափարական-տեսական պոտենցիալը, մեթոդական վարպետությունը, բարձրացնելու նրանց լայնատեղյակությունը արդիականության հրատապ հարցերին։ Դրանց ծրագրի մեջ մտցվում են մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ քաղաքականության, կուսակցական պրոպագանդայի մեթոդիկայի պրոբլեմներին, ուսումնական առարկաների հանգուցային հարցերին նվիրված դասախոսություններ և սեմինար պարապմունքներ։ Պրոպագանդիստների գիտելիքների խորացման գործում կարևոր դեր կխաղան դասընթացների ժամանակ կազմակերպվող հանդիպումները գիտնականների, գրականության և արվեստի գործիչների, կուսակցական, սովետական աշխատողների, տնտեսական ղեկավարների, արտադրության առաջավորների հետ։ Դասընթացների աշխատանքին, պրոպագանդիստներին սիստեմատիկաբար ինֆորմացիա հաղորդելու գործում ակտիվորեն կմասնակցեն կուսակցական կոմիտեների ճյուղային բաժինները։

Պրոպագանդիստների որակավորման բարձրացման ուղղությամբ այդ ամբողջ աշխատանքի կապակցությամբ աճում է քաղաքական լուսավորության տների ու կաբինետների՝ որպես կուսակցական պրոպագանդայի մեթոդական



կենտրոնների, դերը։ Պետք է լուրջ ուշադրություն դարձնել յուրաքանչյուր պրոպագանդիստի մեջ պարապմունքներն աշխույժ, հետաքրքիր, ստեղծագործաբար անցկացնելու կարողություն մշակելուն, այն հաշվով, որ նրանց ունկնդիրները մարքսիզմ-լենինիզմին տիրապետեն որպես գործողության ղեկավարության։ Անհրաժեշտ է անհատական կոնսուլտացիաները, մշտապես գործող սեմինարները առավել լրիվ օգտագործել պրոպագանդիստներին մանկավարժության, սոցիալական հոգեբանության բնագավառի գիտելիքներով, աշխատանքի ակտիվ ձևերով, հակապրոպագանդայի մեթոդներով զինելու համար։

Քաղաքական և տնտեսագիտական կրթությանը մեծ օգնություն պետք է ցույց տան մասսայական ինֆորմացիայի և պրոպագանդայի միջոցները՝ մամուլը, հեռուստատեսությունը, ռադիոն։ Էկոնոմիկայի, գիտության, կուլտուրայի նվաճումների բազմակողմանի լուսաբանումը, ժողովրդական տնտեսության հասունացած հարցերի, միջազգային կյանքի կարևորագույն իրադարձությունների, համաշխարհային ասպարեզում տեղի ունեցող գաղափարական պայքարի վերլուծությունը կօգնեն, որ ունկնդիրները խորապես յուրացնեն մարքս-լենինյան տեսությունը, կուսակցության քաղաքականությունը։

Պրոպագանդիստների հետ կատարվող աշխատանքում մեծ նշանակություն ունի արդիականության հրատապ հարցերի, հանրապետությունների, երկրամասերի ու մարզերի, քաղաքների ու շրջանների կուսակցական կազմակերպությունների պրակտիկ գործունեության մասին նրանց կանոնավոր կերպով ինֆորմացիա տալը։ Անհրաժեշտ է, որ կուսակցական, սովետական ու տնտեսական ղեկավարները սիստեմատիկաբար հանդիպումներ ունենան պրոպագանդիստների հետ, այդ հանդիպումները համարեն իրենց կարևոր պարտականությունը, գիտակցեն այդպիսի հանդիպումների նշանակությունը ամբողջ դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման համար։

Ուկրաինայում, օրինակ, ՈւԿԿ Կենտկոմի պլենումի որոշմամբ սեպտեմբերի վերջին շաբաթ օրը անց է կացվելու «Պրոպագանդիստի օր»։ Պրոպագանդիստների հետ հանդիպումներ են ունենալու կուսակցության վետերանները, հնգամյակի գվարդիականները, գիտական ու գեղարվեստական մտավորականության ներկայացուցիչները։ Կազմակերպվելու են ստենդներ և լավագույն պրոպագանդիստների պատվո տախտակներ։ Այդ օրը դառնալու է մարքս-լենինյան կրթության ուղղությամբ ամբողջ աշխատանքի դրվածքի գործում կուսակցական կազմակերպությունների գործունեության ստուգատեսի ավանդական օր։ Նման նախաձեռնությունը արժանի է հավանության և լայն տարածման։

Պրոպագանդիստական կադրերի հետ կատարվող աշխատանքի բարելավման գործում էական ավանդ պետք է ներդնեն մինիստրություններն ու գերատեսչությունները, տնտեսական մարմինները։ Քաղդպրոցների ու սեմինարների պարապմունքների անցկացման, պրոպագանդիստների ուսուցման համար ձեռնարկություններում ու կառույցներում, կոլտնտեսություններում ու սովխոզներում, հիմնարկներում և ուսումնական հաստատություններում անհրաժեշտ պայմանների ստեղծումը, ամենօրյա ուշադրությունը նրանց աշխատանքի նկատմամբ, աշխատավորական կոլեկտիվների պլանների ու սոցիալիստական պարտավորությունների կատարման ընթացքի մասին նրանց անհրաժեշտ կոնկրետ նյութերով ապահովելը կբարձրացնի քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման ներգործունությունը։

Քաղաքական կրթության կազմակերպման գործում մանրուքներ չկան։ Նախապատրաստվելով ուսումնական տարվան, կուսակցական կազմակերպությունները կոչված են խնամքով պարզելու ուսումնական խմբերի կոմպլեկտավորման որակը, պարապմունքների համար մշտական շենքերի պատրաստությունն ու կահավորվածությունը, ունկնդիրների ապահովվածությունը այն ամենով, ինչ անհրաժեշտ է մարքսիզմ-լենինիզմի տեսությանը տիրապետելու ուղղությամբ բեղմնավոր աշխատելու համար։

Մարքս-լենինյան ուսուցումը, կոմունիստներին, անկուսակցական ակտիվին զինելով հեղափոխական տեսությամբ, բարերար ազդեցություն է ունենում մարդկանց ամբողջ կյանքի, մտածողության և վարմունքի վրա, նպաստում է եղած բացասական երևույթների հաղթահարմանը, բարձրացնում է աշխատա-

վորների սոցիալական պատասխանատվությունը, քաղաքական և աշխատանքային ակտիվությունը ներքին և արտաքին քաղաքականության բնագավառում կուսակցության XXV համագումարի կողմից կանխագծված խնդիրների իրականացման համար մղվող պայքարում։

«Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը կուսակցական կազմակերպություններին, գաղափարախոսական կադրերին նպատակամղել է դեպի մարքս-լենինյան կրթության արմատական բարելավում, դրա արդյունավետության բարձրացում։ Այդ որոշման կենսագործումը կնպաստի մասսաների շրջանում կազմակերպչական ու քաղաքական ամբողջ աշխատանքի բարձրացմանը, աշխատանք, որն ուղղված է տասնհինգերորդ հնգամյակի առաջադրանքները կատարելու, լենինյան հոբելյանը, ՍՄԿԿ XXVI համագումարն արժանավայել դիմավորելու նպատակին։

(«Պրավդա», 12 օգոստոսի 1979 թ.)

---



# ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ա. Պ. ՄԵԼՔՈՆՅԱՆ**
ՀԿԿ Երևանի կազմակերպության 26 կոմիսարների անվան շրջկոմի առաջին քարտուղար

ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշումը քաղաքական մեծ նշանակություն ունեցող փաստաթուղթ է։ Այն կարևորագույն գաղափարախոսական պրոբլեմների և նոր մարդու դաստիարակության հանգուցային խնդիրների համակողմանի ու խոր վերլուծման փայլուն օրինակ է։ Որոշումը կուսկազմակերպություններին պարտավորեցնում է առավել բովանդակալից ու արդյունավետությամբ վարել կոմունիստների և աշխատավորական զանգվածների գաղափարադաստիարակչական ուսուցման հույժ պատասխանատու գործը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշումը քաղաքական ակտիվության պայմաններում քննարկվեց մեր շրջանի կուսկազմակերպությունների ժողովներում և արժանացավ կոմունիստների ջերմ հավանությանը։ Կուսկազմակերպությունները, ելնելով այդ որոշման նոր պահանջներից, գործնական միջոցառումներ են մշակել գաղափարախոսական աշխատանքի թերությունները վերացնելու, դրա արդյունավետությունը բարձրացնելու համար։

Ընդհանրացնելով աշխատավորների կոմունիստական դաստիարակության բնագավառում կատարված բազմակողմանի գործունեության արդյունքները և բարձր գնահատելով դրանք՝ կուսակցության Կենտկոմը նշել է, որ մեր գաղափարադաստիարակչական աշխատանքի ոլորտում կան էական թերություններ, և այդ աշխատանքի որակը բնավ ոչ միշտ է համապատասխանում սովետական մարդկանց կրթական և կուլտուրական աճած մակարդակին ու պահանջմունքներին։

Ընթացիկ տարվա հունիսի 27-ին, ՀԿԿ Կենտկոմի պլենումը համակողմանիորեն և գործարար մթնոլորտում քննարկեց ՍՄԿԿ Կենտկոմի այդ ծրագրային որոշումը։ Ըստ արժանվույն գնահատելով գաղափարախոսության և աշխատավորական զանգվածների կոմունիստական դաստիարակության ոլորտում հանրապետության կուսկազմակերպությունների ծավալած դրական աշխատանքը, ՀԿԿ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Կ. Ս. Դեմիրճյանն իր զեկուցման մեջ համակողմանիորեն անդրադարձավ այն խնդիրներին, որոնց արդյունավետ ու կոմպլեքսային լուծումը էապես կնպաստի ողջ գաղափարախոսական աշխատանքի որակի հետագա բարելավմանը։

Կուսակցության Կենտկոմի որոշմամբ առաջադրված պրոբլեմների լուծումը պահանջում է կոմունիստներին, աշխատավորական լայն զանգվածներին ամենուր ընդգրկել քաղուսուցման ու տնտեսագիտական կրթության ցանցում, տոգորել նրանց մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության պատմության, Լ. Ի. Բրեժնևի երկերի գաղափարային իմաստությամբ, կռել ու կոփել սովետական նոր մարդու մարքս-լենինյան աշխարհայացքը, հետևողական և

աշխատողների կեսից ավելին դուրս էր մնացել ուսուցումից։ Կուսակցության Երևանի քաղկոմի բյուրոն, քննարկելով «26 կոմիսարների անվան շրջանի առևտրի և հասարակական սննդի կազմակերպություններում գաղափարադաստիարակչական աշխատանքի վիճակի մասին» հարցը, բացահայտեց բազմաթիվ լուրջ թերություններ։ Արձանագրվեց, որ առևտրի ու հասարակական սննդի ձեռնարկությունների կուսակցական կազմակերպություններն ու ղեկավարները անպատասխանատու վերաբերմունք ենք ցուցաբերել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի նկատմամբ։

Շրջանի շատ կազմակերպություններ, իրոք, դեռևս իրենց աշխատանքը չեն վերակառուցել Բաշկիրիայի կուսակցական կազմակերպության մասին ՍՄԿԿ Կենտկոմի ընդունած որոշման պահանջներին համապատասխան։ Այդ առումով աղաղակող թերություններ կան ռելեի, ֆրեզերային հաստոցների գործարանների, կահույքի «Արաբկիր» ֆաբրիկայի, տրիկոտաժի կոմբինատի, «Հայկապշին», «Հայէլեկտրամոնտաժ», «Հայգազշին» տրեստների և այլ կուսկազմակերպությունների աշխատանքում։ Շրջկոմի բյուրոն մշակել է միջոցառումներ՝ նոր ուսումնական տարում վերացնելու այդ թերությունները։

Կոլեկտիվի կյանքում մեծ է ղեկավարի դերը։ Նրա գիտելիքներով ու փորձով, հեղինակությամբ, քաղաքական կոփվածությամբ ու մարդկանց հետ աշխատելու կարողությամբ են պայմանավորված ո՛չ միայն ձեռնարկության ու կազմակերպության տնտեսական ցուցանիշները, այլև մարդկանց տրամադրությունը, կոլեկտիվի բարոյական մթնոլորտը։ Այդ հանգամանքը հատկապես շեշտվում է ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ։ Սակայն ցավով պետք է նշել, որ մի շարք ղեկավար ընկերներ խույս են տալիս աշխատավորների կուսակցական և տնտեսագիտական ուսուցման ցանցում պարապմունքներ ղեկավարելուց։ Այդպես են վարվել «Ասֆալտշին» վարչության պետ Վ. Մովսիսյանը, «Հայարդօգտփոխում» վարչության նախկին պետ Վ. Թիրաքյանը, ժողովրդագեղարվեստական արհեստագործությունների միավորման գլխավոր դիրեկտոր Մ. Ավինյանը և ուրիշներ։ Տրիկոտաժի կոմբինատի դիրեկտոր Ս. Խառատյանը, № 4 սննդառի դիրեկտորի տեղակալ Կ. Հակոբյանը, պատճառաբանելով, որ իրենք, իբր, չափից դուրս ծանրաբեռնված են գործերով, պրոպագանդիստի իրենց պարտականությունները վերավստահել են ուրիշների, իսկ № 119 խանութի դիրեկտոր, պրոպագանդիստ Է. Անանյանը բռնել է խաբեության ուղին. առանց պարապմունք վարելու մատյանում նշումներ է կատարել դրանց անցկացման մասին։ Որքան էլ տարօրինակ է, նշված կուսկազմակերպությունները հաշտվել են այդ փաստերի հետ և անհրաժեշտ կուսակցական գնահատական չեն տվել իրենց հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների վարքագծին։

Չմոռանանք այստեղ հիշատակել, որ ամփոփելով անցյալ ուսումնական տարվա արդյունքները և պատրաստվելով նոր տարվան՝ կուսակցական կազմակերպությունները պետք է հոգ տանեն պարապմունքների ընթացքի ու որակի նկատմամբ վերահսկողության իրականացման ձևերի մասին, որպեսզի պրոպագանդիստների պրակտիկայից իսպառ արմատախիլ արվեն վերամբարձ ոճը, հանրահայտ ֆրազների մեխանիկական կրկնությունը և այլն։

Այժմ կուսշրջկոմի կարևորագույն հոգսերից մեկը քաղաքական և տնտեսագիտական ուսուցման սիստեմի նոր ուսումնական տարվա առավել արդյունավետ նախապատրաստումն է։ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կազմակերպությունների պարտքն է համարում՝ հմտորեն ընտրել և դաստիարակել պրոպագանդիստներին, նրանց շրջապատել ամենօրյա հոգատարությամբ։ Պրոպագանդիստներին, գաղափարախոսական աշխատողներին պետք է հատուկ լինեն բարձր պատասխանատվության զգացումը դաստիարակչական աշխատանքի բովանդակության և արդյունքների համար, մարդկանց հետ տարվող աշխատանքի նոր ձևերի ու մեթոդների ստեղծագործական որոնումը։

Մեր պարտքն է՝ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման պահանջների լույսի ներքո վճռականորեն բարելավել դասախոսական պրոպագանդայի, քաղաքական բանավոր ագիտացիայի, մասսայական պրոպագանդայի մյուս ձևերի կազմակերպումը։ Դասախոսական պրոպագանդայի կենտրոնում պետք է լինեն ՍՄԿԿ-ի, սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականության հրատապ



հարցերը, արտադրության արդյունավետության և մեր ամբողջ աշխատանքի որակի բարձրացման համար մղվող պայքարի խնդիրները։ Անհրաժեշտ է առանձնահատուկ ուշադրություն նվիրել հակահասարակական երևույթների, բուրժուական գաղափարախոսության և բարոյականության դեմ մղվող պայքարին։

Շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունների մեծ մասը կիրառում են բազմաթիվ հետաքրքրական միջոցառումներ ինտերնացիոնալ և հայրենասիրական դաստիարակությունն ըստ ամենայնի բարելավելու նպատակով։ Աշխատանքի դրական փորձ է կուտակվել «Երարդշին» տրեստի, ավտոմեքենաշինական, էլեկտրալամպերի գործարանների, մաթեմատիկական հաշվիչ մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի և այլ ձեռնարկությունների ու հիմնարկությունների կուսակցական կազմակերպություններում։ Ինտերնացիոնալ դաստիարակությանը նպաստում է Երևանի, Թբիլիսիի և Բաքվի 26 կոմիսարների անվան շրջանների, Դոնի-Ռոստովի Պրոլետարական շրջանի աշխատավորների սոցիալիստական մրցությունը։ Ինտերնացիոնալ դաստիարակության լավ ձևն են «Ինտերնացիոնալ բարեկամության ակումբները»։ Դրանք գործում են բոլոր ուսումնական հաստատություններում և շրջանի ավելի քան 30 արդյունաբերական ձեռնարկություններում ու գիտական կազմակերպություններում. նրանցում ընդգրկված են 5.000-ից ավելի պատանիներ ու աղջիկներ։ Առաջնահերթ խնդիր է ռուսաց լեզվի՝ ինտերնացիոնալ դաստիարակության այդ հզոր միջոցի, ՍՍՀՄ ժողովուրդների բարեկամության և եղբայրական հաղորդակցման լեզվի դասավանդման և ուսումնասիրման հետագա բարելավումը։

Հատուկ ուշադրություն հատկացնելով բարոյական դաստիարակության հարցերին, որոնք պատշաճ տեղ են գտել ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, մենք ձգտում ենք պրոպագանդայի ու դաստիարակության բոլոր միջոցներով պայքար մղել անցյալի այնպիսի այլանդակ մնացուկների իսպառ վերացման համար, ինչպիսիք են ընչաքաղցությունը և կաշառակերությունը, հասարակությունից ավելի շատ պոկելու ձգտումը, հարբեցողությունն ու խուլիգանությունը, բյուրոկրատիզմը և մարդկանց նկատմամբ անհոգի վերաբերմունքը։

ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ նշված է. «Գնահատելով ղեկավարների, տնտեսական կադրերի աշխատանքը, անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրական պլանների կատարման ցուցանիշները, այլև կոլեկտիվում տիրող կարգապահության մակարդակը, բարոյաքաղաքական կլիման, աշխատանքի և կենցաղի պայմանները»։ Ելնելով այս չափանիշներից, մենք այսօր չենք կարող չհանդիմանել հուշանվերների փորձնական գործարանի, տրիկոտաժի կոմբինատի, № 2982 ավտոշարասյան, շրջանի առևտրի ու կենցաղսպասարկման կազմակերպությունների ղեկավարներին, որոնց գործունեությունը շատ հեռու է այդ պահանջները բավարարելուց։

Վարսավիրանոցների կոմբինատի դիրեկտոր Վ. Լալազարյանը կոլեկտիվի խորհրդակցություններում հաճախ էր նշում աշխատանքում տեղ գտած թերությունները, չարաշահումները, սոցիալիստական սեփականության հափշտակումները, բայց գործնականում ոչ մի միջոց չէր ձեռնարկում կոմունիստական բարոյականության նորմերին խորթ այդ երևույթները վերացնելու համար։ Շրջկոմի բյուրոն միանգամայն արդարացիորեն կուսակցական խիստ պատասխանատվության ենթարկեց նրան այդ թերությունների համար։ Մեկ այլ օրինակ։ Կոլեկտիվի անդամների վրա դաստիարակչական ի՞նչ ներգործություն կարող է ունենալ «Հայգունմետշին» տրեստի կառավարիչ Ս. Եղիյանը, որը միանգամայն անբավարար է իրականացնում տրեստի աշխատանքի ղեկավարությունը պետական կարգապահության բարձրացման, պլանների և սոցիալիստական պարտավորությունների կատարման բնագավառում, անպատասխանատվություն է ցուցաբերում սարքավորումների և նյութերի պահպանման, դրանց ռացիոնալ օգտագործման նկատմամբ։ Հենց խոսքի ու գործի խզումով, աշխատանքի նկատմամբ այդ և մի քանի այլ ղեկավարների բյուրոկրատական վերաբերմունքով պետք է բացատրել այդ կոլեկտիվների գաղափարադաստիարակչական գործունեության մեջ եղած լուրջ թերությունները։

Ուսանող երիտասարդության կոմունիստական դաստիարակության գործում որոշ աշխատանք են կատարում Վ. Բրյուսովի անվան ռուսաց և օտար լեզուների պետական մանկավարժական ինստիտուտի (ռեկտոր՝ Ս. Դարոնյան, կուսբյուրոյի քարտուղար՝ Է. Թումանյան) կուսակցական կազմակերպությունը և կոլեկտիվը։ Անհրաժեշտ հետևություններ անելով ինստիտուտի գործունեության վերաբերյալ կուսակցության շրջկոմի բյուրոյի որոշումից, նրանք միջոցառումներ են իրականացնում ուսանողների կոմունիստական դաստիարակության կազմակերպումը կատարելագործելու նպատակով։ Սակայն դեռևս բավարար չէ այն ուշադրությունը, որ ռեկտորատը նվիրում է ուսումնական պրոցեսին։ Մինչդեռ բոլոր օղակներում ուսումնական պրոցեսի լավ դրվածքով է պայմանավորված ուսանողության գաղափարական և բարոյական դաստիարակության արդյունավետությունը։ Անհրաժեշտ է ավելի սերտ կապ հաստատել ղեկավարության ու դասախոսների և ուսանողների կենսագործունեության միջև։

Մեր առաջնահերթ խնդիրն է՝ արդյունավետ մեթոդների և եղանակների մշակմամբ ու կիրառմամբ իրագործել այն ծրագրային դրույթները, որոնք առաջադրված են ՍՄԿԿ Կենտկոմի որոշմամբ։ Այս առումով ժամանակին ու մեզ համար խիստ էական և կոնկրետ օգնություն եղավ Պրավդայի ս/թ օգոստոսի 12-ի «Հանուն մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական ուսումնասիրության» խմբագրական հոդվածը։

Պատմական իրողություն է, որ մարքսիզմ-լենինիզմի ուսումնասիրությունը դարձել է սովետական ապրելակերպի բնորոշ հատկանիշը։ Բավական է ասել, որ անցած ուսումնական տարում կուսակցական ուսուցման սիստեմում ուսանել են 22 միլիոնից ավելի կոմունիստներ և անկուսակցական ակտիվիստներ, իսկ լենինյան կոմերիտմիության քաղաքական լուսավորության ցանցում՝ 8 միլիոն երիտասարդ աշխատավորներ։ Ավելի քան 40 միլիոն բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ սովորել են տնտեսագիտական կրթության և պրոպագանդայի զանգվածային սիստեմի տարբեր օղակներում։

Քաղաքական ուսուցման և տնտեսագիտական կրթության սկսվող նոր տարվա հաջողության գրավականը ո՛չ միայն պրոպագանդիստների ճիշտ ընտրությունն է։ Այժմ, երբ մեծապես հարստացել է սովետական մարդկանց հոգևոր աշխարհը, երբ անհամեմատ բազմազան են դարձել նրանց պահանջները, երբ ակնբախ է հասարակական ակտիվության վերընթացը, մեզ համար առաջնահերթ կարևորության խնդիր է դառնում կուսակցական պրոպագանդայի գիտական հիմքերին ու առաջավոր փորձին տիրապետելը։

Կոմունիստների ու աշխատավորների քաղաքական ուսուցման ոլորտում մանրուքներ չկան։ Մեր պարտքն է՝ ժամանակին ու խելամտորեն կոմպլեկտավորել կուսակցական ու կոմերիտական կրթության, տնտեսագիտական ուսուցման ցանցի բոլոր օղակները, դրանք ապահովել պատշաճ լսարաններով, անհրաժեշտ կահավորումներով, ձեռնարկներով, գրենական պիտույքներով և ուսման օժանդակ պարագաներով։

Մեր կարևորագույն խնդիրն է՝ բարձրացնել քաղաքական-դաստիարակչական աշխատանքի որակն ու արդյունավետությունը։ Մենք համոզված ենք, որ շրջանի կուսակցական կազմակերպությունները պատվով ու արդյունավետությամբ կիրագործեն ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» պատմական որոշումը։

---



## ՋԱՆՔԵՐԻ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆՔԸ

**Օ. Տ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ**
ՀՍՍՀ մթերումների մինիստր

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ զարգացման, երկիրը հումքով և պարենով ապահովելու գործի հաջողության չափանիշը ո՛չ միայն աճեցրած և հավաքած բերքն է, այլև ամենից առաջ այն, ինչը դրվում է խանութների վաճառասեղաններին, հասնում սպառողին։ Մոսկվայի Բաումանի ընտրական օկրուգի ընտրողների հետ ունեցած հանդիպման ժամանակ ընկեր Լ. Ի. Բրեժնևի ճառում առաջադրված կուսակցության այս պահանջի իրականացման բնագավառում կարևոր տեղ և դեր ունեն մթերող կազմակերպությունները։ Դրանք կոչված են՝ ղեկավարելու գյուղատնտեսական մթերքների և հումքի մթերումների գործը, իրականացնելու հացահատիկի և խոտաբույսերի սերմերի պետական գնումները, պետռեսուրսների պահպանումն ու կենտրոնացված օգտագործումը, համակցված կերի և էլևատորային արդյունաբերության կազմակերպումն ու աշխատանքի արդյունավետության ապահովումը։

Մթերումների սիստեմի մեխանիզմի ճիշտ գործադրումը մեծապես նպաստում է գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման և որակի բարելավման նպատակով աշխատավորության ուժերի մոբիլիզացմանը, արտադրության ներքին ռեզերվների ու հնարավորությունների բացահայտմանը, պետական պլանային առաջադրանքների կատարմանը։

Հնգամյա պլանով նախատեսված է երկրում գյուղատնտեսական արտադրանքի արտադրության միջին տարեկան ծավալն ավելացնել 14—17 տոկոսով, կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի արտադրողականության միջին տարեկան մակարդակը բարձրացնել 27—30 տոկոսով։ Մեր հանրապետության համար սահմանված է գյուղատնտեսական արտադրանքի արտադրության միջին տարեկան ծավալի 18 և աշխատանքի արտադրողականության 22 տոկոսի աճ։

Կուսակցական, սովետական ու գյուղատնտեսական մարմինների կազմակերպական նպատակասլաց գործունեության, կոլտնտեսականների ու սովխոզների բանվոր-ծառայողների հայրենանվեր աշխատանքի շնորհիվ անցած երեք տարիներին հաջողությամբ կատարվեցին հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի և անասնապահական մի շարք մթերքների արտադրության հնգամյա պլանով սահմանված առաջադրանքները։ Գյուղատնտեսական արտադրանքի ծավալն ավելացավ 22 տոկոսով։

Մեր հանրապետությունում որոշակի աշխատանքներ են իրականացվում անասնապահական համալիրների ստեղծման նպատակով։ Այսօր արդեն գործում են 53 այդպիսի համալիրներ և միջտնտեսային ձեռնարկություններ, մեծ ուշադրություն է հատկացվում անասունների, մասնավորապես խոշոր եղջերավորների մայրական կազմը բարձր տոհմային հատկանիշներ ունեցող անասուններով համալրելուն։ Ընդլայնվում են խաղողի և պտղատու այգիները, հիմնվում են նոր զանգվածային, բարձր բերքատու այգիներ։ Անհրաժեշտ նյու-

*թատեխնիկական բազա է ստեղծվում առաջիկա տարիներին գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման մասին կուսակցության կանխագծումների հաջող իրականացման համար։ Գյուղատնտեսական արտադրության ավելացման խնդիրները սերտորեն զուգակցված են որակական ցուցանիշների բարձրացման հետ։*

*Անասնապահական մթերքների արտադրության ավելացման և արտադրանքի որակի բարելավման գործում վճռական նշանակություն ունեն կերի կայուն բազայի ստեղծումը, համակցված կերի արտադրության նշանակալի ավելացումը։ Նախորդ հնգամյակի երեք տարիներին միջին հաշվով տարեկան արտադրվել է 336 հազար տոննա համակցված կեր, 1976—1978 թվականներին՝ տարեկան 439 հազար տոննա կամ աճել է 31 տոկոսով։ Պլանավորվում է առաջիկա տարիներին համակցված կերի արտադրական հզորությունները, նախորդ հնգամյակի համեմատությամբ, ավելացնել 4 անգամ։*

*Գյուղատնտեսական արտադրության բնագավառում ձեռք բերած հաջողություններն ապահովեցին պետությանը վաճառվող մթերքների ծավալի որոշակի աճը նախորդ տարիների համեմատությամբ և սահմանված առաջադրանքների կատարումը։ Նախորդ հնգամյակի երեք տարիների համեմատությամբ նշանակալից են մթերումների ծավալի աճի տեմպերը 1976—1978 թվականներին։ Կարտոֆիլի, պտղի, ձվի պետգնումներն ավելացել են շուրջ 2 անգամ, 40—57 տոկոսով աճել են մսի, խաղողի, շաքարի ճակնդեղի, 23—37 տոկոսով՝ հացահատիկի, կաթի և այլ մթերքների մթերումները։ Ի դեպ, հացահատիկի, շաքարի ճակնդեղի, բանջարեղենի, կարտոֆիլի, մսի, կաթի, բրդի մթերումների պլանները կատարվել են հնգամյակի բոլոր տարիներին։*

*Պետական մթերումների բնագավառում կոլտնտեսությունների և սովխոզների շահագրգռությունը բարձրացնելու նպատակով կուսակցության ձեռնարկած վերջին միջոցառումները, գնման գների բարձրացումը, գերակատարման համար 50 տոկոս հավելավճարի սահմանումը և այլն, ինչպես նաև տնտեսություններում առկա ներքին ռեզերվները գործողության մեջ դնելու նպատակով տարված հետևողական աշխատանքը հնարավորություն ընձեռեցին ապահովելու գյուղատնտեսական մթերքների մթերումների աճի առավել բարձր տեմպ՝ արտադրության աճի համեմատությամբ։ Այսպես, 1975 թ. համեմատությամբ, 1976—1978 թվականներին միջին հաշվով հացահատիկի արտադրությունը տարեկան ավելացել է 2,5, իսկ մթերումները՝ 6,4 տոկոսով, կարտոֆիլինը՝ համապատասխանաբար՝ 25,5 և 35,9, մսինը՝ 16,5 և 20,4 տոկոսով և այլն։*

*Հաշվարկները ցույց են տալիս, որ հացահատիկի, շաքարի ճակնդեղի վաճառքի հնգամյակի առաջադրանքները կկատարվեն 4 տարում, զգալիորեն կգերակատարվեն բանջարեղենի, կաթի, մսի մթերումների պետական պլանները։ Իրականացված մի շարք միջոցառումների շնորհիվ հանրապետության կոլտնտեսություններում և սովխոզներում որոշակիորեն բարձրացել է գյուղատնտեսական մթերքների ապրանքայնությունը. 1978 թվականին արտադրված կաթի 87,3, ձվի, մսի, պտղի, խաղողի 92—99 տոկոսը վաճառվել է պետությանը։*

*Պետական ռեզերվների ավելացման գործում մեծ նշանակություն է ստանում բնակչության մոտ եղած գյուղատնտեսական մթերքների ավելցուկի գնումների կազմակերպումը. դրա հաշվին հանրապետությունում տարեկան մթերվում է 21—22 հազար տոննա միս, 18 մլն հատ ձու, 750—800 տոննա բուրդ և այլն։*

*Գյուղատնտեսական մթերքների արտադրության ու պետական մթերումների ավելացման՝ ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խնդիրների կենսագործման բնագավառում, չնայած ձեռք բերած հաջողություններին, դեռևս առկա են թերություններ ու բացթողումներ։ Հարկ է բացահայտել առկա ռեզերվներն ու հնարավորությունները և ապահովել դրանց արդյունավետ օգտագործումը։*

*Պետական մթերումների բնագավառում ամենաէական թերությունը հանրապետության առանձին կոլտնտեսություններում ու սովխոզներում պլանային ցածր կարգապահությունն է և մթերումների կազմակերպման ոչ բավարար մակարդակը, որի հետևանքով չի ապահովվում բոլոր մթերքների գծով և բոլոր*



*տնտեսությունների կողմից պետական առաջադրանքների կատարումը։ Հնգամյակի անցած երեք տարիներին չեն կատարվել խորդենու, բոստանային կուլտուրաների, ձվի, խոզի կաշվի մթերման պետական պլանները, պետական ռեսուրսները չեն համալրվել այդ մթերքների անհրաժեշտ քանակով (խորդենի՝ 96 հազար տոննա, բոստանային կուլտուրաներ՝ 84 հազար տոննա, ձու 4,6 մլն հատ և այլն)։*

*Վերջին տարիներին որոշ չափով պակասել է մթերումների պլանները չկատարող տնտեսությունների թիվը, սակայն այդ նպատակով ձեռնարկված միջոցները դեռևս ցանկալի արդյունք չեն տալիս։ 1978 թ. Արագածի և Անիի շրջաններում մսի վաճառքի պլանները չեն կատարել տնտեսությունների մոտ կեսը, Մեղրիի, Մարտունու, Հոկտեմբերյանի, Շամշադինի շրջաններում՝ տնտեսությունների 26—36 տոկոսը։ Կաթի վաճառքի առաջադրանքը չի կատարել Արագածի, Մեղրու, Մարտունու շրջանների տնտեսությունների 45—53 տոկոսը։ Առավել տխուր վիճակ է տիրում Արթիկի, Գուգարքի, Ապարանի, Ղափանի շրջաններում՝ բանջարեղենի արտադրությունը կազմակերպելու բնագավառում։ Այդ կուլտուրաների մթերումների պլանները չեն կատարել նշված շրջանների բանջարեղեն մշակող գրեթե բոլոր տնտեսությունները։ Նման վիճակի պատճառն ամենից առաջ շրջանային մթերման տեսչությունների և մյուս կազմակերպությունների անբավարար աշխատանքն է, պետական պլանների կատարման նկատմամբ առանձին տնտեսությունների ղեկավարների անպատասխանատվությունը։ Դիտողությունն ընդհանուր չլինելու համար բերենք մի օրինակ. 1979 թվականի առաջին եռամսյակում 173 տնտեսություն չի կատարել մսի վաճառքի պլանը։ Երբ խորամուխ ենք լինում այս փաստի մեջ, ապա երևան է գալիս մի հետաքրքրական հանգամանք. 10 տնտեսություն մսի վաճառքի պլանը թերակատարել է մինչև 500 կգ-ով, 55 տնտեսություն՝ 0,5—3 տոննայով։ Նման փաստը ցույց է տալիս, որ ուժերի և ռեզերվների փոքր լարումով նշված 173 տնտեսությունից առնվազն 65-ը կարող էր ապահովել պլանի կատարումը։*

*Առանձին տնտեսություններում մսի վաճառքի պետական պլանի թերակատարման պատճառը մթերումների վատ կազմակերպումն է։ Մի շարք շրջաններում մեծ է տեղում օգտագործված մսի ծավալը, ընդ որում՝ անասունների չափազանց ցածր քաշով։ Այսպես, Արարատի շրջանը 1978 թ. պետությանը վաճառել է 2.331 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, իսկ տեղում օգտագործել է 947 գլուխ կամ վաճառված անասնագլխաքանակի 40,6 տոկոսը, Շամշադինում այդ թիվը կազմել է 43,8 տոկոս, Արտաշատում՝ 50,5 տոկոս։ Տեղում մորթված խոշոր եղջերավոր անասունների մեկ գլխի քաշը նշված շրջաններում կազմել է 100—139 կգ։ Նույն տարում հանրապետությունում մթերվել է 474,8 հազար գլուխ մանր եղջերավոր անասուն, իսկ տեղում ծախսվել է 153,7 հազարը կամ 32,4 տոկոսը. ընդ որում, Անիի, Արագածի, Արարատի, Կալինինոյի, Ստեփանավանի շրջաններում տեղում օգտագործվել է 61—84 տոկոսը։ Այդ իմաստով յուրատեսակ «ռեկորդ» են սահմանել Հոկտեմբերյանի ու Շամշադինի շրջանները, որոնք պետությանն են վաճառել համապատասխանաբար 2.685 և 455 գլուխ, տեղում օգտագործելով, դարձյալ համապատասխանաբար՝ 4.531 և 2.879 գլուխ։ Նման վիճակ գոյություն ունի նաև խոզի մսի արտադրության ու մթերումների հարաբերության մեջ։*

*Տեղին է նշել, որ վերջին տարիներին ՀԿԿ Կենտկոմի ձեռնարկած միջոցների շնորհիվ վիճակը որոշակիորեն բարելավվել է. հնգամյակի երեք տարիներին տեղում օգտագործված խոշոր եղջերավոր անասունների քանակը 1976 թ. 19,2 տոկոսից իջել է 14,5, ոչխարինը՝ 64,6-ից 32,4, խոզինը՝ 31,6-ից 26,1 տոկոսի։ Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե 50 տոկոսով կրճատվեր տեղում օգտագործված խոշոր և մանր եղջերավոր անասունների գլխաքանակը և դրանց քաշը հասցվեր պետությանը վաճառված անասունների միջին քաշին ու այդ ամբողջ միսը հանձնվեր պետությանը, ապա միայն 1978 թվականին հնարավոր կլիներ հանրապետության մսի ռեսուրսներն ավելացնել մոտ 6 հազար տոննայով, իսկ կոլտնտեսությունների ու սովխոզների եկամուտները՝ 5—7 մլն ռուբլով։*

Կաթի վաճառքի պետական պլանների կատարման վրա, ի թիվս այլ գործոնների, խիստ բացասաբար են անդրադառնում անասունների կերակրման ու կաթի արտադրության տեխնոլոգիական պրոցեսների խախտումները, որի հետևանքով հնգամյակի երեք տարիներին պետությանը վաճառված 34 հազար տոննա կաթ չի հաշվարկվել պլանի դիմաց՝ բազիսայինից ցածր յուղայնության պատճառով։ Առանձին տնտեսություններում մեծ չափերի է հասնում ներտնտեսային կարիքների համար օգտագործվող կաթի քանակը, մասնավորապես հորթերին ավելի շատ կաթ է տրվում, քան նախատեսված է նորմայով։ Այսպես, 1978 թվականին Մարտունու շրջանի տնտեսություններում արտադրական-ֆինանսական պլանով նախատեսված 198 կգ դիմաց մեկ գլուխ հորթի կերակրման համար ծախսվել է 244 կգ կամ 13 տնտեսություններում այդ նպատակով ավելի է ծախսվել 251 տոննա կաթ։ Բնական է, որ այս պայմաններում անցյալ տարի շրջանը կաթի մթերման պլանը չկատարեց։

Վերոհիշյալ փաստերի, ինչպես նաև մթերումների տեսչությունների անբավարար հսկողության պատճառով 1978 թվականին 716 տնտեսություններից 113-ը չկատարեցին կաթի վաճառքի պլանները և պետությանը պակաս վաճառեցին 4.776 տոննա կաթ։ Ըստ որում, կաթի վաճառքի 1978 թ. պլանները չեն կատարել Արագածի, Մարտունու, Մեղրու շրջանների տնտեսությունների շուրջ կեսը, Կալինինոյի, Ստեփանավանի շրջանների կոլտնտեսությունների ու սովխոզների մեկ քառորդը։ Նույնն է վիճակը նաև ձվի ու բրդի արտադրության և մթերումների ասպարեզում։ Ուսումնասիրությունները վկայում են, որ առանձին մթերքների գնումների պետական պլանների թերկատարման հիմնական պատճառներից մեկն այն է, որ չի ապահովվում անասունների գլխաքանակն ըստ պայմանագրերի և պետվաճառքի պլանների։

Որպես կանոն, անասնապահական մթերքների մթերումների պլանները հիմնականում չեն կատարվում այն տնտեսություններում, որոնք նյութական անհրաժեշտ միջոցներ չունեն գերակատարման համար 50 տոկոս հավելավճար տալու, ընդլայնված վերարտադրությունն իրականացնելու և տնտեսությունն ամրապնդելու համար։

Հանրապետությունում շատ բան է արված բանջարեղենի արտադրությունը և մթերումներն ավելացնելու նպատակով։ Սակայն այս բնագավառում արմատավորվել է միանգամայն անընդունելի այսպիսի պրակտիկա. շատ շրջաններ բանջարեղենի մթերումների պլանը կատարում են «համախառնության» սկզբունքով՝ պոմիդորի, կաղամբի, գազարի հաշվին։ Բայց չէ՞ որ մենք կոչված ենք առավել լիովին բավարարելու բնակչության պահանջմունքները և այն էլ ոչ թե «համախառն» քանակությամբ, այլ ըստ տեսականու։ Մեր աշխատավորների սեղանին պետք է լինի ո՛չ միայն պոմիդոր և գազար, այլև կանաչ լոբի, ոլոռ, պղպեղ, սպիտակ արմատիկ, դդմիկ, բամիա... Սակայն բանջարեղենի այդ տեսակների արտադրության, հետևաբար և մթերումների պլանները սիստեմատիկաբար չեն կատարվում, մեր առանձին տնտեսավարներ չեն ուզում իրենց նեղություն պատճառել այդպիսի «մանրուքների» համար և գործն ավարտված են համարում համախառն արտադրության ու մթերման պլանը կատարելով։ Եվ հետևանքն այն է, որ բանջարեղենի 15 տեսակներից 1978 թ. կատարվել է միայն 6-ի պլանը։

Մեր կարծիքով, բանջարեղենի մթերումների պետական պլանների, ինչպես նաև քիչ տարածված տեսակների առաջադրանքի կատարումը սերտորեն կապված է կոլտնտեսությունների ու սովխոզների նյութական շահագրգռության, մասնագիտացման և դրանց համապատասխան անհրաժեշտ միջոցառումների իրականացման հետ։

Կուսակցությունը պահանջում է ապահովել գյուղատնտեսական մթերքների ու հումքի պետական մթերումների պլանների կատարումը բոլոր տնտեսություններում և գյուղատնտեսական արտադրանքի բոլոր տեսակներով։ Այդ գործում հսկայական դեր ունեն վերավաճառող կազմակերպություններն ու վերամշակող ձեռնարկությունները, որոնց գործունեությունը, ցավոք, հաճախ սկսվում և ավարտվում է պայմանագրերի կնքումով։ Ներկա պահանջներին չի համապատասխանում մսեղենի և կաթնեղենի, սննդի արդյունաբերության,



առևտրի մինիստրությունների, Հայկոոպի վարչության մթերման բազաների ու գրասենյակների, կաթի, մսի կոմբինատների, պահածոների գործարանների և կոլտնտեսությունների ու սովխոզների տնտեսական կապերի մակարդակը, մթերողները քիչ են լինում կոլտնտեսություններում ու սովխոզներում, անբավարար է հսկողությունը պայմանագրերի կատարման նկատմամբ, կան թերություններ ռեսուրսները ռացիոնալ օգտագործելու, գյուղատնտեսական ողջ արտադրանքը ժամանակին ու բարձր որակով ընդունելու հարցերում։

Վերջին տարիներին որոշակիորեն բարելավվել է մթերքների որակը։ Մթերված հացահատիկը, բանջարեղենը, միրգը, խաղողը, շաքարի ճակնդեղը գրեթե ամբողջությամբ համապատասխանել են ստանդարտի պահանջներին։

Հանրապետության կոլեկտիվ և պետական տնտեսությունների կողմից պետությանը վաճառված լավ բտված տավարի տեսակարար կշիռը, 1975 թվականի համեմատությամբ, 1978 թ. ավելացել է 28 տոկոսով, մանր եղջերավոր անասուններինը՝ 3 տոկոսով, տավարի միջին կենդանի քաշը՝ 46 կգ-ով, ծանրաքաշ մատղաշների տեսակարար կշիռը 18,8 տոկոսից հասցվել է 58,7 տոկոսի։

Մթերված տավարի որակի բարելավման և քաշի ավելացման շնորհիվ 1978 թվականին հանրապետության տնտեսությունները, 1975 թվականի համեմատությամբ, 21 մլն ռուբլով ավելի եկամուտ են ստացել, կամ պետությանը հանձնած տավարի մեկ գլխի միջին արժեքն ավելացել է 180 ռուբլով, իսկ քաշի մեկ տոննայի միջին արժեքը՝ 360 ռուբլով։ Միայն ծանրաքաշ մատղաշների հանձնումից 1978 թվականին հանրապետության տնտեսությունները լրացուցիչ ստացել են 10,7 մլն ռուբլու եկամուտ, 1975 թվականի 2,2 մլն-ի դիմաց, կամ այն 2,5 անգամ ավելի է, քան ամբողջությամբ վերցրած իններորդ հնգամյակում ստացվածը։

Եթե մսի որակական ցուցանիշների աճի տեմպերը կարելի է բավարար համարել, ապա կաթի որակի հարցը խիստ անհանգստացնում է։ Վերջին տարիներին իջել է կաթի յուղայնության տոկոսը. 1975 թվականի 3,6-ի դիմաց այն 1978 թ. կազմել է 3,52 տոկոս։

Իհարկե, մենք ունենք շատ տնտեսություններ և առանձին շրջաններ, որտեղ լուրջ, հետևողական աշխատանք է կատարվում անասնապահական մթերքների և մասնավորապես կաթի որակը բարձրացնելու նպատակով։ Ամասիայի, Ախուրյանի, Ղափանի շրջաններում որոշակի տեղաշարժեր են նկատվում այդ բնագավառում։ Սակայն ինչ կարելի է ասել Շահումյանի և Արտաշատի շրջանների տնտեսավարների մասին, որոնց «ջանքերի» շնորհիվ անցյալ տարի հանձնված 700-ական տոննա կաթ չի հաշվարկվել պլանի դիմաց, Շամշադինի, Մասիսի, Արարատի շրջանների պլանի դիմաց չի հաշվարկվել 435—525 տոննա կաթ։ Ի դեպ, Էջմիածնի, Շահումյանի, Շամշադինի, Մասիսի շրջանների տնտեսություններում կաթի յուղայնությունը 1975 թ. համեմատությամբ իջել է 0,04—0,2 տոկոսով։

Միությունում առաջին տեսակի կաթի տեսակարար կշիռը 1977 թ. կազմել է 61,1, իսկ Էստոնիայում՝ 90,9, Ուզբեկստանում՝ 88,3, Ուկրաինայում՝ 77,2, Բելոռուսիայում՝ 69 տոկոս, իսկ մեր հանրապետությունում՝ ընդամենը 38 տոկոս։ Նման վիճակը բացատրվում է կաթի արտադրության ու տեղափոխման տեխնոլոգիայի լուրջ խախտումներով, լաբորատոր անալիզների խիստ անբավարար դրությամբ։ Դա հետևանք է նաև շատ տնտեսությունների ղեկավարների անպատասխանատվության, գյուղատնտեսական վարչությունների և մթերումների ու որակի շրջանային տեսչությունների անբավարար գործունեության։ Չնայած բազմաթիվ որոշումների և ձեռնարկած միջոցների, անհրաժեշտ տեղաշարժեր չեն նկատվում կաշվեհումքի որակի լավացման բնագավառում, առաջվա նման ընդհանուր մթերումների մեջ մոտ 60 տոկոս է կազմում 3-րդ և 4-րդ տեսակի կաշվեղենի ծավալը։

Բնակչությանը մատակարարվող բանջարեղենի, մրգի, կարտոֆիլի, սոխի որակն առանձին դեպքերում դեռևս չի ապահովում ստանդարտի պահանջները, որոշ տնտեսություններից առևտրական ցանց են առաքվում գերհասունացած, ապրանքային տեսքը կորցրած անորակ մթերքներ։ Սա նշանակում է, որ անհրաժեշտ է առավել լրջությամբ զբաղվել բերքահավաքի, տեսակավորման,

տարավորման և տեղափոխման, ինչպես նաև առևտրական ցանցում դրա պահպանման հարցերով։

Ապրանքային արտադրության պայմաններում տեղի են ունենում սպառողական արժեքների հսկայական տեղափոխություններ դեպի սպառման ոլորտը, որը հնարավորություն է ընձեռում վերականգնելու արտադրության ծախսումները, ապահովելու շահույթը և կազմակերպելու ընդլայնված վերարտադրություն։

Գյուղատնտեսական մթերքների պետական գնումները դարձել են կոլտնտեսությունների և սովխոզների՝ այդ մթերքների իրացման հիմնական ձևը, և հսկայական նշանակություն ունեն գյուղատնտեսական արտադրության զարգացման բնագավառում, կարևոր պայման են ընդլայնված վերարտադրության համար։

Պետության կայուն պլան-պատվերները (գնումները), որոնք որոշվում են՝ հաշվի առնելով հասարակության պահանջները և կոլտնտեսությունների ու սովխոզների հնարավորությունները, ապահովում են այդ մթերքների անխափան իրացումը և պայմաններ են ստեղծում գյուղատնտեսական ձեռնարկությունների շահութաբեր աշխատանքի համար։ Այդ տեսակետից էլ կուսակցությունն ու կառավարությունը մեծ նշանակություն են տալիս գյուղատնտեսական մթերքների մթերումների ու գնումների և արդյունաբերական ապրանքների գների հարաբերությունների կատարելագործմանը։ Սոցիալիստական արտադրաեղանակի պայմաններում ընդլայնված վերարտադրությունը չի կարող նորմալ ընթանալ՝ առանց գյուղատնտեսական մթերքների պլանային իրացման, առանց պետական պարենային ապրանքների բավարար ռեսուրսների առկայության։

Հանրապետության մթերումների մինիստրությունը և նրա շրջանային պետական տեսչությունները բարձր պատասխանատվություն պետք է ցուցաբերեն մթերումների պետական պլանների կատարումն ապահովելու հարցում, անհրաժեշտ վերահսկողություն ու կազմակերպչական գործունեություն ծավալեն այդ բնագավառում։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումներում, կուսակցական մյուս փաստաթղթերում մթերող կազմակերպությունների առջև խնդիր է դրվում՝ առավել հետևողականորեն համալրել պետական ռեսուրսները, ջանքեր գործադրել բնակչության պահանջներն ըստ ամենայնի բավարարելու, մթերքների որակը բարելավելու նպատակով։

Մեր խնդիրն է հետևողականորեն վերացնել մթերումների սիստեմում տեղ գտած թերությունները, ամենուրեք հաստատել կուսակցական ու պետական բարձր կարգապահություն, բոլոր օղակներում արմատավորել կազմակերպվածություն ու գործարարություն։

# ԿՈԼԵԿՏԻՎ ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹՅԱՆ ՊՏՈՒՂՆԵՐԸ

**Վ. Ե. ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**
Երևանի գինու կոմբինատի գլխավոր ինժեներ,
Հայկական ՍՍՀ վաստակավոր գինեգործ
**Պ. Ա. ՊԱՊՅԱՆ**

ԵՐԵՎԱՆԻ ԳԻՆՈՒ ԿՈՄԲԻՆԱՏԸ ո՛չ միայն Հայաստանի, այլև Միության սննդարդյունաբերության առաջատար ձեռնարկություններից է։ Տարիներ շարունակ նրա կոլեկտիվը պատվով է կատարում պետական պլաններն ու սոցիալիստական պարտավորությունները, թողարկում բարձրորակ գինիներ, արժանանում սպառողների գովասանքին։ Այստեղ տեխնիկատնտեսական ցուցանիշների բարելավման գործում կարևոր ու վճռական դեր է խաղում նաև սոցիալիստական մրցությունը։ Անցած տարի գինեգործները հանրապետական սոցիալիստական մրցությունում հաղթող ճանաչվեցին և արժանացան Հայաստանի կոմկուսի Կենտկոմի, Հայկական ՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԱՄԽ-ի և ՀԼԿԵՄ Կենտկոմի փոխանցիկ կարմիր դրոշին։

ՍՍՀՄ արհմիությունների XVI համագումարում ընկեր Լ. Ի. Բրեժնևը բարձր գնահատեց արհմիությունների դերը սոցիալիստական մրցության ծավալման գործում. գլխավորելով մրցությունը՝ արհմիությունները դրանով իսկ ակտիվորեն մասնակցում են էկոնոմիկայի կառավարմանը, կազմակերպչական և քաղաքական-մասսայական աշխատանքին։ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ մեկ անգամ ևս շեշտվում է արհմիությունների կարևոր դերը սոցիալիստական մրցության կազմակերպման ու ծավալման գործում. «Սովետական արհմիությունների պարտքն է՝ կատարելագործել սոցիալիստական մրցության ձևերը, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, վճռականորեն ամրապնդել կարգապահությունը, առավել բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը...»։ «Արարատ» միավորման Երևանի գինու կոմբինատի արհմիութենական կազմակերպությունը, նրա կոմիտեն ամեն ինչ անում են սոցմրցության գործարարությունն ու բարձր արդյունավետությունն ապահովելու համար։

Սոցիալիստական մրցությունը հաջող է, երբ մասսայական է։ Արհմիութենական կոմիտեն, կուսկազմակերպության ղեկավարությամբ, ձգտում է ձեռնարկության բոլոր օղակներն ու աշխատողներին ներգրավել մրցության մեջ, նրանց ակտիվորեն մասնակից դարձնել հանրային արտադրության արդյունավետության բարձրացման համար ծավալված պայքարին, ՍՄԿԿ XXV համագումարի մշակած տնտեսական և սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծմանը։ Այստեղ անհատական պարտավորություններ ունեն բոլոր բանվորներն ու ինժեներատեխնիկական անձնակազմը, կոլեկտիվ մրցության մեջ են բոլոր բրիգադների, բաժանմունքների ու արտադրամասերի կոլեկտիվները։

Կոմբինատի դիրեկցիան և արհմիութենական կոմիտեն մշակել են սոցմրցության այնպիսի պայմաններ, որոնք հնարավորություն են ընձեռում արտադրական յուրաքանչյուր օղակի և անհատական մրցողի՝ ստեղծագործական ուժերն ու կարողությունները դրսևորելու և մրցությունում հաջողության հասնելու համար։

Երևանի գինեգործները մրցության գործարար կապեր են հաստատել ո՛չ միայն հանրապետության, այլև Մոսկվայի, Լենինգրադի, Բաքվի, Թբիլիսիի համանման ձեռնարկությունների կոլեկտիվների հետ։ Այդ աղնիվ ու անզիջում պայքարում նրանք իրենց լավ են դրսևորում՝ առաջնակարգ տեղեր գրավելով երկրի գինեգործների շրջանում ծավալված մրցության մեջ։

Արտադրածրագրերի իրականացման, մրցողների ստանձնած անհատական և կոլեկտիվ սոցպարտավորությունների կատարման համար ձեռնարկությունում ստեղծվել են տնտեսատեխնիկական լայն հնարավորություններ։ Գրեթե բոլոր արտադրամասերում իրականացվել են տեխնիկական արդյունավետ վերափոխումներ, կարգավորվել է նյութատեխնիկական մատակարարումը։ Մի ժամանակ որոշակի դժվարություն էր հարուցում գինիների սառը մշակման պրոցեսը։ Այն բացասաբար էր անդրադառնում արտադրական խնդիրների լուծման վրա։ Դրությունն արմատապես փոխվեց, երբ կենտրոնական սառնարանային բաժանմունքում տեղադրվեցին երկու նոր, ժամանակակից կոմպրեսորներ և զգալիորեն ավելացվեց դրանց հզորությունը։ Ձեռնարկության ներսում ստեղծվեց երկաթուղային հանգույց, որով նկատելիորեն բարելավվեց բեռնաշրջանառության գործը, գրեթե վերացան երկաթուղային վագոնների պարապուրդները։ Վերակառուցվեց գինիների վերամշակման արտադրամասի ընդունման բաժանմունքը, այնտեղ ստեղծվեցին տեխնիկական բարենպաստ պայմաններ, տեղակայվեցին 36 հազար դեկալիտր տարողությամբ մետաղյա պահամաններ։ Այդ ամենի շնորհիվ կատարելագործվեց գինիների մշակման տեխնոլոգիան, թեթևացավ բաժանմունքի աշխատանքը։

Կոմբինատի արտադրամասերի արհմիութենական կոմիտեները հետևողականորեն կատարելագործում են մրցության կազմակերպման ձևերն ու մեթոդները, ապահովում դրա բարձր արդյունավետությունը։ Այդ նպատակով նրանք ուսումնասիրել և արմատավորել են Միության առաջավոր ձեռնարկությունների աշխատանքի ու մրցության կազմակերպման փորձը։ Այսպես, Լվովի «Մոլդավվինպրոմ» գործարանի օրինակով կոմբինատում դեռևս 1975 թ. դեկտեմբերից սկսեցին ներդնել որակի կառավարման կոմպլեքսային սիստեմը։ Այդ նպատակով արհկոմին առընթեր ստեղծվեց որակի կառավարման կոմպլեքսային հարցերի մշակման մասնագիտացված հանձնաժողով։

Մանրազնին ուսումնասիրությունների հիման վրա հանձնաժողովը բոլոր տասը հիմնական արտադրամասերի կոլեկտիվների համար սահմանեց մեքենաների ու մեխանիզմների տեխնիկական խնամքի, գինիների մշակման տեխնոլոգիական ռեժիմների, հիմնական հումքի և օժանդակ նյութերի օգտագործման, աշխատանքի և արտադրության ճիշտ կազմակերպման, որակի կառավարման, ստուգման, մրցության արդյունքների գնահատման ստանդարտացված սիստեմներ, որոնց կիրառումը նպաստում է մրցության արդյունքների օբյեկտիվ ամփոփմանը։

Որակի կառավարման կոմպլեքսային սիստեմը ներառում է օգտագործվող կիսաֆաբրիկատների ստանդարտացումը, տեխնոլոգիական ռեժիմների ճշգրիտ պահպանումը, խոտանի կամ ցածրորակ արտադրանքի կանխարգելումը և այլն։ Այդ տարրերը տարբեր ձևերով արտացոլվում են բրիգադների, բաժանմունքների և արտադրամասերի կոլեկտիվների, ինչպես նաև անհատ մրցողների ստանձնած սոցիալիստական պարտավորություններում։ Ի դեպ, որակի կառավարման լծակների փորձի յուրացման ու արմատավորման համար պահանջվեց տևական ու ստեղծագործական աշխատանք, որն ավարտվեց 1978 թվականին։

Կոմբինատի դիրեկցիան և արհկոմը մշակել են մրցության արդյունքների ամփոփման ու գնահատման գիտականորեն հիմնավորված բալային սիստեմ։

Ուսանելի է այն, որ արհկոմն իր հանձնաժողովների միջոցով, աշխատանքի կազմակերպման ու պլանային բաժինների հետ միասին, բոլոր ցուցանիշների վերաբերյալ տեղեկությունները հավաքում է յուրաքանչյուր օր։ Դրանց հիման վրա կատարվում են վերլուծություններ, արդյունքները հանրագումարի են բերվում ամեն ամսվա 15-ին՝ սահմանված որակի գնահատման օրը։

Որակի կառավարման կոմպլեքսային նոր սիստեմի կիրառումը մրցողներին



առաջադրում է նոր պահանջներ։ Այսպես, յուրովի է գնահատվում տեխնիկական վերահսկիչների գործունեության որակը։ Նրանք սոսկ ստուգողներ և վերահսկողներ չեն, այլ պարտավոր են նաև ժամանակին նկատել տեխնոլոգիական պրոցեսների յուրաքանչյուր խախտում, նախազգուշացնել, միջամտել։ Տեխնիկական վերահսկիչի աշխատանքի գնահատականը արտադրանքի բարձր որակն է։

Որակի և արդյունավետության համար կոմբինատում ծավալված մրցությունը կրում է գործարար բնույթ, ժամանակին որոշվում են թե՛ հաղթողները, թե՛ ետ մնացողները։ Միջարտադրամասային մրցության մեջ 1978 թ. հաղթողի պատվին արժանացել են Ռ. Վարդերեսյանի, Ռ. Զաքինյանի, Մ. Թումանյանի ղեկավարած՝ գինիների հնացման, վերամշակման և լցման արտադրամասերի կոլեկտիվները։ Առավել գործարար է մրցությունը Ռ. Զաքինյանի ղեկավարած՝ գինիների մշակման արտադրամասում, որի կոլեկտիվը բազմիցս գրավել է մրցանակային տեղեր, շահել միջարտադրամասային փոխանցիկ կարմիր դրոշը։ Արտադրամասի արհմիութենական կոմիտեն (նախագահ՝ Վ. Նազինյան) մշակել է մրցության արդյունքների ամփոփման ամենօրյա կարգ։ Ցուցատախտակին, պլանների կատարման և խնայողության արդյունքների հետ միասին, գրանցվում են նաև տեխնոլոգիական ռեժիմների պահպանման, մեքենասարքավորումների արդյունավետ սպասարկման, աշխատանքում բանվորի պրոֆեսիոնալ վարպետության գնահատման բոլոր ցուցանիշները՝ ըստ սահմանված բալային սիստեմի։ Ընդ որում, անհատ մրցողների և բրիգադների դրական ու բացասական ցուցանիշները գրանցվում են տարբեր, համապատասխանաբար՝ կարմիր և կապույտ գույներով։ Դրանով ևս ապահովվում է մրցության արդյունքների հրապարակայնությունը։ Օրվա ետ մնացող կոլեկտիվը հաշվի է առնում իր սխալներն ու թերացումները, շտկում դրանք, մարդիկ զգաստանում են, աշխատում ավելի սրտանց։ Ետ մնացող բրիգադի անդամները ձգտում են համախմբել ուժերը, հասնել առաջավորներին։ Դա նպաստում է բրիգադի և արտադրամասի բոլոր աշխատողների ակտիվության աճին, նրանց ստեղծագործական նախաձեռնության զարգացմանը։

Մրցության արդյունքների գլխավոր գնահատողը կոլեկտիվն է, նրա ընդհանուր ժողովը։ Արդյունքներն ամփոփելիս, ժողովը, հաշվի առնելով նաև մասնակիցների կարծիքը, առաջադրում է այնպիսի խնդիրներ, որոնց լուծումն առնչվում է տեխնիկական առաջընթացի հետ։ Այսպես, մրցությունում հաղթող ճանաչված առաջին արտադրամասում, կոլեկտիվի նախաձեռնությամբ և ռացիոնալիզատորների ակտիվ մասնակցությամբ, կատարելագործվել է գինիների մշակման, գինենյութերի մաքրման տեխնոլոգիան, անցկացվել է ջերմափոխանակման մի նոր գիծ ևս գինիների սառը մշակման համար։

Արտադրամասի արհկոմը, նրա հանձնաժողովն ուշադրություն են նվիրում կոլեկտիվի, նրա յուրաքանչյուր անդամի կողմից նորի ու առաջավորի արմատավորմանը։ Արհկոմը կարողացել է ռեզերվներ գտնել նաև հնարամիտների աշխատանքի փորձի մեջ։ Այս առումով ակնառու են վաստակաշատ գինեգործ, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիր Մայրանուշ Մկրտչյանի հաջողությունները։ Նրա աշխատաժամերի վերլուծությունը ցույց է տալիս, որ մշակվող գինիների ֆիլտրացման հարմարությունների ծառայության ժամկետները երկարացվում են գրեթե կրկնակի անգամ, որով և ստեղծվում են օժանդակ նյութերի տնտեսման բարենպաստ պայմաններ։ Ամենակարևոր ցուցանիշը աշխատանքի արտադրողականության աճն է. բրիգադին հաջողվել է գինիների մշակման համակարգում շրջապտույտի մեջ պահվող գինեհումքի ծավալը 140 հազար դեկալիտրից հասցնել 250 հազարի։ Անվանի գինեգործը 1978 թ. տնտեսական տարվա արդյունքների համար արժանացավ առաջին մրցանակի։

Թվում է, թե ընդհանուր ոչինչ չկա գինիների մշակման ու ապրանքային գինիների լցման արտադրամասերի աշխատանքի բնույթի միջև, որովհետև տարբեր են նրանց տեխնոլոգիական պրոցեսներն ու ռեժիմները։ Սակայն դա չի խանգարում, որ լցման արտադրամասի աշխատողները որոնեն ու գտնեն մրցակիցների ուսանելի փորձի կիրառման արդյունավետ ուղիներ։ Այստեղ արհկոմի նախագահը առաջավոր գինեգործ, ՍՄԿԿ անդամ, Աշխատանքային

կարմիր դրոշի շքանշանակիր Աղունիկ Ալավերդյանն է։ Արտադրամասի պետ Մուշեղ Թումանյանը ևս իր գործունեությունն սկսել է որպես շարքային գինեգործ։ Աշխատանքին զուգընթաց նա սովորել ու ավարտել է Երևանի գյուղատնտեսական ինստիտուտի գինեգործական բաժինը։ Արտադրամասի պետն ու արհկոմի նախագահը լավ են հասկացել, որ մրցությունը աշխատանքի արտադրողականության բարձրացման հզոր արագացուցիչ է։ Պատահական չէ, որ արտադրամասում կատարելագործվում է սոցմրցությունը, բարձրանում դրա արդյունավետությունը, բանվորներն ավելի ակտիվորեն են մասնակցում իրենց ստեղծագործական ուժերի դրսևորման այդ պայքարին։ Մրցության կազմակերպման ու ծավալման ընթացքում հարկ է լինում հաղթահարել շատ դժվարություններ, բոլոր արտադրամասերի համար ստեղծել պարտավորությունների կատարման լավագույն պայմաններ։ Կոլեկտիվների ժողովներում ու խորհրդակցություններում, մրցության արդյունքները քննարկելիս, բանվորները համարձակորեն առաջադրում են իրենց հուզող հարցերը, հետամուտ լինում դրանց իրագործմանը։ Այս առումով հետաքրքրական են հետևյալ օրինակները։

Ամեն օր լցման արտադրամասի հոսքային գծից առաջին շիշը պահեստ էր փոխադրվում աշխատանքային օրվա առաջին 15-րդ րոպեին։ Փաստորեն դա պայմանական պարապուրդ էր ինչպես հոսքային գծի, այնպես էլ այն սպասարկող անձնակազմի համար։ Աշխատանքային օրվա վերջում, որպես կանոն, գիծը հանձնվում էր դատարկ վիճակում։ Ստացվում էր այնպես, որ հոսքային գծերն սպասարկող բոլոր բրիգադները պետք է աշխատանքը դադարեցնեին դարձյալ 15 րոպե առաջ։ Փաստորեն նրանք օրական կորցնում էին 30 րոպե աշխատաժամանակ, և պայմանական այդ պարապուրդը բոլորի համար դառնում էր հարկադրական։ Րոպեները կորչում էին, մինչդեռ պատին փակցված պաստառին խոշոր տառերով գրված էր. «Կոմբինատը մեկ րոպեում երկրին տալիս է 130 ռուբլու արտադրանք»։ Արտադրական խորհրդակցությունում հարց ծագեց. ինչպե՞ս կանխել այդ հարկադրական պարապուրդը։ Եվ ահա լվացման տեղամասի օպերատորներ Ռոզա Ավետիսյանը, Սիլվա և Սաթիկ Գրիգորյանները առաջարկեցին իրենց տեղամասում աշխատանքային օրն սկսել ու ավարտել 15 րոպե շուտ, որպեսզի առաջին իսկ րոպեներից հոսքային գծերը գործեն լրիվ կարողությամբ։ Առաջարկված ռեժիմին անցան բոլոր յոթ հոսքային գծերը։ Աշխատանքի կազմակերպման այս ձևի կիրառմամբ լցման արտադրամասի մեկ օրվա արտադրողականությունն աճեց 1500 շշով, բանվորներն սկսեցին սիստեմատիկաբար կատարել ո՛չ միայն արտադրական պլանները, այլև ստանձնած սոցպարտավորությունները։ Ընդ որում, աշխատանքային օրվա համար սահմանված ժամանակը մնաց նույնը։

Աշխատանքի կազմակերպման այս ձևն ուսանելի օրինակ դարձավ հոսքային գծերը կարգաբերող փականագործների համար։ Բանն այն է, որ հոսքային գծերը կարգավորելուց հետո նրանք անելիք չունեին և այնքան էլ պատասխանատու չէին բրիգադի պլանների ու պարտավորությունների կատարման համար։ Փականագործներ Ալբերտ Բաբայանը, Սաշիկ Անդրեասյանը և Երջանիկ Սահակյանը հասկացան, որ աշխատանքի կազմակերպման այս ձևն օգտակար չէ ոչ իրենց և ոչ էլ հոսքային գծերն սպասարկող գինեգործական բրիգադների համար։ Նրանց աշխատանքային ծանրաբեռնվածությունը մեծ չէր, վաստակը՝ ոչ շատ։ Իսկ պլանները գերակատարող բրիգադներում բանվորների վարձատրությունն անհամեմատ բարձր էր։ Եվ փականագործ կարգաբերողներն առաջարկեցին իրենց ևս ներգրավել հոսքային գծերն սպասարկող բրիգադներում, իրավունք տալ աշխատելու նրանց հետ, կոլեկտիվի մյուս անդամներին հավասար, որպեսզի անհրաժեշտության դեպքում կարողանան փոխարինել բացակա ընկերներին։

Այդպես էլ արվեց։ Արտադրամասում, առանց հաստիքների ավելացման, փականագործները համալրեցին լցման գծերն սպասարկող բրիգադները։ Կադրերի վերադասավորումը նպաստեց բրիգադներում արտադրանքի որակի բարձրացմանը, իսկ աշխատանքի արտադրողականությունն աճեց 8—10 տոկոսով։ Մեքենաների ու մեխանիզմների տեխնիկական խնամքի բարելավմամբ մոտ 50 տոկոսով կրճատվեցին հոսքային գծերի պարապուրդները։ Ինչպես պատ-



մում է աշխատանքի ու աշխատավարձի բաժնի պետ Համլիկ Ահարոնյանը, կարգաբերողների նախաձեռնությամբ աշխատանքի կազմակերպման այս նոր ձևի կիրառման, մասնագիտությունները համատեղելու և զուգահեռ բանվորական տեղերում աշխատելու շնորհիվ ընդլայնվեց բանվորների սպասարկման ոլորտը, ավելացավ նրանց վաստակը։

Լինում են դեպքեր, երբ էլեկտրական հոսանքի ընդհատման կամ մեխանիկական այլ խափանումների պատճառով դադարեցվում էր գինեմուղ պոմպերի, ինչպես և մյուս հանգույցների աշխատանքը։ Հարցը քննարկվեց արտադրամասի արհկոմին կից գործող տեխնիկական խորհրդի նիստում։ Այն պահանջում էր ինժեներական լուծում։ Արտադրամասի ռացիոնալիզատորները, կոմբինատի տեխնիկական ղեկավարության օգնությամբ, վերափոխեցին հոսքային գծերին գինու մատակարարման եղանակը։ Հոսքային գծերի սկզբնամասերում տեղակայվեցին մեծ տարողության ճնշման բաքեր, որոնց միջոցով հոսքային գծերում շշալցումը կատարվում է անընդհատ։ Տարողություններում, որպես ռեզերվ, պահվում է մեծ քանակությամբ գինի, որը, պոմպերի խափանման դեպքում, օգտագործվում է լցման գործողությունն անընդմեջ շարունակելու համար։

Որակի կառավարման սիստեմը արդյունավետ է կիրառվում գինիների լցման արտադրամասում։ Այստեղ կոլեկտիվն իր առջև խնդիր էր դրել՝ ստեղծել մրցության արդյունքների անընդմեջ ամփոփման և հրապարակման ավտոմատ համակարգ։ Գինեգործներին օգնության հասան Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի կիբեռնետիկայի ամբիոնի մասնագետները։ Նրանց օգնությամբ արտադրամասում ստեղծվեց լուսային էֆեկտներով գործող ավտոմատ վահանակ. բոլոր յոթ հոսքային գծերից պահեստ հանձնվող լցված շշերի ավտոմատ հաշվիչների թվերը հատուկ սխեմայով փոխանցվում են վահանակին և լուսային էֆեկտներով հրապարակվում օրվա բոլոր ժամերին։ Այս նորույթի ներդրմամբ միաժամանակ աշխատող չորս բրիգադների մեջ մրցության առաջավորն ու ետ մնացողն այժմ ճանաչվում է ոչ թե օրվա վերջում, այլ ընթացքում՝ բոլոր ժամերին։ Վահանակը միաժամանակ հնարավորություն է ընձեռում օրվա վերջում ստանալու ստույգ ինֆորմացիա՝ աշխատաժամանակի ռացիոնալ օգտագործման և շշերի լցման քանակի վերաբերյալ։ Ինչպես ցույց է տվել փորձը, վերահսկողության ավտոմատ կառավարման այս ձևի կիրառումից հետո զգալիորեն նվազել են անարտադրողական ծախսերը, մարդիկ դարձել են ավելի հոգատար, նրանց ավելի շատ է մտահոգում ռիթմիկ ու համաչափ աշխատանքի ապահովումը օրվա բոլոր ժամերին, մրցությունը դարձել է ավելի գործարար ու արդյունավետ։

Կոմբինատի արտադրաօղակներում ծավալված սոցմրցության հսկողությունը, արդյունքների ամփոփումն իրականացնում է արհմիութենական կազմակերպությունը աստիճանափուլերով։ Արդյունքները քննարկվում են նախ՝ բրիգադների, ապա՝ տեղամասերի ժողովներում, արհմիութենական խմբերի ու կոմիտեների նիստերում։ Երրորդ փուլի քննարկումը կատարվում է արտադրամասային կոլեկտիվների ժողովներում, որտեղ հաստատվում է համապատասխան կոմիտեի որոշումը։ Վերջնական ամփոփումը տեղի է ունենում կոմբինատի արհկոմի ընդլայնված նիստում, որի որոշումը ներկայացվում է ձեռնարկության ղեկավարությանը՝ առաջավորների նյութական և բարոյական խրախուսման համար։

Կոմբինատում արդյունավետ են օգտագործվում մրցության բարոյական և նյութական խրախուսման միջոցները։ Առաջավորների խրախուսմանը լայնորեն ի սպաս են դրվում արհկոմի ու արտադրամասային կոմիտեների պատվո տախտակները, արհկոմի պատվո գիրքը, պարբերաբար լույս ընծայվող պատի թերթերը, ցուցադրական ագիտացիայի բազմազան միջոցները։ Մրցության հաղթողները, որպես լրացուցիչ վարձատրություն, ստանում են պարգև-հավելումներ։ Պարգևներ են սահմանվել հումքի, էլեկտրաէներգիայի, օժանդակ նյութերի խնայողության, աշխատանքի արտադրողականության բարձրացման, որակի բարելավման և մյուս ցուցանիշների համար։

Արհմիութենական կազմակերպության բոլոր օղակներում մրցության արդյունքների ամփոփումը գինեգործների համար հարմար առիթ է՝ հետադարձ հայացք ձգելու անցած ճանապարհին, գնահատելու արածը, որոշելու անելիքները, նշելու պլանների ու սոցպարտավորությունների գերակատարման նոր ուղիներ, ընդհանրացնելու առաջավորների աշխատանքի փորձը։ Մրցության հաղթողների շարքում հաճախ են նշվում սոցիալիստական աշխատանքի հերոս Արփիկ Ֆրանգուլյանի, իններորդ գումարման ՍՍՀՄ Գերագույն սովետի դեպուտատ, ՍՄԿԿ XXV համագումարի պատգամավոր Սեդա Բախտամյանի, Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանակիրներ Մայրանուշ Մկրտչյանի, Վարդուշ Երանոսյանի, Նորայր Ղամբարյանի, Շահեն Մկրտումյանի և ուրիշների անունները, որոնք ո՛չ միայն արտադրության առաջամարտիկներ են, այլև մրցության նոր ձևերի կիրառման նախաձեռնողներ։

Արհմիութենական կոմիտեի ջանքերի շնորհիվ անհատների նախաձեռնությունները դառնում են բրիգադների սեփականությունը, ձեռնարկության արտադրաօղակներում լայնորեն տարածվում է նրանց աշխատանքի առաջավոր փորձը։ Ներքին օղակներում ծավալված մրցության պտուղները կան ամբողջ կոլեկտիվի ընդհանուր արդյունքում։ Անցած տարի, 1977 թ. համեմատությամբ, գինու թողարկումն աճել է 30 հազար դեկալիտրով, աշխատանքի արտադրողականությունը՝ 8,5 տոկոսով։ Գոհացուցիչ են նաև որակի արդյունքները։ Դրա վկայությունն այն 36 ոսկե, 31 արծաթե ու բրոնզե մեդալներն են, որ շահել են գինեգործները ձեռնարկության գոյության տարիներին, համամիութենական ու միջազգային տոնավաճառներում և ցուցահանդեսներում։ Գինիների 13 տեսակ (Այգեշատ, Օշական, Արևիկ, Արևշատ, Արենի, Գայանե, Ոսկեվազ, Բյուրական և այլն) արժանացել է որակի պետական նշանի։ Դա կազմում է թողարկվող արտադրանքի 30 տոկոսը։

Մրցությունը նոր թափով է շարունակվում նաև ընթացիկ տարում։ Գինեգործների կոլեկտիվը պարտավորվել է համախառն արտադրանքի իրացման տարեկան պլանը կատարել դեկտեմբերի 25-ին, պլանից ավելի թողարկել և իրացնել մեկ միլիոն ռուբլու գինի և 1978 թ. մակարդակը գերազանցել 300 հազար դեկալիտրով, զգալիորեն ավելացնել որակի պետական նշանով արտադրանքի թողարկումը։ Նախնական արդյունքները խոստումնալից ու ոգևորող են. կոմբինատի կոլեկտիվը պատվով է կատարել առաջին կիսամյակի առաջադրանքները։ Արհմիութենական կոմիտեն, նրա ստորին օղակները, կուսկազմակերպության ղեկավարությամբ, ձգտում են ավելի կատարելագործել սոցիալիստական մրցության և աշխատանքի կազմակերպման ձևերը, անել ամեն ինչ՝ ստանձնած պարտավորություններն անպայման կատարելու, սոցիալիստական մրցության՝ աշխատանքային դաստիարակության այդ հզոր գործոնի, ընձեռած հնարավորություններն արդյունավետ օգտագործելու համար։

---



# ԱԶԱՏԱԳՐՎԱԾ ԵՐԿՐՆԵՐԸ ԵՎ ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ՆԿՐՏՈՒՄՆԵՐԸ

**Մ. Հ. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԳԱՂՈՒԹԱՅԻՆ ՍԻՍՏԵՄԻ փլուզման հետևանքով երիտասարդ ազգային պետությունների առաջացումն արմատապես փոխեց ժամանակակից աշխարհի քաղաքական ու սոցիալական պատկերը։ Ազատագրված երկրների ժողովուրդները, ինչպես կանխատեսում էր Վ. Ի. Լենինը, վերածվեցին համաշխարհային քաղաքականության և իմպերիալիզմի՝ հեղափոխական կործանման ակտիվ գործոնի (տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 585)։ Առավել ուժեղացավ ազգային-ազատագրական պայքարի՝ որպես համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ մասի, դերը։ Համաշխարհային սոցիալիզմի և ազգային-ազատագրական պայքարի դաշինքի ամրապնդումը, ազատագրված երկրներում կոմունիստական կուսակցությունների, նրանց ազդեցության, մասսաների հակաիմպերիալիստական ու հակաշահագործողական ձգտումների աճը, սոցիալիստական կողմնորոշման նորանոր պետությունների երևան գալը և այլն— այդ ամենով է որոշվում իմպերիալիզմի ու ազգային-ազատագրական շարժման միջև մղվող կատաղի պայքարի խորությունն ու մասշտաբայնությունը։

Արդի դարաշրջանի դասակարգային հակամարտությունները խորապես ներազդում են իմպերիալիզմի դեմ մղվող ազգային-ազատագրական շարժման պայքարի բնույթի, ձևերի և առանձնահատկությունների վրա։ Այժմ, երբ երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ, ուժեղանում է իմպերիալիզմի էքսպանսիան ազատագրված երկրների նկատմամբ։

Բուրժուական գաղափարախոսությունը ազգային-ազատագրական պայքարի մարզում դրսևորվում է որպես նեոգաղութատիրության գաղափարախոսություն։ Այն կոչված է մարքս-լենինյան տեսության, սոցիալիզմի պրակտիկայի և պատմական փորձի, սոցիալիստական կողմնորոշման տեսության ու պրակտիկայի դեմ գաղափարական պայքարի ձևերով ու միջոցներով պաշտպանելու համաշխարհային կապիտալիզմը, գաղափարապես ապահովելու կապիտալիստական հարաբերությունների արտահանումը իմպերիալիզմի գլխավոր կենտրոններից դեպի ազատագրված երկրները։ Նեոգաղութատիրության գաղափարախոսները խնդիր են դնում ո՛չ միայն գաղափարապես ու քաղաքականապես զինաթափ անելու ազգային-ազատագրական շարժումը, այլև կապիտալիզմի քաղաքական ծրագրի հիման վրա համախմբելու և ամրապնդելու բոլոր հետադիմական, շահագործողական, հակակոմունիստական ուժերը։

Նեոգաղութատիրությունը, որպես արդի պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի սոցիալ-քաղաքական, տնտեսական և գաղափարախոսական բարդ

երևույթ, ըստ էության, կոչված է հակազդելու նախկին գաղութներում և կիսագաղութներում տեղի ունեցած հեղափոխական փոփոխություններին, պաշտպանելու կապիտալիստական հասարակարգը։ Նեոգաղութատիրության գաղափարախոսությունը, արդարացնելով իմպերիալիզմի արտաքին էքսպանսիան, ձգնում է հիմնավորել ազատագրված երկրների շահագործումը, համաշխարհային կապիտալիստական տնտեսության մեջ գաղութատիրական տիպի հարաբերությունների հաստատումը։

Նեոգաղութատիրական տեսություններում լայնորեն պրոպագանդվում են ազատագրված երկրների կապիտալիստական զարգացման անհրաժեշտությունն ու անխուսափելիությունը, բուրժուառեֆորմիստական կոնցեպցիաների տարածումը։ Ամերիկացի գիտնական Ֆրանց Շուրմանն ուղղակի հայտարարում է, որ նեոգաղութատիրությունը չի կարող գործել առանց հակակոմունիզմի, որ «միայն հակակոմունիզմը կարող է պատսպարան դառնալ էքսպանսիայի համար»։ Նեոգաղութատիրության գաղափարախոսները, իրենց տեսությունները մշակելիս ու պրոպագանդելիս, հաշվի են առնում արդի միջազգային զարգացման կարևորագույն գործոնները, ինչպես նաև որոշ իրողություններ, որոնք անդառնալիորեն հաստատվել են ազատագրված երկրների հասարակական կյանքում։ Բացի այդ, տեղի է ունենում գաղափարական էքսպանսիայի, բուն նեոգաղութատիրական կոնցեպցիաների (դրանց «կատարելագործման» ճանապարհով) մշտական հարմարեցումը համաշխարհային դասակարգային հակամարտության փոփոխվող պայմաններին, լարվածության թուլացմանը և այլնին։

Եթե խոսելու լինենք ազատագրված երկրների զարգացման ներքին գործոնների մասին, նեոգաղութատիրության գաղափարախոսությունն ամենից առաջ հաշվի է առնում նախ իր իսկ՝ գաղափարախոսության դերի շեշտակի աճը, «գաղափարախոսության ընտրության» կարևորությունը ազատագրված երկրների հասարակական պրոցեսների զարգացման բնույթի և ուղղության մեջ. երկրորդ, մարքս-լենինյան գաղափարների տարածումը ժողովրդական լայն խավերի շրջանում. երրորդ, մշտապես նկատի է առնվում, որ պայքարի ազգային-ազատագրական բնույթը, ազգային համախմբվածության ամրապնդման պրոցեսները, ինքնուրույն ազգային տնտեսության ստեղծման, համակողմանի առաջընթացի և այլ խնդիրները օբյեկտիվորեն պայմանավորել են նացիոնալիզմի շեշտակի վերելքը, դրա վերածվելը, ըստ էության, ազատագրված երկրների գաղափարախոսության առաջատար կոմպոնենտի. չորրորդ, հաշվի է առնվում, որ բոլոր երկրների գաղափարախոսությունների համար ընդհանուր են դարձել այնպիսի արմատական հասկացություններ, ինչպիսիք են զարգացումը, հետամնացության հաղթահարումը, անկախությունը, որոնցով ներթափանցված է հիմնական քաղաքական լոզունգների, ծրագրերի, գաղափարախոսական ըմբռնումների բովանդակությունը։

Նեոգաղութատիրական տեսությունները կոչված են հակակոմունիզմի դիրքերից պատասխան տալու ազատագրված երկրների հասարակական զարգացման ամենասուր պրոբլեմներին, ստեղծելու դրանց մարքս-լենինյան բացատրության ու լուծման երկընտրանքը։ Քաղաքական և գաղափարական նոր իրողություններն արտացոլվել են այդ հակակոմունիստական տեսություններում։ Դրանցում կեղծիքն ու զրպարտությունը կողք-կողքի են այնպիսի «դրական» ջատագովական կոնցեպցիաների հետ, որոնցում խնամքով հաշվի են առնված, օրինակ, սոցիալիստական կողմնորոշման երկրների դժվարությունները, հակասությունները, վրիպումներն ու սխալները, բացարձականացված, ընդհանրացված են բացասական երևույթներն ու փաստերը։ Բոլոր այդ հատկանիշները, նեոգաղութատիրական տեսությունների ջատագովական ֆունկցիաները առանձնապես ցայտուն կերպով են դրսևորվում նացիոնալիզմի և «արդիականացման» տեսություններում, որոնք բացառիկ կարևոր տեղ ունեն բուրժուական գաղափարախոսության զինանոցում ընդհանրապես։

Համաշխարհային ասպարեզում արդի դասակարգային հակամարտության պայմաններում նեոգաղութատիրության գաղափարախոսները գիտակցում են, որ իրենց գլխավոր նպատակի՝ ազատագրված երկրների կապիտալիստական զարգացման ապահովումը, մեծապես պայմանավորված է նրանով, թե կհա-



ջողվի՞, արդյոք, համաշխարհային հեղափոխական պայքարի ճակատը պառակտել, ազգային-ազատագրական շարժումը մեկուսացնել ՍՍՀՄ-ից, սոցիալիստական երկրներից, միջազգային բանվորական և կոմունիստական շարժումից։ Այդ նպատակին հասնելու համար նրանք ամեն կերպ փորձում են պառակտել ազգային-ազատագրական պայքարի ճակատն ինչպես ամբողջությամբ, այնպես էլ յուրաքանչյուր առանձին երկրում, ազատագրված երկրների նացիոնալիզմը հակադրել ինտերնացիոնալիզմին, կոմունիստական քաղաքականությանն ու գաղափարախոսությանը, տարածել երիտասարդ պետությունների զարգացման «առանձնահատուկ», «ազգային» ուղու վերաբերյալ ռեֆորմիստական կոնցեպցիաները և այլն։

Ուստի օրինաչափ է, որ նեոգաղութատիրության գաղափարախոսության մեջ էական տեղ ունի նացիոնալիզմի տեսությունը։ Մեր դարը նացիոնալիզմի դար է,— 60-ական թվականներից սկսած հայտարարել և շարունակում են հայտարարել նեոգաղութատիրության գաղափարախոսներ Գ. Բարկլեյը, Գ. Կոնը, Ռ. Փայպսը, Ռ. Հիլսմանը, Ա. Սմիթը, Ռ. Էմերսոնը և ուրիշներ։ Անգլիական գաղափարախոս Ա. Սմիթի կարծիքով, նացիոնալիզմը կալվինիզմն է, «երրորդ աշխարհի» նոր քաղաքական կրոնը։ Ընդհանուր առմամբ, ըստ Սմիթի, նացիոնալիզմը XX դարի գլխավոր հասարակական և գաղափարախոսական հոսանքն է։ Ամերիկյան բուրժուական տեսաբան Մարկ Հակոբյանն այն համոզմանն է, որ նացիոնալիզմն ամենատարածված գաղափարախոսությունն է աշխարհում։ Բնորոշ է, սակայն, որ նեոգաղութատիրության գաղափարախոսները ոչ թե նացիոնալիզմն են ընդունում որպես ամբողջական հասարակական երևույթ՝ իրեն ներհատուկ հակասություններով, հոսանքներով ու միտումներով հանդերձ, այլ միմիայն «հետադիմական նացիոնալիզմը», փորձելով հակադրել այն ո՛չ միայն մյուս պրոգրեսիվ և հեղափոխական գաղափարական հոսանքներին ու պրոցեսներին, այլև սեփական դեմոկրատական ավանդույթներին ու հոսանքներին։ Օրինակ, ամերիկյան պրոֆեսոր Ռ. Ստեռլինգը, գերագնահատելով նացիոնալիզմի դերն ընդհանրապես, այնուհետև կատաղորեն հարձակվում է դրա այն տարբերակների վրա, որոնք նա անվանում է «նացիոնալիզմի այլանդակություններ». դրանք են, ըստ նրա, էգոիզմը, բռնությունը, անարդարությունը քաղաքական կյանքում։ Նացիոնալիզմի հիմնական պրոբլեմը և դրա այլանդակությունների գլխավոր աղբյուրը,— եզրակացնում է հեղինակը,— գաղափարախոսական կողմն է։

Հետադիմական նացիոնալիզմը, լինելով կապիտալիստական զարգացման, տեղական բուրժուազիայի հետադիմական մասի ձգտումների գաղափարախոսական արտահայտությունը, ձևավորող դրոշմ է դնում նրա քաղաքական, սոցիալ-տնտեսական ծրագրի վրա։ Ազատագրված երկրներում դասակարգային շերտավորման և պայքարի սրման պայմաններում նացիոնալիզմի դեմոկրատական, հակաիմպերիալիստական ասպեկտների խորացումը, առանձնապես սոցիալիստական կողմնորոշման երկրներում, դրսևորում է էվոլյուցիայի կայուն միտում դեպի գիտական սոցիալիզմը։ Ուստի և Լ. Սնայդերը գտնում է, որ գլխավորն է «թույլ չտալ նացիոնալիզմի և սոցիալիզմի միացումը»։ Այդ տեսակետից ամերիկյան սոցիոլոգ Ռ. Հիլսմանը մեծ հույսեր է կապում հետադիմական նացիոնալիզմի հետ, որը, ըստ նրա, պատնեշ է ընդդեմ կոմունիզմի կամ ամեն մի այլ ներքին՝ նացիոնալիզմի հետ չկապված, գաղափարախոսության տարածման։

Նացիոնալիզմի նեոգաղութատիրական տեսությունը խնդիրների լայն շրջանակ է ընդգրկում կապիտալիստական հասարակարգի սոցիալական էքսպանսիայի գաղափարախոսական ապահովման գործում։ Այն քարոզում է ազգային էգոիզմ և միակցում նեոռասիզմի հետ, մերժում է ինտերնացիոնալիզմը, հետապնդում է միմյանցից բաժանել Ասիայի, Աֆրիկայի ժողովուրդներին և դրանով իսկ թուլացնել ազգային-ազատագրական շարժումը։ Նրան է վերապահվում նաև համաշխարհային հեղափոխական պրոցեսը քայքայելու դերը՝ ազատագրված երկրները համաշխարհային սոցիալիզմից կտրելու ճանապարհով։ Պնդելով, որ նացիոնալիզմը XX դարի գաղափարախոսությունն ու գլխավոր հասարակական շարժումն է, հակակոմունիզմի գաղափարախոսները փոր-

ձում են ապացուցել, որ, ըստ իրերի տրամաբանության, տեղ չկա ինտերնացիոնալիզմի համար, այն հնացել է։ Ըստ նրանց հայտարարությունների, սոցիալիստական երկրները, իբր թե, չեն կարող ինտերնացիոնալիստական քաղաքականություն իրականացնել արդեն այն պատճառով, որ նացիոնալիզմը դրանցում վերածվել է տիրապետող գաղափարախոսության։

Կողմնորոշվելով դեպի հետադիմական նացիոնալիզմը, կոմպրոմիսի մեջ մտնելով ազգային բուրժուազիայի հետ, նեոգաղութատիրությունը հանդես է գալիս հեղափոխական պրոցեսի դեմ։ Բնորոշ է, օրինակ, որ 50-ական թվականներին մերժվող «ազգերի ինքնորոշման իրավունքը», իբրև միջազգային կոմունիզմի գործիք, այսօր ո՛չ միայն ճանաչվում, այլև հռչակվում է ամերիկյան հեղափոխության և ամբողջությամբ վերցրած արևմտյան դեմոկրատիայի սկզբունքը։ Հետադիմական նացիոնալիզմին արված այդ զիջումը տվյալ դեպքում ևս ունի իր սահմաններն ու պայմանները։ «Ինքնորոշումն ընդունելի է այն ժամանակ,— պարզաբանում էր ԱՄՆ-ի նախկին պետական քարտուղար, նեոգաղութատիրության ջատագով Դին Ռասկը,— երբ այն ապահովում է շարժումը դեպի այնպիսի քաղաքական սիստեմ, որը մոտենում է ամերիկյան մոդելին»։ Կալիֆորնիայի համալսարանի պրոֆեսոր Մելվին Գուրտովի խոստովանությամբ, ԱՄՆ-ն է որոշում, թե ազատագրված երկրների հասարակության քաղաքական զարգացումը իսկապե՞ս ընթանում է իրենց սեփական պատմությանն ու մշակույթին համապատասխանող ուղիով։

Նեոգաղութատիրության ո՛չ միայն քաղաքական, այլև սոցիալական, տնտեսական կոնցեպցիաները նկատի ունեն հետադիմական նացիոնալիզմը։ Նացիոնալիստական ըմբռնումները հանդես են գալիս որպես զարգացման նեոգաղութատիրական հիմնական տեսությունների նախահիմք, կատարելով յուրատեսակ մեթոդոլոգիական դեր։ Այդ, ամենից առաջ, վերաբերում է նեոգաղութատիրական գրականության մեջ լայնորեն տարածված «արդիականացման» տեսությանը։ Ա. Սմիթը, օրինակ, նացիոնալիզմի մասին իր գրքում բազմիցս համառորեն պնդում է, որ «արդիականացման մեծ հեղափոխության նախահիմքն ամբողջ աշխարհում նացիոնալիզմի բուռն վերելքն է»։ Վաշինգտոնի համալսարանի քաղաքական գիտությունների պրոֆեսոր Ջոն Կաուցկին գտնում է, որ նացիոնալիզմը, իբր թե, հանդիսանում է հետամնաց երկրների ինդուստրացման, դրանց արդիականացման արդյունք։ Հետևելով այդ տրամաբանությանը, նա Հոկտեմբերյան հեղափոխությանը վերագրում է նացիոնալիստական հիմք։ Ինչ վերաբերում է ազատագրված երկրներին, ապա այստեղ, գրում է Ջ.Կաուցկին, «նացիոնալիզմն ու արդիականացումը դառնում են անբաժանելի»։

«Արդիականացման» տեսության հիմնական բովանդակությունը, համառոտակի ասած, հետևյալն է. ըստ այդ ըմբռնման, համաշխարհային պատմությանը հայտնի է երկու հասարակություն՝ «ավանդական» և «արդիական»։ «Ավանդապահությունը» հատուկ է բոլոր նախկին գաղութներին, կիսագաղութներին ու կախյալ երկրներին։ «Արդիական» են արդյունաբերապես զարգացած երկրները։ «Արդիականացման» տեսությունը ազատագրված երկրներին հանձնարարում է «պահպանողական ավանդապահությունից» դեպի «հարաշարժ արդիականությունը» (որպիսին, ըստ այդ նեոգաղութատիրական տեսության, բուրժուական հասարակությունն է) անցնելու «գիտականորեն հիմնավորված» ուղու ծրագիրը, ձևերն ու մեթոդները։

Անտեսելով պատմականության սկզբունքը և կոնկրետ-պատմական մոտեցումը, «արդիականացման» տեսության հեղինակները անցյալի ու ժամանակակից բոլոր հեղափոխությունները հայտարարում են նացիոնալիստական և արդիականացման հեղափոխություններ։ Աշխարհի բոլոր երկրները կամ անցել են արդիականացման փուլը կամ թևակոխել են այն։ Այդ տեսության հեղինակներից մեկը՝ Ս. Էնլոուն, օրինակ, գրում է. «Աշխարհի ժողովուրդներին կարելի է կոպիտ կերպով բաժանել արդիականացումը թևակոխողների և նրանց, որոնց համար արդիականացումն անցած փուլ է»։ Դ. Բելի, Ա. Սմիթի, Ս. Բլեքի և մյուսների կարծիքով, ազատագրված երկրներից բացի, արդիականացմամբ համակված երկրների թվին են պատկանում Չինաստանը, Կուբան, Հարավսլավիան, Իսրայելը, Ճապոնիան, ՍՍՀՄ-ը և սոցիալիզմի մի շարք երկրներ։ Հորինելով այդ տեսությունը նացիոնալիզմի և մի ամբողջ շարք հակակոմունիստական ըմբռնումների հիման վրա, բուրժուական գաղափարախոսներն ամենևին էլ չեն թաքցնում իրենց գլխավոր նպատակը՝ ապացուցել, որ սկզբունքային տարբերություն, հակադրություն չկա սոցիալիզմի և կապիտալիզմի միջև, աշխարհի երկրները պետք է բաժանել ոչ թե ըստ դասակարգային հատկանիշի, այլ ըստ «արդիականացվածության», զարգացածության ու, հետևաբար, ընդհանուր հիմք, «ազգակցություն» գտնել սոցիալիստական և կապիտալիստական երկրների հասարակական կյանքի որոշ, չափազանց էական կողմերի համար։

«Արդիականացման» տեսությունը 70-ական թվականներին հատկապես փորձում է հաստատվել իբրև համընդհանուր, համապարփակ տեսություն՝ իր ուղղություններով, «դպրոցներով»։ Մարքսիզմը, զարգացման սոցիալիստական ըմբռնումներն այժմ ներկայացվում են որպես «արդիականացման» ընդհանուր տեսության օրգանական մաս, որոնք ծագել են նրա մեթոդոլոգիական ու տեսական հիմքի վրա։ ԱՄՆ-ի Պենսիլվանիայի համալսարանի սովետական և սլավոնական կենտրոնի դիրեկտոր, պրոֆեսոր Վերնոն Ասպատուրյանը, 1973 թվականի մարտ ամսին «Մարքսիզմը և արդիականացման էությունը» թեմայով զեկուցմամբ հանդես եկավ Կոլումբիական համալսարանում «արդիականացման» պրոբլեմներին նվիրված կոնֆերանսում։ Ըստ հեղինակի, արդիականացումը և արևմտականացումը լայն իմաստով համընկնում են «պրոգրես» արևմտյան հիմնական ըմբռնման հետ։ Զարգացման մարքսիստական և արևմտյան ըմբռնումները,— այնուհետև գրում է հեղինակը,— ունեն ո՛չ միայն ընդհանուր հասկացությունների, արժույթների լայն շրջանակ, այլև արտահայտում են ընդհանուր օրինաչափություններ, զարգացման փուլեր։ Հեղինակը գտնում է, որ «նախնադարյան կոմունիզմի», «ստրկատիրության», «ֆեոդալիզմի», «կապիտալիզմի» և «կոմունիզմի» մարքսիստական բաժանմանը ըստ բովանդակության համապատասխանում է «պարզունակ ավանդապահության», «ավանդական քաղաքակրթության», «անցումային հասարակության», «արդյունաբերական հեղափոխության» և «բարձր սպառման հասարակության» բաժանումը։ Պարզվում է, որ, ըստ Վ. Ասպատուրյանի, սոցիալիզմը լոկ զարգացման մի աստիճան է «արդյունաբերական հեղափոխությունից», այսինքն՝ «կապիտալիզմից» «բարձր սպառման հասարակություն» անցնելիս՝ արդիականացման միջոցով. ուղիներն ու իդեալները նույնն են, տարբեր են միայն մեթոդները։

«Արդիականացման» տեսության հեղինակները շեշտում են, որ այն բացահայտում է մարդկության պրոգրեսի ընդհանուր իդեալները, նպատակները, զարգացման ընդհանուր ուղիները, այլև ըստ ծագման ունեն միևնույն արևմտյան աղբյուրն ու ավանդույթները, սերում են Կոնտի, Միլլի և Մարքսի գաղափարներից, այսինքն՝ «պոզիտիվիզմից, բրիտանական լիբերալիզմից ու մարքսիզմից»։ Ինչպես երևում է, բուրժուական գաղափարախոսները, նախապես գիտենալով իրենց ըմբռնման տեսական ու մեթոդոլոգիական հիմքի թուլությունը, ստիպված են այն ամրապնդել, վկայակոչելով Մարքսին, օգտագործել Մարքսի հեղինակությունը մարքսիզմի դեմ մղվող պայքարում։ Բուրժուական գաղափարախոսության ճգնաժամի խորացումը ցայտուն կերպով արտահայտվում է ո՛չ միայն հակակոմունիզմի գերիշխանությամբ, այլև, որ հակակոմունիզմն ինքը՝ ստիպված է կեղծել Կ. Մարքսի և Վ. Ի. Լենինի ուսմունքը, նրանց տեսության կոնկրետ դրույթները, ապա դրանք օգտագործել իր սեփական գաղափարական էքսպանսիայում։

Ընդհանրապես՝ «արդիականացման» տեսությունը հակակոմունիզմի ջատագովական տեսություններից է, սերտորեն միահյուսվում է «կոնվերգենցիայի», «ինդուստրիալ», «ետինդուստրիալ» և այլ հասարակությունների տեսությունների հետ։ «Արդիականացման» պրոբլեմների շուրջ, բացի «նեղ» մասնագետներ Ս. Բլեկից, Վ. Ասպատուրյանից, Ս. Ֆիներից ու մյուսներից, հանդես են գալիս նաև հակակոմունիստական մյուս տեսությունների հեղինակներ՝ Ռ. Արոնը, Դ. Բելը, Զ. Բժեզինսկին, Ու. Ռոստոուն և ուրիշներ։ Միաժա-

մանակ պետք է նշել, որ ըստ իր ծագման, գլխավոր նպատակների, այն նեոգաղութատիրական տեսություն է, հատկապես ստեղծված՝ ազատագրված երկրներում կապիտալիզմը պրոպագանդելու համար։ Այդ երկրների պրոբլեմները նեոգաղութատիրական մեթոդներով լուծելու պահանջն է կյանքի կոչել «արդիականացման» տեսությունը։ Ազատագրված երկրների ժողովուրդներին նեոգաղութատիրության գաղափարախոսները ներշնչում են, որ պետք չէ պայքարել հասարակական կողմնորոշման ուղիների ընտրության համար, քանի որ իրականում այդպիսի ընտրություն չկա, կա միայն մի գլխավոր ուղի՝ արդիականացման ուղին, որով անցել և ընթանում են բոլոր երկրները՝ ավանդական հասարակությունից դեպի ինդուստրիալ, ետինդուստրիալ և այլ հասարակություն, այսինքն՝ դեպի կապիտալիզմը։

Նշանակում է՝ նացիոնալիզմի, «արդիականացման» տեսությունները կոչված են խարխլելու կոմունիզմի տեսությունն ու պրակտիկան ընդհանրապես, սոցիալիստական կողմնորոշումը՝ հատկապես, գաղափարապես զինաթափելու ազգային-ազատագրական հեղափոխությունները։ Հարկ է շեշտել, որ դրանք, որպես համաշխարհային ասպարեզում և ազատագրված երկրների ներսում դասակարգային պայքարի սրման արդյունք, նեոգաղութատիրության գաղափարախոսները հղացել են իբրև համաշխարհային հեղափոխական պրոցեսի և դրանցում ազգային-ազատագրական պայքարի դերի մասին մարքս-լենինյան ուսմունքի այլընտրանքը։ Իմպերիալիզմի գաղափարախոսներն առանձնապես ձգտում են խույս տալ ազգային-ազատագրական պայքարի էության ու խնդիրների դասակարգային մոտեցումից և գնահատումից։

Այդ պատճառով էլ արդի դարաշրջանի համընդհանուր սոցիալ-դասակարգային հակասությունները, երկու հասարակական սիստեմների հակամարտությունը, որակական տարբերությունները նենգափոխվում են դրանց առաջացման ծագումնաբանական «ընդհանրությունը» քարոզող ու այլ տեսություններով։ Դասակարգային վերլուծության փոխարեն գիտատեխնիկական հեղափոխության և համաշխարհային պրոցեսի արդիականացման մասին խոսակցություններ վարելով, բուրժուական գաղափարախոսները ճգնում են համոզել, որ դասակարգային պայքարն ու հեղափոխությունը, իբր, ավելորդ ու կործանարար են և հակասում են համաշխարհային օրինաչափություններին։ Իմպերիալիստական բանակի մեր արդի հակառակորդները ջանք չեն խնայում հերքելու հասարակական ֆորմացիաների օրինաչափությունների մարքս-լենինյան ուսմունքը, հեղափոխության, դասակարգերի և դասակարգային պայքարի տեսությունը։ Ապարդյուն ջանքե՜ր։

Իրականում նեոգաղութատիրական տեսությունները միայն իրենց ամլությունն են ցուցահանում։ Դրանց կեղծությունն ու հետադիմականությունը մերկացվում են ազգային-ազատագրական պայքարի զարգացման փորձով իսկ։ Միայն մարքս-լենինյան տեսությունն է իրոք մատնանշում ժողովուրդների ազատագրման, սոցիալական և ազգային առաջընթացի ռեալ ուղիները։ «Բացառիկ կարևոր է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— որ ազատագրված շատ պետություններ մերժում են զարգացման կապիտալիստական ուղին և իրենց նպատակ են դնում կառուցել շահագործումից զերծ հասարակություն, կողմնորոշվում են դեպի սոցիալիզմը» (Լենինյան կուրսով, հ. 6, էջ 750)։

Ազատագրված երկրների պրոգրեսիվ զարգացմանը նպաստում են ՍՍՀՄ-ի, սոցիալիզմի երկրների ինտերնացիոնալ օգնությունն ու աջակցությունը, մարքս-լենինյան գաղափարախոսության, տեսության, պրակտիկայի և սոցիալիզմի պատմական փորձի հեղափոխականացնող ներգործությունը այդ երկրների ժողովրդական զանգվածների վրա։

---

# ԱՌԱՍՊԵԼԸ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԲՈՒՐԺՈՒԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅԱՆ ՄԵՋ

**Հ. Ա. ՄԿՐՏՉՅԱՆ**
Փիլիսոփայական գիտությունների թեկնածու

ԲՆՈՒԹԱԳՐԵԼՈՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ գաղափարական պայքարի էությունը՝ ընկ. Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXV համագումարում նշեց. «Համաշխարհային քաղաքականության մեջ կատարված դրական տեղաշարժերը, լարվածության թուլացումը բարենպաստ հնարավորություն են ստեղծում սոցիալիզմի գաղափարների լայն տարածման համար։ Բայց մյուս կողմից, երկու սիստեմների գաղափարական հակամարտությունը դառնում է ավելի ակտիվ, իմպերիալիստական պրոպագանդան՝ ավելի խորամանկ» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111)։

Այժմ, սոցիալիզմի դեմ մղված պայքարում բուրժուական ռեակցիոն գաղափարախոսությունը փոխում է պայքարի տակտիկան, պրոպագանդիստական ներգործման փաստարկներն ու միջոցները։ Մեր գաղափարական ընդդիմախոսները հաճախ են դիմում միֆոլոգիական տեսությունների ժամանակակից ըմբռնման հարցերին։

Առասպելը ժողովրդական բանահյուսության հնագույն տեսակ է։ Տակավին Կ. Մարքսն է նկատել, որ դիցաբանությունը ժողովրդի երևակայության մեջ անգիտակցական-գեղարվեստական եղանակով արդեն վերամշակված բնությունն ու հասարակական ձևերն են (տե՛ս Կ. Մարքս և Ֆ. Էնգելս արվեստի մասին, Հայպետհրատ, 1963, հ. 1, էջ 161)։

Իրենց սոցիալական նշանակությամբ առասպելները բաժանվում են երկու խմբի՝ կրոնական և ժողովրդական։ Կրոնական առասպելներն առնչվում են բնության և հասարակական երևույթների գերբնականացման, նրա սոցիալ-իմացաբանական արմատների ոչ ճիշտ բացահայտման հետ։ Ժողովրդական առասպելները պատկերում են մարդկանց, ժողովուրդների կյանքն ու կենցաղը։ Դրանց հերոսներն օժտված են խելքի ու մտքի, երևակայության ուժով, նրանց հատուկ են քաջությունն ու բարությունը, խոր հումանիզմը։ Եվ պատահական չէ, որ միայն իսկական ժողովրդական առասպելներն են դարձել մշակույթի, արվեստի և գրականության շատ ու շատ գլուխգործոցների հենքը։ «...Հունական դիցաբանությունը,— գրել է Մարքսը,— հունական արվեստի ո՛չ միայն զինանոցն էր, այլև նրա հողը» (Նույն տեղը)։

Սակայն դասական առասպելները որքան էլ առնչվում էին իրականության հետ, այնուամենայնիվ դրանք իբրև մարդկային մտածողության յուրահատուկ ժամանակաշրջանի արդյունք, զուրկ էին հեռանկարից, քանի որ փոփոխվող հանգամանքներն ստեղծում են նոր պայմաններ ու ձևեր և բանական իմացության զարգացման զուգրնթաց առասպելական մտածողությունը տեղի է տալիս։ «Մի՞թե բնության և հասարակական հարաբերությունների այն ըմբռնումը,— նկատել է Մարքսը,— որը դրված է հունական երևակայության, երբեմն և հունական արվեստի հիմքում, հնարավոր է սելֆակտորների, երկաթուղիների, լոկոմոտիվների և էլեկտրական հեռագրերի առկայության ժամանակ»

(նույն տեղը)։ Ըստ Մարքսի, առասպելը մարդկային մտածողության հնագույն ձև է։ Ելնելով պատմության մատերիալիստական ըմբռնումից և բացահայտելով հասարակության զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, Մարքսը ցույց տվեց, որ առասպելը, այդ թվում՝ բնության ու հասարակության երևույթների առասպելական մեկնաբանությունն ու իմացությունը, ընդհանրապես դատապարտված է մահվան։ Սակայն այսօր առասպելի մասին խոսում են բոլորովին այլ դիտակետից։ Ճշմարիտ է ասված, որ եթե «հնում առասպելները ծառայում էին որպես անհայտ երևույթների բացատրման փորձ, ներկայումս դրանց օգնությամբ հայտնին աղավաղվում է մինչև անճանաչելիություն» (տե՛ս Ն. Կեշելավա, Երկու Մարքսի առասպելը, «Հայաստան» հրատ., 1964 թ., էջ 7)։

Առասպելը ժամանակակից բուրժուական մտածողների մոտ չափազանց մոդայիկ է։ Այդ մասին գրում են փիլիսոփաներն ու սոցիոլոգները, արվեստագետներն ու գեղագետները, հոգեբաններն ու բարոյագետները։ Վկայակոչելով այն փաստը, որ անցյալի որոշ առասպելներ դեռևս գոյատևում են մշակույթի պատմության մեջ, նրանք փորձում են ստեղծել նոր առասպելներ, որոնք ունեն կրոնական կամ սոցիալ-քաղաքական բովանդակություն։ Այս միտումը դրսևորվեց նաև բոլորովին վերջերս տեղի ունեցած համաշխարհային փիլիսոփայական XVI կոնգրեսում, որտեղ շատ մտածողներ կոսմոլոգիական պրոբլեմների շուրջը ծավալված բանավեճի ընթացքում ճգնում էին ապացուցել, թե իբր, տիեզերքի հարցում դեռևս չկա որոշակի տարբերակում գիտական ու միֆոլոգիական ըմբռնումների միջև, որ փիլիսոփայությունը կոչված է կամուրջ գցել գիտության և միֆոլոգիայի, ինչպես նաև կրոնի միջև։

Իհարկե, տարբեր են նրանց տեսակետներն ու հարցադրումները նոր առասպելաստեղծման բնույթի և խնդիրների վերաբերյալ, սակայն նույնն է միտումը՝ ժխտել առասպելական մտածողության պատմականորեն անցողիկ լինելը և հավերժացնել դրա գոյությունը ժամանակի ու տարածության մեջ, միֆը համարել բանական իմացության մշտական ուղեկիցը։

Ֆրանսիական էկզիստենցիալիստ Գուսդորֆը, նմանեցնելով միֆը փիլիսոփայության հետ, առասպելների սիմվոլները բնորոշում է իբրև մարդկային գոյության ամենախոր գաղտնիքների բացահայտման միջոց։ Ըստ նրա՝ «առասպելաբանությունը մեր օրերում մի յուրատեսակ ռեակցիա է պոզիտիվիզմին ու նատուրալիզմին»։ Գուսդորֆի կարծիքով, «Գիտությունն իր բանականությամբ ի վիճակի չէ ճանաչելու աշխարհն իր էությամբ։ Այդ բացը կարող է լրացնել միֆը և միֆոլոգիական իմացությունը՝ ինտուիցիայի հիման վրա» (Gousdorphe Georges. Le mythe et métaphysique. Paris, 1953, page 112). Կլոդ Լևի Ստրոսը միֆը բնութագրում է իբրև աշխարհի փիլիսոփայական մեկնաբանություն։ Նրա կարծիքով, «միֆոլոգիական մտածողությունը իմացության ընդհանուր համակարգ է, որը փոխարինելու է գիտությանը» (Claude Levistrauss. La pensée Louvage. Paris, 1963, page 21-22):

Առասպելների և առասպելական իմացության առկայության վերաբերյալ իր դիտողություններում է՛լ ավելի հեռուն է գնում ռևիզիոնիստ Գարոդին։ Ճիշտ է, նա մեծ մասամբ խոսում է առասպելների դերի շուրջ արվեստում, սակայն նրա ընդհանրացումները նոր առասպելաստեղծման մասին ավելի քան հակագիտական են և ռեակցիոն։ Նա արվեստը դիտում է իբրև առասպել, իսկ գեղարվեստական իմացության հաջողությունը պայմանավորում է առասպելական իմացությամբ կամ առասպելներով։ Առասպելը, ըստ Գարոդու, ոչ թե մարդկային իմացության պատմականորեն անցողիկ ձև է, բնության և հասարակության երևույթների չափազանցված մեկնաբանում, այլ իբրև ժամանակակից իմացության մշտական ուղեկից։

Ինչպես տեսնում ենք, բուրժուական գաղափարախոսները, անդրադառնալով առասպելի պրոբլեմին, միակողմանիորեն չափազանցնում են առասպելական իմացության դերը և փորձում նսեմացնել մարդկային բանական մտածողության ֆունկցիան։ Երկու դեպքում էլ նրանց պայքարն օբյեկտիվորեն ուղղված է արտացոլման դիալեկտիկամատերիալիստական տեսության դեմ։ Մի բան ակներև է. բուրժուական գաղափարախոսները կատարելագործել են իրենց



հարձակումները մատերիալիստական իմացաբանության դեմ։ Այս հանգամանքը պահանջում է հետևողականորեն բացահայտել այդ տեսությունների ռեակցիոն էությունը, սոցիալ-իմացաբանական արմատները։

Ժամանակակից առասպելաստեղծման փորձերը նոր չեն։ Դրանք սկզբնավորվել են դեռևս XIX դարից, երբ սկսեցին ձևավորվել, այսպես կոչված, սոցիալական բնույթի առասպելներ, որոնք ի տարբերություն նախնադարյան կոսմոլոգիական առասպելների, ընդգրկում են սոցիալ-քաղաքական բնագավառները։

Այսպես, Նիցշեն առաջադրեց «գերմարդու» առասպելը, որտեղ նա փորձում էր տեսնել «կյանքի արժեքը»։ Ըստ Նիցշեի, կան մարդիկ, որոնք բնականորեն անհավասար են և տարբերվում են իշխանության հանդեպ ունեցած իրենց կամքով ու ձգտումով։ Այդ բնական տարբերությունից էլ ծնվել է «գերմարդը», որն իր հերթին հանդես է գալիս իբրև տիրապետողների բարոյական սուբյեկտ։ «Գերմարդը» Նիցշեի մոտ բարձրագույն բիոլոգիական տիպ է, որը սովորական մարդու համեմատ նույնն է, ինչ մարդը՝ կապիկի։ Փաստորեն Նիցշեն մարդկանց միջև եղած սոցիալական անհավասարությունը բացատրում էր ոչ թե մասնավոր սեփականության առկայությամբ, այլ նրանց, այսպես կոչված, «բնական վիճակով»։ Հայտնի է, որ «գերմարդու» առասպելը ժառանգեց գերմանական ֆաշիզմը, ստեղծելով նոր՝ «XX դարի առասպելը»։ Եթե Նիցշեն փորձում էր հիմնավորել, թե պետք է ձևավորել «գերմարդը», պատրաստել «աշխարհի տերեր», «ֆյուրերներ», ապա գերմանական ֆաշիզմի պարագլուխները թմբկահարում էին պրակտիկ «գերմարդու» իդեալը։

Արդի միֆոլոգիական տեսությունների մյուս ելակետը ֆրանսիական փիլիսոփա Բերգսոնն է։ Վերջինիս Կրոնը և բարոյականության ծագման երկու աղբյուրները գրքում առասպելը բնութագրվեց իբրև բնության պաշտպանական ռեակցիան ընդդեմ մահվան անխուսափելիության մտավոր պատկերացմանը։ Բերգսոնի մոտ առասպելն ու կրոնը համարժեք են։ Եթե կրոնը մարդու մեջ ամրապնդում է հավատը, ապա նոր առասպելաստեղծումը օգնում է մարդուն իրենից վանելու մահվան վախը։ Ըստ Բերգսոնի, ինչպես կրոնը, այնպես էլ առասպելը խթանում է քաղաքակրթության զարգացումը։ Առասպելի միջոցով մարդու մոտ «ո՛չ միայն շարունակում է գոյատևել հավատը, այլև նորից այն արթնանում է»։ Եթե Նիցշեի առասպելը խարսխվում էր սոցիալական հողի վրա, ապա Բերգսոնի առասպելաստեղծման արմատները կրոնական իմացաբանության մեջ են։ Ժամանակակից միֆոլոգիայի տեսության հեղինակները ելակետ ունեն առաջին հերթին Բերգսոնին՝ փորձելով հավերժացնել հատկապես կրոնական առասպելները։

Ժամանակակից միֆոլոգիական տեսության կողմնակիցները ելնում են այն սկզբունքից, որ կրոնի և եկեղեցու քայքայման պրոցեսը կարելի է կանխել միայն նոր ու նորագույն առասպելներին ապավինելու միջոցով, առասպելներ, որոնք կփոխարինեն կրոնական հին հավատալիքներին։ Այսինքն կրոնը փրկելու համար հարկավոր է ստեղծել նոր առասպելներ։ Այդ տեսության ջատագովները փորձում են ժխտել փիլիսոփայության և գիտության միջև եղած կապը և ապացուցել, որ փիլիսոփայությունն ստեղծվել է առասպելից և ավարտվելու է առասպելներով։

Ամերիկյան փիլիսոփա Դոյենի համոզմամբ, «այսօր գրեթե անհնար է աշխարհի ռացիոնալ ճանաչողությունը, քանի որ վերջինս գոյություն ունի միայն ֆանտաստիկ կերպարների, սիմվոլների և առասպելների ձևով»։ Ֆրանսիական փիլիսոփա Գուսդորֆի կարծիքով, առասպելն ու փիլիսոփայությունը նույնն են, քանի որ գրեթե տարբերություն չկա մտածողության առասպելական և փիլիսոփայական ձևերի մեջ։ Ավելին, փիլիսոփայության սկիզբն ու վերջը, ըստ Գուսդորֆի, պետք է փնտրել, այսպես կոչված, «սկզբնական իմաստնության» մեջ, որտեղ բոլոր կրոնները, փիլիսոփայական և գիտական համակարգերը ձուլվում են այն խորհրդավոր սինթեզում, որի հիմքն առասպելն է (տե՛ս Gousdorphe Georges. Mythe et métaphysique. Paris. 1953. page 249):

Նա փիլիսոփայական իմացության ծագման արմատները փնտրում է կրոնի և կրոնական բնույթի առասպելներում։ Ըստ Գուսդորֆի, ինչպես որ հավերժ է կրոնական իմացությունը, այնպես էլ հավերժ է առասպելական մտածողու-

թյունը։ Ավելին, առասպելական իմացությունը պլաստիկ ուժ է մարդու գոյության հաստատման համար։ «Ոչ թե մենք ենք հաստատում առասպելի գոյությունը, այլ նա է մեզ հաստատում» (նույն տեղը)։ Այսինքն «առասպելը ձևավորում է մարդուն, լրացնում նրան և ցուցադրում նրա յուրահատկությունը» (նույն տեղը)։

Կրոնական առասպելների դերն է գերագնահատում նաև Ալֆրեդ Սովին. Մեր ժամանակի միֆոլոգիան աշխատության մեջ նա մանրակրկիտ վերլուծելով առաջին և երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին ձևավորված սոցիալ-քաղաքական բնույթի առասպելները, այն միտքն է պաշտպանում, որ կրոնական բնույթի առասպելները գործում են բոլոր դարաշրջաններում և կհարատևեն նաև ապագայում։ Ըստ նրա, կրոնական առասպելները նման չեն բնության երևույթների բացատրության հետ կապված առասպելներին, որոնք ավելի շուտ են անհետանում, քան սոցիալ-քաղաքական բնույթի առասպելները։

Կրոնական առասպելների դերը գերագնահատում է նաև կրոնի պատմաբան Միրսա Էլիադը, որի մի շարք գրքերը նույնպես նվիրված են առասպելական իմացության պրոբլեմներին։ Նա հատկապես շոշափում է կրոնական և ժողովրդական առասպելների հարաբերակցության հարցը։ Ի վերջո, առասպելը նա որակում է իբրև «կրոնական հավատի օբյեկտ», որը ոչ այլ ինչ է, եթե ոչ «հրաշքների հավաքածու», թե իբր իրականությունը գոյատևում է միայն և միայն գերբնական ուժերի շնորհիվ։

Հավերժացնելով կրոնական առասպելները, բուրժուական տեսաբանները դիմում են ամեն միջոցի՝ կասեցնելու կրոնի և կրոնական հավատալիքների խարխլումը։ Միֆը դիտում են իբրև նոր կրոն, որի դերը, իբր, բացարձակ է հասարակական իմացության բնագավառում։ Չկարողանալով համոզիչ պատասխան տալ արդի աշխարհում կատարվող սոցիալ-քաղաքական տեղաշարժերին, արևմուտքի գաղափարախոսներն ապարդյուն փորձեր են անում՝ «բուժելու» ապագան կորցրած հասարակության արատները։

Ֆրանսիական “Esprit“ ամսագրի էջերում «Առասպելն այսօր» թեմայով բանավեճի ժամանակ առասպելների այժմեականության և նրանց ապագայի վերաբերյալ դատողությունների ընթացքում Կլոդ Ռաբանը հանգում է հետևյալ եզրակացության. «Եթե առասպելը կրկնվում է, եթե զգացվում է նոր առասպելի անհրաժեշտությունը, ապա դրա պատճառն այն է, որ մենք այլևս ապագա չունենք» (Esprit, № 4, 1971, էջ 631)։ «Առասպելն անհրաժեշտ է,— շարունակում է նա,— որովհետև ապագան կորսված է» (նույն տեղը), իսկ ամերիկյան փիլիսոփա Դոլեմի կարծիքով, մեր օրերում ամեն ինչ ենթակա է ժխտման, բացի առասպելից։

Նույն միտքն է պաշտպանում Առասպելը և 20-րդ դարի տրամաբանությունը գրքի հեղինակ Միխայլե Խուխլեզոնը, որի մոտ առասպելը մարդկային ամենօրյա կյանքի ռիթմն է և զարկերակը։ Առասպելի և տրամաբանության դինամիկան,— ըստ նրա,— մեզ տանում է դեպի նոր առասպելների ժամանակաշրջանը, քանի որ XIX և XX դարերի սահմանագլխում արդեն ծայր է առել առասպելական մտածողության նոր ալիք (Роберт Вейман. История литературы и мифология. М., 1976 г., стр. 260)։

Հիշատակված դատողությունները, արտացոլելով բուրժուական հասարակության մտածողության ընդհանուր գծերը, յուրովի հիմք են ծառայում սոցիալ-քաղաքական բնույթի նոր առասպելների ստեղծման համար։

Արդ, մեր օրերում, երբ ավելի ու ավելի է սրվում գաղափարական պայքարը երկու սիստեմների միջև, բուրժուական գաղափարախոսները փորձում են բոլոր միջոցներով նսեմացնել սոցիալիզմի նվաճումները, հորինում են սոցիալ-քաղաքական բնույթի առասպելներ, որոնք իրենց էությամբ նպատակ ունեն թուլացնելու մարքսիզմի և սոցիալիզմի նվաճումների ազդեցությունը, ծուռ հայելու մեջ ներկայացնելու սովետական պետության ներքին և արտաքին քաղաքականությունը։ Այդպիսիք են «Երկու Մարքսի», «Կարմիր իմպերիալիզմի», «Սովետական սպառնալիքի», «Դասակարգային պայքարի մարման», «Ժողովրդական կապիտալիզմի» և բազմաթիվ այլ առասպելները։



Սրանք ունենալով սոցիալ-քաղաքական բովանդակություն, բուրժուական մտածողների մոտ դարձել են մարքսիստական գաղափարախոսության դեմ պայքարելու միջոց։

Ժորժ Սորելն իր Դատողություններ բռնության մասին գրքում փորձել է տեսականորեն արդարացնել քաղաքական բնույթի առասպելները։ Հեղափոխականների ուժը,— գրում է Սորելը,— ոչ թե նրանց գիտակցության մեջ է, այլ հավատի, կամքի ու ցանկության։ Իսկ այդ հավատը կրոնական, միստիկական և հոգևոր բնույթի է։ Դա առասպելի ուժն է»։ Նրան շարունակում են ժամանակակից առասպելաստեղծման կողմնակիցները, որոնք փորձում են ավելի գործնական տեսք տալ սոցիալական բնույթի առասպելներին։

Ֆրանսիական ստրուկտուրալիզմի ներկայացուցիչներից Ռ. Բարթը սոցիալական բնույթի առասպելները բացատրում է ժամանակի թելադրանքով։ Նրա կարծիքով, «Առասպելների դեմ ամենալավ զենքը միայն նոր առասպելաստեղծումն է։ Արհեստական միֆերի ստեղծումը»։ Առասպելն իրական արժեք է,— գրում է նա,— այն իդեոգրաֆիկ համակարգ է, որը ոչինչ չի թաքցնում և ոչ էլ որևէ բան ցուցադրում, այլ միայն հաստատում է օբյեկտիվ իրականությունը։ Ըստ որում, նրա կարծիքով, կան ուժեղ և թույլ առասպելներ։ Ուժեղ համարվում են սոցիալական բնույթի առասպելները, որոնց քաղաքական բովանդակությունը տրվում է անմիջականորեն։

Ըստ Ռ. Բարթի, իսկական են համարվում քաղաքական առասպելները, որոնք կարող են հանդես գալ իբրև «Իրականության գաղափարական ձևափոխման գործիք» (R. Barthes. Mythologie, էջ 222)։ «Աշխարհը,— շարունակում է նա,— շուռ է եկել դեպի առասպելը» (նույն տեղը, էջ 223)։

Եթե Ռ. Բարթը սոցիալական բնույթի առասպելների հանդես գալը բացատրում է ժամանակի պահանջներով, ապա Միրսա Էլիադն այն վարկածն է առաջադրում, որ ժամանակակից սոցիալական բնույթի առասպելները նախկին կրոնական առասպելների դեֆորմացիաներն են։ Քանի որ մարդը, նրա պատկերացմամբ, դեռևս բնության տերը չէ, նրա առջև կան լուրջ դժվարություններ, հետևապես նա պետք է հավերժացնի «Ադամի և Եվայի», «Կորուսյալ դրախտի», «Իմաստնության ծառի», «Ջրհեղեղի» և բազմաթիվ այլ առասպելները, որոնք եթե ժամանակին ունեցել են կրոնական բովանդակություն, ապա այսօր հրաժարվել են այդ բովանդակությունից և վերածվել սոցիալ-քաղաքական առասպելների։

Եզրակացությունը նույնն է։ Առասպելները ոչ թե հետզհետե զիջում են իրենց տեղը, դանդաղորեն անհետանում, այլ ընդհակառակը՝ կրոնի բնագավառից տեղափոխվում են սոցիալական բնագավառը, ստանում համընդհանուր բնույթ և գոյատևում հավերժորեն։

Նման «տեսությունների» արդյունքն այսօր իրենց էությամբ հակակոմունիստական բնույթի և մարքսիզմի դեմ ուղղված առասպելներն են։ Դրանք են՝ «Երկու Մարքսի», «Դասակարգային պայքարի մարման», «Ժողովրդական կապիտալիզմի», «Ետինդուստրիալ հասարակության» և զանազան առասպելները, որոնք տեսական բնույթի են և ստեղծվել են տարբեր ժամանակներում, տարբեր մտածողների կողմից։ Սակայն եթե վերլուծենք դրանց ընդհանուր բովանդակությունը, ապա չենք կարող չնկատել այդ առասպելների մտացածին լինելը և նպատակաուղղվածությունը։

Այսպես, «Երկու Մարքսի» առասպելը ձևավորվեց 30-ական թվականներին, որտեղ փորձ էր արվում հակասություն գտնել Մարքսի սկզբնական և հասուն շրջանի աշխատությունների միջև, անտեսելով այն հայտնի փաստը, որ հասուն շրջանի աշխատություններն ստեղծվել են Մարքսի հասարակական-քաղաքական գործունեության էվոլյուցիայի ընթացքում և ըստ էության նախորդ ստեղծագործությունների օրինաչափ զարգացումն էր, հիմնված պատմական փորձի վրա։ Սակայն բուրժուական գաղափարախոսները սկսեցին աղմկել, որ իբր թե իրականում կա երկու Մարքս, Կապիտալի հեղինակ և մինչ կապիտալի ժամանակահատվածի Մարքս, որոնք իբրև թե նույնը չեն և փորձ էր արվում պառակտել մարքսիզմը, խեղաթյուրել Մարքսի աշխատությունների օբյեկտիվ բովանդակությունը։

*Հետագայում գիտական կոմունիզմի հակառակորդները հրապարակ հանեցին, այսպես կոչված, «Երկու մարքսիզմի» կամ «գլոբալ մարքսիզմի» առասպելը։ Առաջ եկավ «Մարքսի հետ, մարքսիզմից հեռու» վարկածը, որի հեղինակը շվեյցարացի հակակոմունիստ Կյունցլին էր։ Վերջինս փորձեց ստեղծել մարքսիզմը պլյուրականացնելու (բազմակիացնելու) նոր առասպելը։ Այս «տեսության» էությունն այն է, թե իբր մարքսիզմը երբեք հասարակության կյանքում հեղափոխություն չի կատարել, քանի որ «չկա ոչ մի հեղափոխություն, որն իրականանար Մարքսի սխեմայով», իսկ այն իր հերթին նշանակում է, թե իբր մարքսիզմը հեղափոխական ուսմունք չէ։ Իսկ ինչ վերաբերում է Հոկտեմբերյան հեղափոխությանը, ապա վերջինս, Կյունցլիի կարծիքով, տեղի է ունեցել նույնիսկ «Մարքսի սխեմային հակառակ»։ Եվ մարքսիզմն իր մեջ պարունակում է, այսպես կոչված, «Եվրոպական մարքսիզմ», որն ընդունում է ոչ թե հեղափոխություն, այլ հեղաշրջում և այլն։*

*70-ական թվականներից Սովետական Միության արտաքին խաղաղասիրական քաղաքականությանը հակադրվեց հակակոմունիստների և ռևիզիոնիստների «սովետական սպառնալիքի մասին» մտացածին առասպելը։ «Սովետական սպառնալիքի» առասպելը դարձել է ԱՄՆ-ի քաղաքական կյանքի բաղկացուցիչ մասը։ Այդ առասպելի առիթով տարեցտարի նրանք ավելացնում են ռազմական բյուջեն, ծավալում են սպառազինությունների մինչ այժմ չտեսնըված մրցավազք, ուժեղացնում ռազմաարդյունաբերական կոմպլեքսի ծավալն ու չափերը։ Այդ առասպելը թմբկահարվում է ո՛չ միայն ԱՄՆ-ում, այլև Չինաստանում և լարվածության թուլացման հակառակորդների շրջանում։ Իրականում այդ առասպելը սպառազինության մրցավազքի կողմնակիցների ձեռքին գործիք է համաշխարհային հասարակական կարծիքը շեղելու խաղաղության համար մղվող պայքարից։*

*Իռավունի Հեգելյան փիլիսոփայության քննադատության շուրջը աշխատության առաջաբանում Մարքսը, բացատրելով միֆոլոգիայի ծագման օբյեկտիվ պայմանները, նշում է նաև դրա անհետացման պատճառները։ Այդ մասին նա ուղղակի գրում է. «Պատմությունը գործում է հիմնավորապես և անցնում բազմաթիվ փուլերի միջով, երբ գերեզման է տանում կյանքի հնացած ձևը»։ Միֆը, ըստ էության, կյանքի հնացած ձևն էր, որն այսօր գրեթե ամբողջովին անցել է պատմության գիրկը։ Իհարկե, հետագայում Մարքսն ու Էնգելսը նշում էին, որ կապիտալիզմի օրոք դեռևս կշարունակեն գոյատևել կրոնական բնույթի առասպելները, քանի որ, «հիրավի լինել սուրբ և իրեն զգալ բնության տերը, առնվազն պարադոքս է»։ Սակայն մարքսիզմը առասպելական մտածողությունը դիտում է իբրև հասարակական մտածողության միայն որոշ աստիճանի արդյունք, կյանքի և մտածողության հնացած ձև, որից մարդկությունը պետք է բաժանվի։*

*Այդ մասին Մարքսը գրում է. «Ամեն մի դիցաբանություն բնության ուժերը հաղթահարում, նվաճում և ձևավորում է երևակայության մեջ և երևակայության օգնությամբ, հետևաբար, դիցաբանությունն անհետանում է հենց որ մարդն իսկապես տիրապետում է բնության ուժերին»։*

*Ասվածից հետևում է, որ եթե Մարքսը առասպելը դիտում էր իբրև հասարակական-պատմական միայն որոշ ժամանակաշրջանի արգասիք, ապա ժամանակակից բուրժուական մտածողները փորձում են հավերժացնել առասպելական իմացությունը և այդ հիման վրա էլ ստեղծում են սոցիալ-քաղաքական բնույթի նոր առասպելներ, որոնք իրենց բնույթով ու խնդիրներով հակադրվում են ավանդական առասպելներին, հեռու են դրանց երբեմնի ունեցած բովանդակությունից և դարձել են երկու հակադիր գաղափարախոսությունների պայքարի միջոց։*

*Ավելին, նրանք փորձում են գործնական տեսք տալ նոր առասպելներին, արժեքավորել դրանք և դարձնել յուրահատուկ թիրախ մարքսիզմի գաղափարախոսության դեմ մղվող պայքարում։ Այստեղից էլ՝ ժամանակակից բուրժուական առասպելաբանական տեսությունների փիլիսոփայական հիմքերի քննադատության անհրաժեշտությունն ու հրատապությունը։*



# ՇՐՋԱԿԱ ՄԻՋԱՎԱՅՐԻ ԱՂՏՈՏՈՒՄԸ ԵՎ ՄԱՐԴՈՒ ԺԱՌԱՆԳԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ*

**Ն. Պ. ԴՈՒԲԻՆԻՆ**
ՍՍՀՄ ԳԱ ակադեմիկ, ՍՍՀՄ ԳԱ ընդհանուր գենետիկայի ինստիտուտի դիրեկտոր

**ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ** հաջողությունները ժամանակակից արտադրության անկապտելի հիմքն են։ Միաժամանակ առկա է մի բացասական երևույթ՝ կապված կենսաոլորտի անցանկալի նյութերով աղտոտման հետ։

Միջավայրի աղտոտման պրոբլեմների թըվում առաջնակարգ տեղ է գրավում կենսաոլորտի աղտոտումը այնպիսի տարբեր քիմիական միացություններով, որոնք կարող են ներթափանցել մարդու և այլ էակների բջիջները և վնասել ԴՆԹ-ի մոլեկուլը։

ԴՆԹ-ի մոլեկուլի փոփոխությունները մուտացիոն պրոցես են։ Յուրաքանչյուր մուտացիա ազդում է անհատի զարգացման վրա։ Մուտանտային փոփոխությունների մեծ մասը բացասական է։ Դրական մուտացիաները հազվադեպ են և հանդիսանում են ելանյութ բնական ընտրության ճանապարհով պոպուլյացիաների կատարելագործման համար։ Բոլոր բացասական մուտացիաները էլիմինիրացվում են։

Մուտացիաներ առաջացնող նյութերը կոչվում են մուտագեններ։ Վերջին 50 տարիների ընթացքում մուտագենները լայնորեն կիրառվում են փորձարարական գենետիկայի բնագավառում արհեստական ճանապարհով միկրոօրգանիզմների, կենդանական և բուսական օրգանիզմներում ժառանգական փոփոխություններ հարուցելու նպատակով։ Դրանք այժմ կիրառելի են բույսերի ու միկրոօրգանիզմների սելեկցիայի բնագավառում, իբրև խաչաձևումների և ընտրության համար նոր ելանյութի ստացման նոր մեթոդ։ Ներկայումս փորձարկվող տարբեր մուտագենները հանդիսանում են կենսաոլորտի հիմնական բաղկացուցիչ մասը։ Դրանց մշտական ազդեցության տակ է գտնվում երկրի վրա բնակվող մարդկության և բոլոր կենդանի օրգանիզմների ժառանգականությունը։ Առկա վիճակը բնութագրելու համար ասենք, որ մարդուն շրջապատող միջավայրը ներմուծվել են 4 միլիոն կողմնակի քիմիական միացություններ։ Այդ թիվն ամեն օր ավելանում է վեց հազարով։ Մարդկությունը մշտապես օգտագործում է 63 հազար քիմիական միացություններ։

Տարբեր քիմիական միացություններ լայնորեն կիրառվում են արդյունաբերության, գյուղատնտեսության մեջ և կենցաղում որպես թունաքիմիկատներ, դեղամիջոցներ, արդյունաբերության թափոններ և այլն։ Ապացուցված է, որ նման նյութերը մուտացիաներ են առաջացնում ինչպես սոմատիկ, նույնպես և սաղմնային բջիջներում։

Հիշենք, օրինակ, միջավայրի աղտոտումը, գյուղատնտեսության բնագավառում կիրառվող թունաքիմիկատները։ 126 պեստիցիդների (գյուղատնտեսության մեջ կիրառվող բոլոր պեստիցիդների մոտ 17 տոկոսը) ուսումնասիրությունը ցույց է տվել, որ 90-ը, այսինքն՝ 71,5 տոկոսը, ունեն մուտագեն հատկություն։ Թունաքիմիկատները լայնորեն կիրառվում են հատկապես բամբակամշակման շրջաններում, Կովկասում և Միջին Ասիայում, սակայն նման քիմիացման գենետիկական ազդեցությունը պրակտիկորեն ուսումնասիրված չէ։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ զգալիորեն աճել են բնածին արատները Ուզբեկական ՍՍՀ-ի բնակչության շրջանում, ինչպես և ակնբախ է պեստիցիդների տարածման ու արատների հաճախականության փոխադարձ կապը Հայկական ՍՍՀ-ում։ Միաժամանակ

* *Հոդվածը գրված է խմբագրության պատվերով։*

ակնհայտ է, որ թունաքիմիկատների նման լայն կիրառումը գյուղատնտեսության բնագավառում չի կարող չանդրադառնալ մարդկանց առողջության, գյուղատնտեսական կենդանիների արդյունավետության և վերարտադրողունակության, ինչպես և հողի բնական բերրիության վրա:

Ճառագայթման մուտագեն ազդեցության խնդիրը ևս նույժ այժմեական է: Նախատեսվում է 2000 թվականին էներգիայի 50 տոկոսն ստանալ ատոմային էլեկտրակայաններից: Ռադիոակտիվ իզոտոպներն ավելի ու ավելի լայնորեն են կիրառվում ժողովրդական տնտեսության և բժշկության բնագավառներում: Քիմիական մուտագենների ավելի քան 90 տոկոսը և ճառագայթումը կանցերոգեն են. դրանք ո՛չ միայն առաջացնում են մուտացիաներ, այլև ունակ են խթանելու չարորակ ուռուցքների գոյացմանը:

Անհրաժեշտ է ուսումնասիրել ժողովրդական տնտեսության մեջ օգտագործվող քիմիական միացությունների, իոնիզացնող ճառագայթումների, դեղամիջոցների, վակցինաների, վիրուսների և այլ գործոնների ազդեցությունը մարդու ժառանգականության վրա: Նման գնահատումն իրականացվում է զգայուն տեստ-համակարգերի օգնությամբ, որոնք հնարավորություն են ընձեռում արգելելու նոր սինթեզվող քիմիական միացությունների մեջ առկա մուտագենների մուտքը շրջակա միջավայր: Իսկ երբ տվյալ նյութը խիստ անհրաժեշտ է, ապա հարց է դրվում գենետիկապես վտանգավոր տվյալ միացությունը փոխարինել մի այլ անվնաս նյութով: Ուսումնասիրությունները այս ուղղությամբ լայնորեն տարածվել են աշխարհի շատ երկրներում: ԱՄՆ-ում, Ճապոնիայում, եվրոպական մի շարք երկրներում՝ ԳԴՀ-ում, ՉՍՍՀ-ում, ստեղծված են միջավայրում մուտագենները ուսումնասիրող հատուկ ընկերություններ: Մի քանի տարի է, ինչ գործում է մուտագենների վտանգավորությունն ուսումնասիրող միջազգային հանձնաժողով, որի անդամն է նաև ՍՍՀՄ-ը: Մինիստրների խորհրդի գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին կից գործում է մարդը և կենսաոլորտը պրոբլեմի գենետիկական ասպեկտները ենթաբաժինը:

Կարևոր նշանակություն ունի տեստ-համակարգերի ուսումնասիրման ծավալումը: Տեստ-համակարգերի օգտագործումը բակտերիալ շտամների տեսքով, մկների և այլ օրգանիզմների օգտագործումը որպես մարդու բջիջների մոդելներ, հաստատում են տվյալ նյութի մուտագենությունը: Սակայն այս տվյալները հնարավորություն չեն ընձեռում պարզելու գեների ու քրոմոսոմների վնասվածության աստիճանը մարդու սաղմնային և սոմատիկ բջիջներում: Այդ որոշելը նույժ անհրաժեշտ է, քանի որ մուտացիաների հաճախականությամբ և փոփոխությունների թվի հաշվառմամբ միայն հնարավոր կլինի ցույց տալ միջավայրի մուտագենների ազդեցության օբյեկտիվ տվյալները պոպուլյացիաների մակարդակով, որը կնպաստի մարդու ժառանգականության ներկա և ապագա վիճակի կանխատեսմանը:

Մարդը և կենսաոլորտը պրոբլեմի գենետիկական ասպեկտների խիստ կարևորությամբ է պայմանավորված նաև այն, որ առանձնակի ուշադրություն է նվիրվում ՄԱԿ-ի՝ շրջակա միջավայրին վերաբերող ծրագրում: Այդ ծրագրում ամենայն որոշակիությամբ նշված է, որ կենսաոլորտի պահպանման նպատակով ձեռնարկվող միջոցառումները մարդու համար ապահովում են գենետիկական կայուն բազմազանություն և հանդիսանում մարդու գոյատևման միակ երաշխիքը:

Գենետիկական բեռի պրոբլեմը. Բույսերի ու կենդանիների ցանկացած պոպուլյացիայում անհատների մի մասը ծնվում է փոփոխված գենետիկական ծրագրով: Նման փոփոխությունների հիմնական աղբյուրը մուտացիաների առաջացման պրոցեսն է: Քանի որ մուտացիաների զգալի մասը կրում է բացասական բնույթ, ապա մուտանտների մոտ նկատվում են բնածին արատներ: Պոպուլյացիաներում նման անհատների առկայությունն ստացել է գենետիկական բեռ անվանումը: Քանի որ մուտացիաների հաճախականությունը պոպուլյացիաներում ունի որոշակի մակարդակ, ուստի գենետիկական բեռը յուրաքանչյուր պոպուլյացիայում բազմաթիվ սերունդների մոտ շարունակաբար պահպանվում է կայուն մակարդակի վրա, չսպառնալով պոպուլյացիայի կյանքին: Նման պայմաններում պոպուլյացիայի կյանքը շրջակա միջավայրի հետ գտնվում է դինամիկ հավասարակշռության պայմաններում: Գենետիկական հավասարակշռության այսպիսի պրոցեսը պետք է համարել նորմալ:

Միջավայրի փոփոխության, օրինակ՝ դրա ֆիզիկական կամ քիմիական գործոններով հագեցվածության (գործոններ, որոնք կարող են ավելացնել մուտացիաների հաճախականությունը) կամ ընտրության (ինտենսիվության փոփոխման) հետևանքով այդ հավասարակշռությունը խախտվում է, և պոպուլյացիաներում մեծանում է գենետիկական բեռի ծավալը:

Կենդանիների, բույսերի ու միկրոօրգանիզմների պոպուլյացիաները միջավայրի նման փոփոխություններին պատասխանում են գենետիկական ադապտացիոն պրոցեսների ակտիվացմամբ, որը կապված է որոշ պոպուլյացիաներում բարձր մահացության և ավելի դիմացկուն մուտանտների ընտրության հետ: Սակայն մարդու համար այդ պրոցեսը կարող է ընթանալ այլ կերպ: Վնասակար մուտացիաների հաճախականությունը մարդու մոտ այնպիսին է, որ միջավայրի նույժ հագեցվածությունը մուտագեններով ի վերջո կարող է հանգեցնել պոպուլյացիայի այլասերման:

Վերջինիս պատճառ կարող են հանդիսանալ ֆիզիկական ու մտավոր բնածին արատների, անպտուղ ամուսնությունների, սպոնտան վիժումների, մանկական մահացության, ինչպես և գենետիկորեն այս կամ այն ծանր հիվանդության նկատմամբ հակվածության խիստ ավելացումը, որոնք բացասաբար են անդրադառնում կենսունակության ու վերարտադրության ֆունկցիաների վրա: Մարդկանց նկատմամբ գենետիկական բեռի ճիշտ գնահատման համար անհրաժեշտ է պատասխանել երկու հարցի. առաջին՝ ինչպիսի՞ մեծություն ունի գենետիկական բեռը ժամանակակից բնակչության համար. երկրորդ՝ գենետիկական բեռը մնո՞ւմ է նույնությամբ, թե՞ աճում է կենսաոլորտի աղտոտմանը զուգընթաց:

Գենետիկական բեռն ուսումնասիրելիս հարկ է նկատի ունենալ մարդու մուտացիաների հիմնական կատեգորիաները, որոնց բնորոշ են երեք մակարդակներ:

1. Քրոմոսոմների թվի փոփոխությունը, որ որոշվում է լուսային մանրադիտակով: Նման փոփոխությունների հետևանքը, որպես կանոն, լինում են սպոնտան վիժումները կամ մտավոր ու ֆիզիկական արատներով ծնվող երեխաները: Այսպես, օրինակ, երբ գոյանում է մի ավելորդ քրոմոսոմ ևս՝ 21-րդը, ապա ծնվում են Դաունի սինդրոմով տառապող երեխաներ: Նրանք մտավորապես թերզարգացած են, տհաս կամ լրիվ ապուշ: Նման մուտացիաներ լինում են ծնված 600 երեխաներից մեկի մոտ:

2. Քրոմոսոմների կառուցվածքի փոփոխությունները, որ պայմանավորված են գեների առանձին հատվածների ներքրոմոսոմային (ինվերսիա, դուպլիկացիա և այլն) կամ միջքրոմոսոմային տեղափոխմամբ (տրանսլոկացիա և այլն), ինչպես նաև քրոմոսոմների առանձին հատվածների կորստով (դելեցիա): Օրինակ կարող է հանդիսանալ B խմբի քրոմոսոմի մի փոքր հատվածի կորուստը: Այս արատով ծնված երեխաները տառապում են «կատվի գոռոց» սինդրոմով. նրանց բնորոշ է բթամտությունը, դանդաղ աճը, կլման խանգարումները և այլն:

3. Գենային մուտացիաներ, որոնք հետևանք են ԴՆԹ-ի առանձին հատվածների խախտման. Նման դեպքերում խոսքը մեկ գենի սահմաններում առանձին նուկլեոտիդների փոփոխության մասին է: Նման փոփոխությունների էությունը մի շարք դեպքերում ներկայումս ճշտորեն բացահայտվում է ժամանակակից մոլեկուլյար-գենետիկական մեթոդներով: Գենային փոփոխությունները կարող են դառնալ ոչ նորմալ սպիտակուցի սինթեզի պատճառ, որի հետևանքն է լինում, մի կողմից՝ մարդկանց անհատական փոփոխականությունը, մյուս կողմից՝ երեխաների մի մասի զարգացման խանգարումները: Այսպես, նման փոփոխություններից է մանգաղաձև անեմիան, որից մահանում են նորածինները: Գենային մուտացիայի դեպքում նորմալ հեմոգլոբին A-ի սինթեզը փոխարինվում է S հեմոգլոբինով, որի պատճառը մեկ նուկլեոտիդի փոխարինումն է այլ նուկլեոտիդով: Այս փոփոխության ժամանակ սպիտակուցի մոլեկուլի մեջ կոդոնը մուծում է մի այլ «ոչ նորմալ» ամինաթթու:

Քրոմոսոմային, դրանց կառուցվածքային, ինչպես և գենային մուտացիաները մարդու պոպուլյացիայի գենետիկական բեռում քանակապես խիստ տարբեր է: Այսպես, օրինակ, ժառանգական հիվանդությունների 96 տոկոսի պատճառը գենային մուտացիաներն են, իսկ 4 տոկոսինը՝ քրոմոսոմային մուտացիաները: Բացի դրանից, քրոմոսոմային մուտացիաների 83 տոկոսի պատճառը դրանց թվի խախտումներն են, որոնք հետևանք են մեյոզի անոմալիայի, այսինքն՝ նշված խախտումները չեն վերաբերում ԴՆԹ-ի մոլեկուլի քիմիային:

Այսպիսով, մարդկանց մոտ երևան եկող մուտացիաների իրական հաշվարկը, որն ըստացել է մուտացիաների հետախուզում անվանումը, կարող է իրականացվել միայն գենային մուտացիաների հաճախականության տվյալների հիման վրա:

Առաջարկվում է բնակչության շրջանում մուտացիաների հաճախականությունը գնահատելիս օգտվել նաև քրոմոսոմային մուտացիաներից[1]: Սակայն մուտացիաների նման հետախուզումը կիրառելի է բնակչության առանձին խմբերի նկատմամբ աղետային կամ այլ դեպքերի ժամանակ, երբ զգալիորեն աճում է մուտացիաների ընդհանուր հաճախականությունը:

Գենետիկական բեռի ծավալն ու դինամիկան բնակչության շրջանում. 1956—1960 թթ. ընթացքում ծնված երեխաների մոտ 4 տոկոսը եղել է ժառանգապես ոչ լիարժեք[2]: Ըստ ՄԱԿ-ի Ատոմային ռադիացիայի ազդեցության գիտական կոմիտեի 1977 թ. տվյալների, ոչ լիարժեք երեխաների ծննդյան հաճախականությունը կազմում է 10,8 տոկոս[3]: Նույնն է ցույց տալիս նաև Լենինգրադի ծննդատների ուսումնասիրությունը (Լենինգրադի մանկաբուժական ինստիտուտի սոցիալական հիգիենայի ամբիոն-

նի տվյալներով)[4]: Այնպիսի արդյունաբերական քաղաքներում, ինչպիսին են Վորոշիլովգրադը (մեքենաշինություն), Սևերոդոնեցկը (քիմիական արդյունաբերություն) և Կադիևկան (ածխարդյունաբերություն) հիվանդությունների ստրուկտուրայում նորածինների զարգացման արատները երրորդ տեղն են գրավում, իսկ մահացությունը՝ երկրորդ[5]:

Ըստ բժշկական գիտությունների ակադեմիայի՝ Գամալեի անվան միկրոբիոլոգիայի և էպիդեմիոլոգիայի ինստիտուտի տվյալների, ՍՍՀՄ քաղաքներում զարգացման բնածին արատների թիվը 2—2,5 անգամ ավելի է գյուղական բնակավայրերի համեմատությամբ: 1960—1973 թթ. ընթացքում ՌՍՖՍՀ-ի քաղաքներում բնածին արատների թիվն ավելացել է 2,6 անգամ (Օ. Վ. Բարոյան, Ռ. Ս. Կոնտորովիչ)[6]: ԱՄՆ-ի և Կանադայի ազգաբնակչության շրջանում նկատվել է այնպիսի ժառանգական հիվանդությունների աճ, ինչպիսին են սրտի և անոթների արատը, «նապաստակի շրթունք» և «գայլի երախ» անոմալիաները[7]: Ըստ ԱՄՆ-ի գիտահետազոտական հիմնարկությունների տվյալների, արատածին երեխաների թիվը 10 անգամ գերազանցում է պաշտոնական վիճակագրության տված թիվը[8]: Վերջին տասնամյակների ընթացքում մարդու բջիջներում ԴՆԹ-ի մոլեկուլի վնասվածության թիվն աճել է: Նման եզրակացությունը հետևվում է քաղցկեղային հիվանդության վերաբերյալ տվյալներից: Փորձերը ցույց են տվել, որ քաղցկեղածին գործոնների 90 տոկոսը միաժամանակ առաջացնում է մուտացիաներ: ԱՄՆ-ում քաղցկեղի լավ ախտորոշվող տեսակների անալիզ 6-ը ցույց է տվել, որ 1975 թ. դրանց թիվը երեք անգամ ավելի է 1930 թ. համեմատությամբ: Մահացությունը քաղցկեղից ԱՄՆ-ում կազմում է 18,4 տոկոս: Այս տվյալները պարզ ցույց են տալիս, որ վերջին 45 տարիների ընթացքում ԱՄՆ-ում մարդու բջիջներում ԴՆԹ-ի մոլեկուլի վնասվածության թիվն զգալիորեն աճել է[9]:

Տագնապալի են այն տվյալները, որ 1978 թ. արատածին երեխաների թիվը հասել է 10,8 տոկոսի: Որոշ հետազոտողների կարծիքով, բնածին հիվանդությունների զգալի աճը մարդկային պոպուլյացիայում իրական աճ չէ, այլ հետևանք է հիվանդությունների ախտորոշման մեթոդների կատարելագործման: Ի՞նչ կարելի է ասել այս առնչությամբ: Մուտացիաների հաճախականության անալիզին անցնելուց առաջ հարկ է պատասխանել այն հարցին, թե իրականում վերջին տասնամյակների ընթացքում մարդկային պոպուլյացիայում տեղի ունեցե՞լ է որևէ անբարենպաստ գենետիկական պրոցես: Այդ հարցի պատասխանն ստացվել է ՍՍՀՄ ԳԱ գենետիկայի ինստիտուտում:

Մարդկային պոպուլյացիայի գենետիկական տարբերակումը խարսխված է այն բանի վրա, որ յուրաքանչյուր անհատի մոտ քանակական և բիոքիմիական առանձնահատկությունները տարբեր կերպ են արտահայտվում: Պոպուլյացիաների բավարար ընտրության դեպքում նման անհատական փոփոխականության նկարագրությունը, ըստ Նյուտոնի բինոմի գործակցի, տարաբաշխում է առկա շեղումները: Նըման տարաբաշխումը պայմանավորված է ինչպես քանակական հատկանիշները դետերմինավորող պոլիգենների դիսպերսիայով, նույնպես և արտաքին միջավայրի ազդեցությամբ տեղի ունեցած շեղումների զուգակցմամբ:

Մեր աշխատանքներում ընտրել ենք այնպիսի ցուցանիշներ, ինչպես՝ աճը, քաշը, գլխի ծավալը և այլն, որոնց զարգացումը որոշակիորեն պայմանավորվում է ժառանգականության ազդեցությամբ: Կարևոր է և այն, որ այդ հատկանիշների հաշվառման հիմքը լիովին օբյեկտիվ է: Հայտնի է, որ ծննդատներում նորածինների քաշն ու հասակը այժմ ևս որոշվում են այնպես, ինչպես շատ տարիներ առաջ: Քանի որ շրջակա միջավայրի մուտագեններով աղտոտման պրոբլեմը ծագել է ընդամենը մեկ սերնդի ժամանակաշրջանում, ուստի, մենք կարող ենք հաշվարկել 25—30 տարի առաջվա տվյալները, դիմելով ծննդատների արխիվային նյութերին: Եթե պոպուլյացիայում իրոք առկա է գենետիկական բեռի ծավալի ավելացման հետ կապված անբարենպաստ գենետիկական պրոցես, ապա այն պետք է հանգեցնի մարդաչափական ցուցանիշների նորմալ տարաբաշխման, ձևափոխման, առաջացնելով դրանց անհամաչափություն, խախտում, դիսպերսիայի փոփոխություն և այլն: Գենետիկայում պոպուլյացիայի՝ տվյալ միջավայրին նորմալ հարմարվողականությունը բնորոշելու համար մշակված է հարմարվողականության նորմայի սկզբունքը, որի համաձայն քանակական ցուցանիշները ունեն նորմալ, բինոմալ տարաբաշխում, որի ժամանակ ամենահարմարված անհատներն ունեն քանակական ցուցանիշների կոմպլեքսի միջին արտահայտություն: Ակնհայտ է, որ բացասական գենետիկական պրոցեսի դեպքում փոփոխված տարաբաշխումը պետք է պակասեցնի միջին, առավել հարմարված ֆենոտիպերի հաճախականությունը: Մոսկվայի ծննդատներից մեկում կատարված ուսումնասիրությունները, ըստ նորածինների մարդաչափական հինգ ցուցանիշների, ցույց են տվել, որ վիճակագրական որոշակի տարբերություն կա 1950 թ. և 1973—75 թթ. ծնված երեխաների



քանակական ցուցանիշների կոմպլեքսի տարաբաշխման միջև: Ուսումնասիրված պոպուլյացիայի կենսաբանական էությունը անցած 25 տարիներին մի փոքր վատացել է[10, 11]: Նկատվել է հարմարվողականության որոշ նվազում:

Բնակչության շրջանում անբարենպաստ պրոցեսի փաստերի հայտնաբերումն ունի կարևոր նշանակություն: Սակայն այն չի տալիս քանակական տվյալներ մուտացիաների դերի մասին, առանց որի անհնար է գնահատել և կանխորոշել այդ պրոցեսը: Բնակչության շրջանում մուտացիաների հաճախականության քանակական գնահատումը խրթին հարց է: Մի շարք տասնամյակների ընթացքում Ջ. Նիլը ջանում էր պարզել միջավայրի ռադիացիայի ազդեցությամբ մուտացիաների հաճախականության աճը, ուսումնասիրելով Հիրոսիմայում և Նագասակիում ատոմային ռումբի պայթյունից ճառագայթահարված մարդկանց: Սովորական մեթոդներով տարվող այդ փորձերն ապարդյուն անցան[12]: Նիլն առաջարկեց մոնիտորինգի (հսկողական) նոր ծրագիր. բնակչության մասսայական ուսումնասիրման պայմաններում գրանցվում էր գենային մուտացիաների հաճախականությունն ըստ 20 լոկուսներում եղած սպիտակուցների և անտիգենների: Ընդ որում, ուսումնասիրվում էին ո՛չ թե սովորական բազմաձև լոկուսները, այլ գեների էլեկտրաֆորետիկ միաձև մարկերների հատուկ խումբը, որոնց բնորոշ է հազվադեպ փոփոխականությունը[13]:

Ելնելով մուտացիաների $1 \times 10^6$ հավասար միջին հաճախականությունից, պարզվել է, որ մուտացիաների հաճախականության 50 տոկոսով ավելացման փաստը գրանցելու համար անհրաժեշտ է ուսումնասիրել մի քանի միլիոն մարդկանց արյունը: Նման ծրագրի մեթոդական հիմունքների մշակման և բնակչության շրջանում այն իրականացնելու համար, ըստ Նիլի, ամեն տարի պետք կլինի ավելի քան միլիոն դոլար: Այդ ուսումնասիրությունների ընթացքում մինչև օրս չկան հաղորդումներ մարդկանց մոտ նոր մուտացիաների գրանցման վերաբերյալ[14]: ՍՍՀՄ ԳԱ ընդհանուր գենետիկայի ինստիտուտում կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել, որ արատավոր նորածինների մոտ միաժամանակ նկատվում է խիստ շեղում քանակական ցուցանիշների կոմպլեքսի միջին նորմայից: Այս տվյալները հնարավորություն տվեցին մշակելու մարդկանց մոտ առաջացած նոր մուտացիաների հաճախականության հաշվառման նոր եղանակ: Մշակվել է նոր սկզբունք, ըստ որի սպիտակուցների էլեկտրոֆորեզի ուսումնասիրման համար արյունը վերցվում է ոչ թե մասսայաբար բոլոր նորածիններից, այլ սելեկցիոն ընտրությամբ:

Քանի որ մոնիտորինգը հիմնված է միաձև գեների օգտագործման վրա, կարելի էր մտածել, որ այդ գեների համար մուտացիաների հազվադեպությունը ոչ թե հետևանք է նվազած փոփոխականության, այլ այն բանի, որ նման մուտացիաներն զգալիորեն ազդում են կենսունակության վրա: Այստեղից հետևում է, որ միաձև գենի նոր մուտացիաներ ամենայն հավանականությամբ կարելի է հայտնաբերել բնածին արատներ ունեցող երեխաների մոտ:

Հիմնվելով տեսության փորձնական տվյալների վրա, 1974—1978 թթ. ընթացքում ուսումնասիրել ենք 228 արատավոր երեխաների, որոնցից 117-ը ունեին խիստ արտահայտված անոմալիաներ, այսպես կոչված, «հրաժարյալ» երեխաներ են, որոնցից ծնողները հրաժարվել են և պահվում են մասնագիտացված կլինիկաներում, իսկ 50-ը՝ վաղաժամ ծնվածներ: Ստուգվող խումբը բաղկացած էր 600 նորմալ նորածիններից: Բացի դրանից ուսումնասիրվել են նաև բոլոր վաղաժամ և անոմալիաներով ծնված երեխաների ծնողները, առողջ երեխաների մայրերը, ինչպես և 1.300 տղամարդ-դոնորներ: Պարզվել է, որ անոմալ զարգացող երեխաների խմբի մոտ հազվագյուտ էլեկտրոֆորետիկ սպիտակուցների տարբերակների հաճախականությունը, նորմալ երեխաների խմբի համեմատությամբ, մի կարգ բարձր է: Պարզվել է նաև, որ այդ բոլոր տարբերակները չեն ժառանգվել ծնողներից, այլ նոր են առաջացել, տվյալ սերնդում: Մուտացիաների հաճախականությունն ուսումնասիրվող խմբում այնպիսին է, որ հնարավոր է լինում գրանցել մարդու մոտ նոր մուտացիաների կանոնավոր երևան գալը, ըստ արյան սպիտակուցի[15]: Տվյալ դեպքում առաջին անգամ հնարավոր դարձավ ո՛չ միայն ցույց տալ նոր մուտացիաների առաջացումը մարդու մոտ ըստ սպիտակուցների, այլև հաշվարկել դրանց հաճախականությունը: Բնակչության ընդհանուր ուսումնասիրման Ջ. Նիլի մեթոդը հիմնված է առանձին գեների մուտացիաների հաշվարկի վրա, որոնք հանդիպում են $1 \times 10^6$ հաճախականությամբ: Երեխաների ընտրված խմբերի մեր ուսումնասիրման եղանակը հնարավորություն ընձեռեց պարզելու, որ մուտացիաների հաճախականությունը կարող է հասնել $2 \times 10^{-3}$ և հնարավոր է նաև՝ $1 \times 10^{-2}$-ի:

Ջ. Նիլի առաջարկած եղանակով 20 լոկուս ուսումնասիրելու դեպքում մեկ նոր մուտացիա կարելի է սպասել 50.000 նորածիններից մեկի մոտ: Այդ թիվը բնորոշում է բնակչության փոփոխելիությունը ընդհանրապես: Մուտացիաների տեմպի փոփոխությունը պարզելու համար

անհրաժեշտ է անալիզի ենթարկել միլիոնավոր նորածինների, որը գործնականում հնարավոր չէ: Ըստ մեր առաջարկած եղանակի, նոր մուտացիա հնարավոր է գրանցել 100 նորածինների անալիզի դեպքում: Այսինքն, եթե ըստ Ջ. Նիլի մեթոդի մեկ նոր մուտացիա կարելի է հայտնաբերել՝ ուսումնասիրելով 50.000 նորածիններ, ապա մեր մեթոդով նույնքան նորածիններ ուսումնասիրելու դեպքում կարելի է հայտնաբերել 500 նոր մուտացիաներ: Իմանալով ընտրված նորածինների այդ խմբի տեսակարար կշիռը ողջ բնակչության թվում, կարելի է հաշվարկել մուտացիաների տեմպը բնակչության մեջ:

Այս ամենը ցույց է տալիս, որ առաջարկված ընտրողական սկրինինգի եղանակը գեների միաձև մարկերների օգտագործմամբ հիմք է հանդիսանում գենետիկական մոնիտորինգի գործնական եղանակների մշակման համար: Դրա հիման վրա մշակվել են առաջարկներ միջավայրի աղտոտման գենետիկական հետևանքների գնահատման ու կանխատեսման համար:

Դեմոգրաֆիան և գենետիկական բեռի պրոբլեմը: Ներկայումս յուրաքանչյուր տասներորդ երեխան ծնվում է ֆիզիկական և մտավոր արատներով: Ի՞նչ է սպասում մարդկությանը մոտ ապագայում: Այդ ապագան իրոք մոտակա է և բացառված չէ, որ հաջորդ 25 տարիների ընթացքում արատածին երեխաների թիվը կարող է զգալիորեն աճել: Տագնապ է հարուցում մտավորապես թերզարգացած երեխաների ծնունդը, որոնց թիվը կազմում է մոտ 3 տոկոս: Այդ է պատճառը, որ ԱՄՆ-ում մոտ 2 մլն աշակերտներ ընդունակ չեն յուրացնելու դպրոցական ծրագիրը: ՍՍՀՄ ԳԱ ընդհանուր գենետիկայի, սոցիոլոգիական հետազոտությունների և ՌՍՖՍՀ-ի հոգեբուժական ինստիտուտների առաջարկով ՍՍՀՄ բժշկական գիտությունների ակադեմիայի նախագահությունը որոշել է մշակել պետական ծրագիր «Չտարբերակված մտավոր թերզարգացածության առաջացման պատճառների ուսումնասիրման» նպատակով:

Զարգացման պաթոլոգիական խանգարումներով երեխաների թվի աճը հարուցում է մի շարք լուրջ սոցիալական հետևանքներ. 1) բնածին պաթոլոգիայի և ազգաբնակչության տարբեր հասակային խմբերի հիվանդացության աճը հասարակությունից կպահանջի զգալի նյութական ծախսեր և դրանով իսկ կհանգեցնի երկրի ազգային համախառն արտադրանքի նվազման: Այդ ծախսերի հաշվարկման համար անհրաժեշտ են հատուկ տնտեսական հետազոտություններ, որի ժամանակ հարկ է հաշվի առնել հիվանդների պահպանման ու խնամքի վրա ծախսվող միջոցները և արտադրապրոցեսից նրանց հարազատների դուրս մնալու հանգամանքը: 2) Պոպուլյացիայի պայմաններում բնածին հիվանդությունների քանակի ավելացումը լուրջ բացասական հետևանքներ կարող է ունենալ երկրի պաշտպանական պոտենցիալի կազմակերպման համար, քանի որ այդ դեպքում նման հիվանդները կազատվեն զինծառայությունից: 3) Էկոնոմիկայի, ինչպես և երկրի ապագայի վրա զգալի ազդեցություն կգործի բարոյական և հոգեբանական բնույթի պարամետրերի կայքը:

Զարգացման հաշվառվող խանգարումները, որպես պաթոլոգիա, լավ են արտահայտվում նորածինների և հասակային այլ խմբերի մոտ: Սակայն պաթոլոգիայից մինչև նորման, կան անցման շատ ձևեր: Այսպես, մտավոր թերզարգացածության պաթոլոգիան կազմում է բնակչության 3 տոկոսը, իսկ մտարգելակման բոլոր ձևերը կարելի է հանդիպել երեխաների 10—12 տոկոսի մոտ: Մեր օրերում բնական և սոցիալական միջավայրերն այնքան արագ են փոփոխվում, որ հառնում է մարդու էվոլյուցիոն-պլաստիկ փոփոխության խանգարումների և միջավայրի փոփոխության համաչափելիության հարցը: Արդի գիտության կողմից այն քիչ է ուսումնասիրված, սակայն անվիճելի է մեր դարաշրջանին հատուկ, այսպես կոչված՝ «դարաշրջանի հիվանդությունների», ամենից առաջ սրտանոթային, քաղցկեղային, ալերգիկ հիվանդությունների, ինչպես և հոգեկան խանգարումների աճը: Լայնորեն տարածված են համաճարակային, շնչառական ծանր հիվանդությունները և վիրուսային բնույթի այլ ինֆեկցիաներ: Երևան են գալիս նոր հիվանդություններ, որոնց առաջացման պատճառը պարզված չէ: Գործնականում այդ հիվանդությունները գենետիկայի առումով ուսումնասիրված չեն, չնայած հիմքեր կան ենթադրելու, որ ժառանգականության դերն զգալի նշանակություն կունենար դրանց առաջացման պատճառը պարզելու համար: Պաթոլոգիաների լայն տարածումը սահմանափակում է մարդու օրգանիզմի անհատական հարմարվողականությունը. մարդուն շրջապատող միջավայրն այնքան է փոխվել, որ դրա այժմյան ճնշումն սկսում է գերազանցել մարդու բիոլոգիական հարմարվողունակությունը, հատկապես տնտեսապես զարգացած երկրների խոշոր քաղաքների բնակիչների համար: Վտանգավոր են նաև բակտերիաների ու վիրուսների միկրոաշխարհում մարդու օրգանիզմի իմունոլոգիական սիստեմի հարմարվողականության սահմաններն անցնող գենետիկական հնարավոր տրանսֆորմացիաները:



Անհրաժեշտ է նաև հաշվի առնել մեր օրերում նկատվող բնակչության միգրացիոն հոսանքների՝ պատմականորեն ստեղծված ուղղությունների և ինտենսիվության խիստ փոփոխությունները: Սովորաբար միգրացիայի և էթնիկական տարբեր կոմպոնենտների պրոցեսները գենետիկան համարում է բիոլոգիական բարենպաստ ժառանգականությունը հարստացնող երևույթ: Սակայն, եթե միջէթնիկական ռեպրոդուկցիոն կոնտակտներն ուժեղանում են միջավայրի վատացման, դրա սելեկցիոն ճնշման պայմաններում, ապա այդ կարող է ունենալ որոշակի բացասական հետևանքներ:

Փաստորեն նման պայմաններում գեների վերահամադրումը հանգեցնում է, մի կողմից՝ հետերոզիսի (աքսելերացիայի), մյուս կողմից՝ կարող է հարուցել բիոլոգիապես անոմալ գենոտիպեր: Հետևապես, մարդկային պոպուլյացիայում սեգրեգացիոն բեռի ծավալը կարող է աճել, առաջացնելով բիոլոգիական և սոցիալական որոշակի հետևանքներ: Եվ իրոք, ՍՍՀՄ ԳԱ ընդհանուր գենետիկայի ինստիտուտում կատարված քաղաքային բնակչության առաջին ուսումնասիրություններն իսկ ցույց տվին նման պրոցեսի առկայությունը: Ակնհայտ է նման ուսումնասիրությունների հետագա զարգացման անհրաժեշտությունը: Այս ամենին զուգընթաց հարկ է ուսումնասիրել և նկատի ունենալ առանձին ազգախմբերի աճի խիստ դանդաղեցման և այլ ազգերի ինտենսիվ աճի ազդեցությունն ազգաբնակչության գենոֆոնդի վրա:

Հիմնական խնդիրները: Նկատի ունենալով պաթոլոգիայի աճը բնակչության շրջանում՝ գիտության խնդիրն է իրականացնել միջոցառումներ այդ տենդենցի կանխման նպատակով: Այդ առնչությամբ անհրաժեշտ է.

1. Պարզել ՍՍՀՄ-ում ֆիզիկական և մտավոր արատներով ծնվող երեխաների իրական թիվը, որպեսզի հետագայում հնարավոր լինի միջավայրի աղտոտվածության համեմատ վերհանել ժառանգական պաթոլոգիայի, տարբեր հիվանդությունների, քաղցկեղի նկատմամբ հակվածության վերաբերյալ տվյալները: Այդ նպատակով պետք է ամբողջ երկրի համար ստեղծել մասնագիտացված ծառայություն ազգաբնակչության գենետիկական ու կենսաբանական պրոցեսների, այսինքն՝ գենետիկական մոնիտորինգի ուսումնասիրման համար, օգտագործելով մոլեկուլյար կենսաբանության, պոպուլյացիոն գենետիկայի, սաղմնաբանության, անտրոպոլոգիայի, էթնոգրաֆիայի, բժշկական վիճակագրության ժամանակակից մեթոդները: Նշված ուսումնասիրությունները հիմք կհանդիսանան ժառանգական պաթոլոգիաների և տերատոլոգիական շեղումների նկատմամբ պոպուլյացիոն պրոֆիլակտիկայի կազմակերպման համար:

2. Տեստ-համակարգերի միջոցով հսկողություն սահմանել շրջակա միջավայրը քիմիական միացություններով աղտոտելու նկատմամբ: Հատուկ օրենսդրությամբ մշակել եղանակներ միջավայր թափանցող տարբեր մուտագենների դեմ պայքարելու նպատակով:

3. Ընդհանրացնել զարգացման արատներով ծնված երեխաների ռեանիմացիայի և հղիության պահպանման վերաբերյալ փորձը, ծավալել ուսումնասիրություններ ժառանգական հիվանդությունների էթիոլոգիայի պարզաբանման ու բուժման նպատակով. ստեղծել արդյունավետ հակամուտագեններ, կանոնավորել պաշտպանական ֆերմենտների գործունեությունը, ակտիվացնել աշխատանքները գենային ինժեներիայի ուղղությամբ բնածին արատների գենոթերապիայի նպատակով:

4. Սահմանափակել մարդու և կենդանիների համար վտանգավոր թունաքիմիկատների օգտագործումը: Պեստիցիդների և այլ թունաքիմիկատների օգտագործման սահմանափակման հետ մեկտեղ հարկ է մշակել կենսաբանական պայքարի նոր, առավել արդյունավետ միջոցներ գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու, ինչպես և բույսերի ու կենդանիների նոր սորտեր ու ցեղեր ստանալու նպատակով:

Արդի կարևորագույն խնդիրներից է նաև դիմացկունության գենով օժտված գյուղատնտեսական կուլտուրաների ու կենդանիների տեսական սորտերի և ցեղերի գենոֆոնդի պահպանումը, հետագայում դրանք սելեկցիայի պրոցեսում օգտագործելու նպատակով:

5. Միջավայրի՝ մուտագեններով աղտոտման պայմաններում կենսաբանական և գենետիկական հետևանքների պրոբլեմների ուսումնասիրման նպատակով ապահովել միջազգային համագործակցություն:

Իրողություն է, որ ներկայումս քիմիական մուտագենների վտանգը համեմատաբար ավելի մեծ է, քան ատոմային էներգիայինը:

Մենք չենք կարող քանակապես հաշվարկել մարդու ժառանգականությանն սպառնացող քիմիական մուտագենների վտանգը, որոնց քանակն անընդհատ աճում է միջավայրում: Սակայն այս դեպքում ճառագայթման համեմատ ժառանգականության սպառնացող վտանգն ավելի զգալի է: Քիմիական արդյունաբերության թափոններից փոփոխված շրջաններում մեր օրերում իսկ նշված է մուտացիաների բարձր հաճախականություն:

Այս բոլորը ցույց է տալիս, որ միջավայրի մուտագեններով աղտոտման հետևանքով լուրջ

է իրավիճակը ողջ աշխարհում: Այն փաստը, որ ներկայումս նորածինների 10,8 տոկոսն ունի ֆիզիկական ու մտավոր արատներ, վկայում է, որ մարդկությունն այսօր արդեն պետք է լուծի իրենց մասշտաբով ու սոցիալական բնույթով աննախընթաց խնդիրներ:

Միջավայրի մուտագենների պրոբլեմը չափազանց լուրջ է, բայց ոչ բոլորն են պատրաստ հասկանալու դրա սոցիալական հետևանքները: Հարկ է հիշեցնել Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, որ մարքսիզմը հասարակության զարգացումը դիտում է «պատմական տեսանկյունից ո՛չ միայն անցյալի բացատրման, այլև ապագան աներկյուղ կանխատեսելու իմաստով» (Երկեր, հ. 21, էջ 78): Այս խնդրի լուծման համար պահանջվում է հիմնարար ուղղությունների մշակում: Այդպես են մշակվել մուտացիաների գենետիկական մոնիտորինգի համար սելեկցիոն սկրինինգի հիմունքները: Այդ պրոբլեմն ամբողջովին պետք է հիմնվի գենետիկայի, դեմոգրաֆիայի, սոցիոլոգիայի, պատմության և այլ գիտությունների վրա: Ուստի այն պետք է լուծվի ՍՍՀՄ ԳԱ, բժշկական ԳԱ, գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեի, ատոմային էներգիայի օգտագործման պետական կոմիտեի մասնագետների միացյալ ուժերով: Նշված խնդիրների լուծմանը պետք է ակտիվ մասնակցեն բոլոր հանրապետությունների գիտնականները, կուսակցական ու պետական կազմակերպությունները: Անհրաժեշտ է գենետիկական ու կենսաբանական հետևանքների խնդիրների լուծումը զուգակցել միջավայրի պահպանության պրոբլեմների հետ: Մեծ անելիքներ ունեն նաև համապատասխան պետական մարմինները:

Մոտակա տարիներին սովետական գիտնականները կմշակեն «Մարդ, հասարակություն և բնակության միջավայր» ընդհանուր մոդելը, որը պետք է ապահովի մարդու և բնության հարատև միասնությունը: Այդ առումով հարկ է վերանայել մեր պատկերացումները մարդու ժառանգականության ընթացող պրոցեսների վերաբերյալ, ինչպես և դրանց նշանակությունը դեմոգրաֆիայում, էկոնոմիկայում, բժշկության, մանկավարժության, սոցիալական հոգեբանության ասպարեզում, աշխատանքային և ստրատեգիական ռեզերվների գնահատման գործում:

Գիտությունն ու պետությունը, հաշվի առնելով գիտական ու տեխնիկական հեղափոխության անկասելիությունը, որով պայմանավորված է միջավայրի աղտոտումը մուտագեններով, պետք է նկատի ունենան նաև դեպքերի զարգացման տեմպերը: Իսկ այդ տեմպերի արագ ընթացքը լրջորեն անհանգստացնում է հասարակությանը:

Մոսկվա

*ՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ԱՂԲՅՈՒՐՆԵՐ*

[1] Н. Н. Бочков. Генетический мониторинг популяции в связи с загрязнением среды. «Цитология и генетика», т. 11, 3, 1977.

[2] The biological effects of atomic radiation (summary report). The Nat. Acad. Sci. Res. Council. Washington, 1965.

[3] Sourcess and effects of ionising Radiation. United Nations, 1977.

[4] Н. Г. Веселов и др. В сб. «Фенотипический полиморфизм и диагносстика наследственных болезней человека», М., с. 14—15, 1976.

[5] Сб. «Здравоохранение Российской федерации», вып. 7, 1973.

[6] Сб. «Теоретические и практические подходы к проблеме мутагенеза и канцерогенеза окружающей среды». Гидрометеоиздат, М., с. 40—41, 1976.

[7] Banister, 1973. Monitoring infant populations for congenital anomalics: and progress reports 4—th Int. Conf. Birth Defects.

[8] Dobzhansky Th. 1970. Genetics of evolutionary process. Columbia Univ. Pess. N. Y., London,

[9] E. Silverberg. Cancer Statist cs. CA—A Cancer Journ. for clinicals. V, 27, 1. 1977

[10] Н. П. Дубинин, Ю. Н. Алтухов. Теоретические и практические подходы к проблеме мутагенов и канцерогенов окружающей среды. Гидрометеоиздат, 38, 1976.

[11] Н. П. Дубинин, Ю. П. Алтухов и др. Интегральная генетическая характеристика «адаптивной нормы» в популяции человека. Докл. АН СССР, 230, 4 957—960.

[12] J. Neel and W. Schull. The effect of Exposure to the Atomic Bombs on pregnancy termination in Hiroshima and Nagasaki, Washington, 1956.

[13] Ю. П. Алтухов. ДАН СССР, 189, 6, 1969.

[14] J. Neel. Amer. Journ. Hum. Genetics, v. 29, 1977.

[15] Н. П. Дубинин, Ю. П. Алтухов и др. Экспериментальное обоснование мониторинга генных мутаций у человека. ДАН СССР, 1978.

# ՄՈԼԵԿՈՒԼՅԱՐ ԿԵՆՍԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՆՅՈՒԹԱՓՈԽԱՆԱԿՈՒԹՅԱՆ ԽԱՆԳԱՐՄԱՆ ՀԵՏԵՎԱՆՔՆԵՐԸ

**Ս. Ա. ՍԻՄՈՆՅԱՆ**
Կենսաբանական
գիտությունների դոկտոր

**ՄԵՐ ՀԱՐՅՈՒՐԱՄՅԱԿԻ** երկրորդ կեսը երբեմն համարում են կենսաբանության ոսկե դար: Իրոք, վերջին տասնամյակներում կենսաբանական գիտության մեջ կատարվել են այնպիսի խոշոր հայտնագործություններ, ինչպիսիք են՝ նուկլեինաթթուների և սպիտակուցների կառուցվածքի, ժառանգական հատկանիշների փոխանցման կոդի բացահայտումը, վիրուսների կառուցվածքի ու բջջի վրա դրանց ներգործության մեխանիզմների հետազոտությունը և այլն:

Կենդանի օրգանիզմներում ընթացող կենսաբանական պրոցեսները չափազանց բարդ են, բազմազան, միմյանց հետ սերտորեն կապված: Հյուսվածքներում ու բջիջներում տեղի ունեցող փոխանակումների սահմանները նշելու համար ասենք, որ մարդու օրգանիզմում ֆերմենտները մասնակցում են հազարավոր բիոքիմիական ռեակցիաների: Օրգանիզմում կատարվող բոլոր փոխակերպումները լինում են օրինաչափ հաջորդականությամբ և համաձայնեցված: Բազմաբջիջ օրգանիզմներում կատարվող այդ պրոցեսների նորմալ ընթացքն ապահովվում է քիմիական հատուկ նյութերի մասնակցությամբ, որոնց տրվել է կենսաբանական կարգավորիչներ անունը: Բջջի կենսագործունեության կենսաբանական կարգավորիչներից են ֆերմենտները, վիտամինները, հորմոնները և այլ նյութեր: Բարձրակարգ կենդանիների կենսագործունեության հետ կապված պրոցեսների կարգավորումը կատարվում է նաև նյարդային համակարգի միջոցով, որն իրագործվում է գլխուղեղի կեղևի կամ ենթակեղևի կողմից: Այսպիսով, նյութափոխանակության հետ կապված այս կամ այն ռեակցիայի ընթացքը սերտորեն կապված է նյարդային համակարգի ֆունկցիոնալ վիճակի հետ: Նյութափոխանակության նյարդային կարգավորման հիմքում ևս ընկած են քիմիական պրոցեսները:

Ֆերմենտները լայնորեն տարածված են կենդանի բնության մեջ և ուղղություն են տալիս նյութափոխանակության բազմազան պրոցեսների: Այժմ պարզվել է, որ այդ պրոցեսների մեծ մասի խանգարումները սերտորեն կապված են որոշակի ֆերմենտի բացակայության, դրա ավելցուկի կամ անբավարար ակտիվության հետ: Ֆերմենտների գործունեությանն ակտիվ մասնակցում են նաև վիտամինները: Սննդի լիարժեքությունը բնութագրվում է ո՛չ միայն ածխաջրերի, ճարպերի և սպիտակուցների պարունակությամբ, այլև վիտամինների հարստությամբ: Օրգանիզմի նորմալ գործունեության համար քիչ քանակությամբ վիտամիններ են հարկավոր (կշռի առումով): Սակայն, եթե սնունդը վիտամիններ չի պարունակում, կենդանու օրգանիզմում առաջանում է վիտամինային անբավարարություն, որն ընդունված է անվանել ավիտամինոզ: Օրգանիզմի կենսագործունեության հետ կապված բազմազան պրոցեսներում վիտամինների կարևոր դերը ցույց տալու համար նշենք միայն մեկ օրինակ. վիտամին C-ն ակտիվ մասնակցում է բջջում էներգիայի առաջացմանն ու ամինաթթուների փոխանակությանը, հորմոնների սինթեզին և այլ պրոցեսների: Այժմ բացահայտվել է, որ ժառանգական բազմաթիվ հիվանդություններ պայմանավորված են ֆերմենտների, վիտամինների, հորմոնների և նյութափոխանակության այլ կարգավորիչների ազդեցության մեխանիզմների խանգարումներով: Օրինակ, մինչև այժմ հայտնի ժառանգական հիվանդու-

թյուններից 44-ը կապված են այս կամ ֆերմենտային համակարգի գործունեության որակական կամ քանակական արատների հետ:

Նշենք այդ հիվանդություններից մի քանիսը, որոնք արտահայտվում են նյարդային համակարգի նորմալ գործունեության տարբեր ախտահարումներով: Հատկապես երիտասարդ տղամարդիկ տառապում են, այսպես կոչված, Ֆաբրիի հիվանդությամբ, որի դեպքում ախտահարվում են նյարդային համակարգը, երիկամները, սիրտը: Պարզվել է, որ այդ հիվանդների մոտ խանգարված է արյան էրիտրոցիտների թաղանթի նորմալ կառուցվածքն ապահովող ֆերմենտային համակարգի գործունեությունը. հյուսվածքում առկա է ճարպերի կուտակում՝ կապված հատուկ ֆերմենտի՝ ցերամիդեռհեքսոզիդազայի գործունեության հետ: Հիվանդների մոտ նշված ֆերմենտի ակտիվությունը, նորմայի համեմատությամբ, մեկ տոկոսից չի անցնում: Մահը վրա է հասնում երիկամներում ցերամիդեռհեքսոզիդազայի կուտակման պատճառով: Այդ հիվանդությունը բջջաթաղանթի հետ կապված ժառանգական հիվանդություն է և պայմանավորված է ծնողներից համապատասխան գենի փոխանցումով:

Նյարդային մի այլ հիվանդություն, որը կոչվում է Լեշ-Նիհանի անունով, կապված բըջջում քիմիական մի այլ միացության՝ պուրինի փոխանակության հետ: Հիվանդության դեպքում նշված նյութի փոխանակությանը մասնակցող ֆերմենտը բացակայում է:

Որոշ հիվանդություններ առնչվում են օրգանիզմում ծծմբի միացությունների փոխանակության խանգարման հետ: Այսպես, սուլֆիտօքսիդազա ֆերմենտի ակտիվության բացակայության դեպքում դիտվում է մտավոր թուլություն, աչքերի չռվածություն և ախտահարման այլ նշաններ: Այդ հիվանդների մեզի մեջ սուլֆատների պարունակությունն զգալի նվազում է: Ծծումբ պարունակող միացությունների փոխանակության լուրջ խանգարումները հանգեցնում են վաղաժամ մահվան:

Նյութափոխանակության խանգարումներից մեկը կապված է պղնձի փոխանակության խախտման հետ: Այդ հիվանդությանը (որը հայտնի է Վիլսոնի անունով) բնորոշ է պղնձի կուտակումը ուղեղի, լյարդի և երիկամի հյուսվածքներում: Հայտնի է, որ պղինձն ունի ֆերմենտային սպիտակուցի կամ, ինչպես անվանում են ցերուլոպլազմինին ամուր կապվելու հատկություն. մինչդեռ արյան շիճուկի ալբումինների հետ դրա կապն անկայուն է: Հիվանդության դեպքում պղնձի ավելցուկն անցնում է լյարդը և երիկամները, որի հետևանքով արյան մեջ դրա քանակությունը պակասում է: Նյութափոխանակության արատը հետևանք է ցերուլոպլազմինի մոլեկուլի սինթեզի խանգարման:

Դեռևս 1866 թ. անգլիացի բժիշկ Դաունը նկարագրեց մի հիվանդություն, որի ժամանակ նկատվում է մտավոր թուլություն, իսկ երբեմն՝ լրիվ ապուշություն: Այդ ծանր ախտահարման մասին է վկայում այն փաստը, որ նման հիվանդների միայն վեց տոկոսն է ապրում մինչև երկու տարի. դա լինում է, միջին հաշվով, 700 մարդուց մեկի մոտ: Ֆրանսիացի բժիշկ Լեժենը բացահայտել է, որ այդ հիվանդությունը, այսպես կոչված, քրոմոսոմային սխալի հետևանք է. դրանով տառապողների սոմատիկ բջջում 46-ի փոխարեն կա 47 քրոմոսոմ: Հետագայում պարզվեց, որ առողջ մարդկանց համեմատությամբ Դաունի հիվանդության դեպքում համապատասխան ֆերմենտի ակտիվությունն անհամեմատ բարձր է: Մինչդեռ հիվանդի ծնողների մոտ, առողջ մարդկանց համեմատությամբ, նշված ֆերմենտի ակտիվությունը կրկնակի պակաս է:

Վերջին տարիներս հայտնաբերվել է, որ մըտավոր թուլության հետ կապված մի շարք հիվանդություններ երևան են գալիս ածխաջրատների փոխանակության խանգարումներից. դրանցից է Մորկիո-Ուլրիխի հիվանդությունը, որի պատճառն ածխաջրատներից մեկի փոխանակության խանգարումն է:

Ինչպես հայտնի է, բջջի շինանյութը սպիտակուցներն են, որոնք ապահովում են դրա, հետևաբար՝ մեր ամբողջ մարմնի կառուցվածքը: Կենդանի բջջում սպիտակուցների սինթեզն ու քայքայումը բարդ, բազմաստիճան պրոցես է, որին մասնակցում են բազմաթիվ ֆերմենտներ: Նյութափոխանակության այս շղթայում նույնպես կարող են լինել «սխալներ», որոնք պատճառ են դառնում մի շարք ծանր հիվանդությունների: Ամինաթթուների փոխանակության խանգարումներից կարող են առաջանալ նաև բնածին հիվանդություններ: Այդ հիվանդություններից է ալկապտոնուրիան:

Ամինաթթուների փոխանակության հետ կապված մի այլ հիվանդություն, որն ստացել է ալբինիզմ անունը, առաջացնում է մազերի ու մաշկի գունաթափում: Այդ հետևանք է մազերը գունավորող նյութի՝ մելանինի բացակայության: Պարզվել է, որ այդ հիվանդության դեպքում թիրոզին և դիօքսիֆենիլալանին ամինաթթուների հետագա փոխարկմանը մասնակցող ֆերմենտի ակտիվությունը շատ թույլ է: Առողջ մարդկանց օրգանիզմում նշված ամինաթթուներից հետագա փոխարկման պրոցեսում առաջանում է մելանին, իսկ ալբինոսների մոտ այն չի գոյանում: Ալբինիզմը (գունազրկությունը) ժառանգական հիվանդություն



է, դրա հաճախականությունը հավասար է մոտ հինգի՝ 100 հազար մարդուց:

Մի այլ ամինաթթվի՝ ցիստինի փոխանակության խանգարման հետ է կապված ցիստինոզ հիվանդությունը: Այն նույնպես ժառանգական է և սակավադեպ: Ախտահարման ժամանակ դժվար լուծելի ցիստինը, հետագա փոխարկման չենթարկվելով, կուտակվում է հյուսվածքներում և օրգաններում: Սուր ցիստինոզի դեպքում երեխաները մահանում են 2—3 տարեկան հասակում: Նշված հիվանդությամբ տառապող երեխաների մոտ դիտվում է ծանր ռախիտին բնորոշ պատկեր: Այժմ լավ ուսումնասիրված է ցիստինի փոխանակության ողջ շղթան: Այդ շղթայում ակտիվ մասնակցում են մի շարք ֆերմենտներ, սակայն ո՛ր հատվածում է թաքնված բնածին սխալը՝ դեռևս հայտնի չէ:

Տարբեր հիվանդությունների ժամանակ ախտահարվում է նաև լյարդը, որի հետևանքով խանգարվում են դրա փոխանակային ֆունկցիաները: Այժմ անդրադառնանք դրա հետևանքով առաջացող մի քանի հիվանդությունների, որոնք ի հայտ են գալիս լյարդում նյութափոխանակության խանգարումների հետևանքով: Դրանցից է ֆրուկտոզուրիա հիվանդությունը, որի դեպքում ֆրուկտոզան վատ է յուրացվում օրգանիզմի կողմից և դուրս է գալիս մեզի հետ: Ֆրուկտոզուրիան հիշեցնում է շաքարային հիվանդությունը: Հիվանդն զգում է սրտխառնուք, արյան մեջ զգալիորեն պակասում է գլյուկոզայի քանակությունը: Ֆրուկտոզուրիայի սուր ձևերի դեպքում զարգացումը կանգ է առնում, երևան է գալիս մտավոր թուլություն: Ենթադրում են, որ այս հիվանդության դեպքում խանգարվում է ֆրուկտոզայի ֆոսֆորացման պրոցեսը, որը հետևանք է համապատասխան ֆերմենտի ակտիվության բացակայության:

Լյարդում նյութափոխանակության խանգարումներից մեկը կապված է գլիկոգենի սինթեզի ու քայքայման հետ: Կա մի հիվանդություն, որի դեպքում գլիկոգենը նորմայից ավելի է կուտակվում լյարդում, հյուսվածքը մեծանում է, շաքարի պարունակությունն արյան մեջ իջնում, և երեխայի աճը կանգ է առնում: Դա հետևանք է այն բանի, որ, չնայած գլյուկոզան յուրացվում է լյարդի բջիջների կողմից, սակայն գլիկոգենը չի քայքայվում՝ համապատասխան ֆերմենտի անբավարար գործունեության պատճառով: Այդ հիվանդությունը, որ կոչվում է Գիրկեի անունով, բնորոշ է նաև այն բանով, որ արյան մեջ նկատվում է խոլեստերինի ու ճարպերի քանակի զգալի ավելացում: Ճարպերի քայքայման ինտենսիվացման հետևանքով մեզի մեջ ավելանում է ացետոնի քանակը: Հիվանդներին բուժում են՝ տալով ածխաջրատների ոչ մեծ քանակներ. այդ նպաստում է արյան մեջ գլյուկոզայի անհրաժեշտ մակարդակի պահպանմանը:

Երբեմն գլիկոգենը կուտակվում է մկաններում և, հատկապես՝ սրտամկանում, առաջացնելով մկանային թուլություն: Ընդհանրապես հայտնի են յոթ հիվանդություններ, որոնք ուղեկցվում են գլիկոգենի կուտակմամբ, ընդ որում, յուրաքանչյուր առանձին դեպքում դիտվում է որևէ ֆերմենտի գործունեության անբավարարություն:

Հայտնի է, որ լյարդը մեր օրգանիզմում կարևոր դեր է խաղում նաև սպիտակուցային փոխանակության մեջ. նրա բջիջներում կատարվում է որոշ ամինաթթուների սինթեզը: Այդ հյուսվածքում տեղի է ունենում նաև արյան շիճուկի կարևոր սպիտակուցների, այդ թվում՝ արյան մակարդմանը մասնակցող պրոթրոմբինի և ֆիբրինոգենի սինթեզը: Այդ պրոցեսը բավական բարդ է և ամենափոքր շեղումը կարող է հասցնել նյութափոխանակության մեծ արատների:

Էվոլյուցիայի ընթացքում մեր օրգանիզմում մշակվել է շատ հետաքրքրական արտազատման համակարգ, որի օգնությամբ բջիջներից հեռանում են փոխանակության վերջնական արգասիքները ու թունավոր նյութերը: Երիկամներն արտազատման գլխավոր օրգանն են: Արտազատման մեխանիզմում հույժ կարևոր է նաև արյան ֆունկցիան: Հաշվումները ցույց են տվել, որ երիկամի միջով հոսող արյան տասը տոկոսն օգտագործվում է հյուսվածքը սննդանյութերով ապահովելու համար: Օրգանիզմի ներշնչած թթվածնի տասը տոկոսը նույնպես ծախսվում է երիկամների կողմից: Արյան անոթներն անընդմեջ դեպի երիկամներն են մղում օգտակար և թունավոր նյութերով հարուստ շիճուկը, իսկ միզածորանից արտազատվում է մեզը: Արյան և մեզի մեջ պարունակվող շատ նյութեր ընդհանուր են, սակայն երիկամները չեն արտազատում այն բոլոր նյութերը, որոնք կան արյան մեջ:

Երիկամների նյութափոխանակության մեջ կարևոր նշանակություն ունի նաև մի այլ հորմոն՝ ալդեստերոնը, որը մասնակցում է օրգանիզմում նատրիումի փոխանակության կարգավորմանը: Այդ հորմոնի անբավարարությունը հարուցում է նատրիումի քանակության կորուստ, որի հետևանքով հյուսվածքում խանգարվում է աղերի փոխանակության նորմալ ընթացքը: Հորմոնի ավելցուկի դեպքում նատրիումի պարունակությունը հյուսվածքներում աճում է, որն ուղեկցվում է մեծ քանակությամբ ջրակուտակմամբ: Օրգաններն այտուցվում են:

Երիկամներում մեզի արտազատման մեխա-

նիզմում տեղ գտած նյութափոխանակության խանգարումները առաջացնում են ժառանգական մի շարք հիվանդություններ: Այսպես, երիկամներում ֆիլտրված պլազմայի հետագա արտազատության իջեցման պատճառով խախտվում է ֆոսֆորի փոխանակությունը, որի հետևանքով երևան են գալիս ոսկրախտին բնորոշ նշաններ:

Երիկամների ֆունկցիայի հետ կապված մի այլ հիվանդության հիմքում ընկած է ջրածնի իոնների անհրաժեշտ քանակության բացակայությունը, որի հետևանքով առաջանում է թթվային միջավայր, կամ, ինչպես ընդունված է անվանել՝ ացիդոզային վիճակ: Այդ հիվանդությունն ուղեկցվում է հսկայական քանակությամբ կալցիումի և կալիումի կորստով, որի հետևանքով երիկամները խիստ վնասվում են:

Բազմաթիվ հիվանդություններ սերտորեն կապված են մի այլ հյուսվածքի՝ արյան նյութափոխանակության մեջ տեղ գտած թերությունների հետ: Ինչպես հայտնի է, արյունն այն միջավայրն է, որտեղ բջիջները վերցնում են իրենց կենսագործունեության համար անհրաժեշտ սննդանյութերն ու թթվածինը և տալիս ածխաթթու ու փոխանակության այլ արտադրանքներ:

Արյան կարևոր ֆունկցիաներից է մարմնի կայուն ջերմաստիճանի ապահովումը: Հայտնի է, որ որոշ հիվանդությունների ժամանակ մարդու ջերմաստիճանը խիստ բարձրանում է: Այդ պայմաններում կարևոր դեր է խաղում արյան քիմիական բաղադրությունը: Բանն այն է, որ վարակիչ հիվանդությունների դեպքում ինտենսիվ քայքայվում են ինչպես մեր օրգանիզմի հյուսվածքներն ու բջիջները, նույնպես և հիվանդաբեր մանրէները: Դրա հետևանքով առաջանում են տարբեր թունավոր նյութեր, որոնք արյան հետ տեղափոխվում են օրգաններն ու հյուսվածքները: Այդ նյութերն անցնում են նաև ուղեղ, թափանցելով այն կենտրոնը, որը հսկում է մարմնի կայուն ջերմաստիճանի պահպանմանը: Արյան հոսքի հետ բերված թունավոր նյութերը գրգռում են այդ կենտրոնը, խանգարում նրա գործունեությունը, որի հետևանքով մարմնի ջերմաստիճանն սկսում է բարձրանալ: Մարմնի ջերմաստիճանի բարձրացումը նշան է այն բանի, որ օրգանիզմի պաշտպանողական ուժերը պայքարում են հիվանդության դեմ: Վտանգավոր են այն հիվանդությունները, որոնք անցնում են առանց ջերմի: Դա ցույց է տալիս, որ օրգանիզմը հնարավորություն չունի անհրաժեշտ դիմադրություն ցուցաբերելու հիվանդությանը: Արյան քիմիական բաղադրությունը կայուն է, և դրա բաղադրամասերից որևէ մեկի պարունակության տատանումները կարող են ախտորոշիչ կարևոր նշանակություն ունենալ այս կամ այն հիվանդության հայտնաբերման համար:

Հայտնի են մոտ 100 հիվանդություններ, որոնք կապված են արյան կամ արյունաստեղծ օրգաններում նյութափոխանակության խանգարումների հետ: Այսպես, վաղուց հայտնի էր, որ այն երկրներում, որտեղ ազգաբնակչության սննդի մեջ գերակշռում են ձկան կամ բուսական յուղերը, աթերոսկլերոզով (հիվանդություն, որի դեպքում արյան անոթների պատերը կորցնում են ճկունությունը) հիվանդների տոկոսը համեմատաբար ցածր է: Բանն այն է, որ բուսական յուղերն ավելի շատ չհագեցած ճարպաթթուներ են պարունակում և դրանց սիստեմատիկ օգտագործման շնորհիվ արյան մեջ պակասում է խոլեստերինի քանակությունը, պայմաններ են ստեղծվում անոթների պատերի նորմալ կառուցվածքի պահպանման համար: Պարզվել է, որ ֆոսֆոր պարունակող մի միացության՝ լեցիտինի ներկայությամբ խոլեստերինը դժվարությամբ է թափանցում արյան անոթի պատի մեջ և, հետևաբար, չի կուտակվում այնտեղ: Ելնելով դրանից՝ աթերոսկլերոզով հիվանդներին խորհուրդ է տրվում հաճախակի օգտագործել այնպիսի սննդանյութեր, որոնք հարուստ են լեցիտինով (հնդկացորենի շիլա, կաթնաշոռ և այլն):

Պետք է նշել, որ արյան մեջ խոլեստերինի պարունակության տատանումները կարևոր են ո՛չ միայն աթերոսկլերոզի, այլև ուրիշ հիվանդությունների ճիշտ ախտորոշման ու բուժման համար: Օրինակ՝ ալկոհոլիկների մոտ, շաքարային հիվանդության կամ հղիության դեպքում արյան մեջ ճարպերի քանակությունն զգալիորեն ավելանում է, իսկ երկարատև սովի կամ բրոնզային հիվանդության դեպքում՝ իջնում:

Արյան մեջ կարևոր դեր են կատարում ածխաջրատները և դրանց քայքայումից ստացված նյութերը: Այսպես, ֆիզիկական ծանրաբեռնվածության ժամանակ արյան մեջ զգալիորեն աճում է կաթնաթթվի պարունակությունը: Այդ նյութի պարունակության տատանումները կարևոր ցուցանիշ են թթվածնային անբավարարությունը որոշելու համար: Եթե վերջինս դառնում է մշտական (օրինակ, սրտի որոշ հիվանդությունների դեպքում), արյան մեջ պահպանվում է կաթնաթթվի պարունակության բարձր մակարդակը: Լյարդի մի շարք հիվանդությունների և թունավորման դեպքում նույնպես արյան մեջ մեծանում է կաթնաթթվի պարունակությունը:

Տարբեր հիվանդությունների ախտորոշման ու բուժման գործում չափազանց կարևոր է արյան մեջ տարբեր ֆերմենտների ակտիվության հետազոտությունը: Օրինակ, բացահայտվել է, որ չարորակ ուռուցքների դեպքում արյան շիճուկի մեջ մոտ 50 անգամ մեծանում է թթու ֆոսֆատազա ֆերմենտի ակտիվությունը: Նույն ֆերմենտի ակտիվությունը ռախիտով հիվանդ երեխաների արյան մեջ աճում է մոտ 20 անգամ:

Բացի ֆերմենտներից արյան մեջ կան նաև օրգանիզմի բնական պաշտպանության գործոններ՝ հակաֆերմենտներ, որոնք օժտված են հյուսվածքներն ու բջիջները ֆերմենտների քայքայիչ ներգործությունից պաշտպանող հատկությամբ:

Արյան մի շարք հիվանդություններ առնչվում են հեմոգլոբինի հետ: Մարդու հեմոգլոբինի մոլեկուլը կազմված է իրար հետ որոշակի հաջորդականությամբ միացած 574 ամինաթթուների մնացորդներից: Գոյություն ունի մի հիվանդություն, որը կոչվում է մանգաղաձև անեմիա: Այս հիվանդությունը պայմանավորված է նրանով, որ հեմոգլոբինի մոլեկուլում 574 ամինաթթուներից երկուսը փոխարինված են ուրիշներով՝ երկու շղթաներում վեցերորդ տեղում գլուտամինաթթվի փոխարեն հանդես է գալիս վալին ամինաթթուն: Այժմ հայտնի են 50 այդպիսի «արատավոր» հեմոգլոբիններ, որոնց առկայության դեպքում արյան շնչառական ֆունկցիան ենթարկվում է որոշակի փոփոխությունների:

Հեմոգլոբինը միանում է թթվածնին և առաջանում է անկայուն մի միացություն՝ օքսիհեմոգլոբին: Որոշ դեպքերում հեմոգլոբինն առաջացնում է, այսպես կոչված, մեթհեմոգլոբին, որն ունակ չէ միանալու թթվածնի հետ: Օրգանիզմում գործող հատուկ ֆերմենտային սիստեմի ազդեցությամբ մեթհեմոգլոբինը կրկին դառնում է հեմոգլոբին և մտնում շնչառության մեջ: Սակայն երբեմն համապատասխան ֆերմենտի թույլ ներգործության պատճառով մեթհեմոգլոբինից հեմոգլոբին առաջանալու ռեակցիայի հավասարակշռությունը խախտվում է, որի հետևանքով առաջանում է թթվածնային անբավարարություն: Այս հիվանդությունը, որը հայտնի է մեթհեմոգլոբինեմիա անունով, ժառանգական է և հատկապես երեխաների մոտ արտահայտվում է արյան մուգ գունավորությամբ:

Այսպիսով, ինչպես տեսնում ենք, օրգանիզմի ամեն մի հիվանդության պատճառն առաջին հերթին նյութափոխանակության շղթայի այս կամ այն օղակի խանգարումն է: Այդ պատճառների մեխանիզմների բացահայտումը ժամանակակից մոլեկուլյար կենսաբանության խոշորագույն նվաճումն է:

---

# ԱՐԴՅՈ՞Ք ՄԵՆՔ ՄԻԱՅՆԱԿ ԵՆՔ

**Հ. Մ. ԹՈՎՄԱՍՅԱՆ**
Բյուրականի Լենինի շքանշանակիր աստղադիտարանի դիրեկտորի տեղակալ, ֆիզիկա-մաթեմատիկական գիտությունների դոկտոր

*«Ապացույց չլինելը չլինելու ապացույց չէ»:*
Մարտին Ռիս

Մարդկության համար հազարամյակներ առաջ սովորական էր դարձել տեսնել փայլատակող աստղերով պատած գեղատեսիլ գիշերային երկնակամարի օրական պտույտը, ամեն առավոտ Արեգակի ծագումը արևելքում և մայրամուտը արևմուտքում, Լուսնի փոփոխվող տեսքը: Այժմ այդ երևույթների պատճառները հայտնի են. դրանք պայմանավորված են Երկրագնդի օրական պտույտով իր առանցքի շուրջը, տարեկան շրջադարձով Արեգակի շուրջը, Լուսնի պտույտով երկրի շուրջը: Այս ամենը հայտնի դարձավ միայն XVI դարի կեսերին, շնորհիվ լեհ հանճարեղ գիտնական Կոպեռնիկոսի, որին հաջողվեց բացահայտել Արեգակնային համակարգի իրական կառուցվածքը: Իսկ մինչ այդ դարեր շարունակ համարվում էր, որ Արեգակն ու Լուսինը, աստղալից երկնակամարը պտտվում են անշարժ Երկրագնդի շուրջը, դրանով իսկ ապահովելով ցերեկվա ու գիշերվա փոփոխությունները: Այդ պատկերացումը լիովին բավարարում էր կրոնին, ըստ որի Երկրագունդն ստեղծել է աստված՝ որպես մարդկության բնակատեղի և, որպես այդպիսին, այն «բնականաբար» զբաղեցնում է տիեզերքում մի եզակի տեղ՝ դրա կենտրոնը: Եվ ահա Կոպեռնիկոսը «արժեքազրկեց» Երկրագունդը, դասելով այն հասարակ մոլորակների շարքին: Դա սասանեց կրոնի հիմունքները, և եկեղեցին անողորմ պայքար սկսեց այդ ուսմունքի, դրա հետևորդների դեմ: Հաղթեց, իհարկե, ճշմարտությունը: Եվ այժմ մենք ստույգ գիտենք, որ ապրում ենք Արեգակի շուրջը պտտվող ինը մոլորակներից մեկի՝ Երկրագնդի վրա: Ստույգ գիտենք, որ Երկրագնդի վրա կա բուսական ու կենդանական կյանք, որն Արեգակի լույսի ու ջերմության արգասիք է: Ստույգ գիտենք նաև, որ բնության արարող ուժերի, կենդանական կյանքի էվոլյուցիայի արգասիք է Երկրագնդի վրա բանական մարդու գոյավորումը, որը և հանգեցրել է արդի զարգացած քաղաքակրթության ստեղծմանը: Այդ քաղաքակրթությունը, դարերի ընթացքում հետազոտելով ու բացահայտելով բնության օրենքները և ուսումնասիրելով իր օրրան Երկիրն ու Արեգակը, Արեգակնային համակարգությունն ու Տիեզերքը, այժմ գիտե, որ Արեգակը մի շիկացած գազային գունդ է, և որ գիշերային երկնքում փայլատակող հազարավոր աստղերը ճիշտ Արեգակի նման շիկացած գազային գնդեր են՝ քիչ թե շատ տարբերվող չափերով ու մակերևութային ջերմաստիճաններով, և միայն շատ մեծ հեռավորությունների վրա գտնվելու պատճառով գիշերները նրանք երևում են թույլ լույս արձակող կետերի տեսքով: Աստղադիտակի գյուտի շնորհիվ պարզվեց, որ աստղերի թիվն զգալիորեն ավելի շատ է, քան երևում է անզեն աչքով, և որ աստղերը հավասարաչափ չեն սփռված Տիեզերքում, այլ կազմում են առանձին հսկա համակարգեր՝ գալակտիկաներ: Արեգակն իր փոքր ընտանիքի՝ մոլորակների հետ, մտնում է մեր գալակտիկայի կազմի մեջ, որը բաղկացած է մոտ հարյուր միլիարդ աստղից: Ավելի կամ պակաս աստղ պարունակող մյուս գալակտիկաների թիվը Տիեզերքում անհամար է:

Եվ ահա, հարց է ծագում. մի՞թե այս անսահման Տիեզերքում իր անհամար գալակտիկաներով ու ավելի ևս անհամար աստղերով կյանք կարող էր առաջացած լինել միայն Երկրի վրա: Մենք կարող ենք ստույգ ասել, որ Արեգակնային համակարգության մյուս մոլորակների վրա քաղաքակրթություն չկա: Չկա նույնիսկ պարզագույն տիպի կյանքի որևէ նշույլ: Երկրագնդից հետո կյանքի համար ամենաբարենպաստ պայմաններ ունեցող Մարսի վրա այնտեղ հասած ավտոմատ տիեզերասարքերը չբացահայտեցին նույնիսկ մանրէների գոյությունը: Այսպիսով, կարելի է վստահ պնդել, որ Արեգակնային համակարգությունում կյանք գոյություն ունի միայն Երկրագնդի վրա:

Եթե մտածենք, որ մենք միայնակ ենք Տիեզերքում, ապա կստացվի, որ մարդը և երկրային քաղաքակրթությունը չափազանց առանձնահատուկ են: Երկիրը, ինչպես նախակոպեռնիկոսյան ժամանակաշրջանում, այժմ ևս եզակի տեղ է զբաղեցնում Տիեզերքում, ծնվելու և հարատևելու հնարավորություն ընձեռելով Տիեզերքի միակ քաղաքակրթությանը: Իսկ կա՞ն նախադրյալներ հակառակը կարծելու, մտածելու, որ մենք միայնակ չենք Տիեզերքում, որ նրա անհուն տարածություններում կան նաև այլ կյանք ու քաղաքակրթություն:

Այս հարցին պատասխանելու համար նախ պետք է զննենք աստղագիտական հետազոտությունների արդյունքները: Ակնհայտ է, որ կյանք կարող է առաջանալ ու զարգանալ միայն մոլորակի վրա: Աստղերի՝ մի քանի հազար կամ տասնյակ հազար աստիճան մակերևութային ջերմաստիճան ունեցող գազային գնդերի վրա դա բացառված է: Ուրեմն, պետք է պարզել, կա՞ն արդյոք Տիեզերքում, Արեգակի շուրջը պտտվող ինը մոլորակներից բացի, ուրիշ մոլորակներ:

Մոլորակները սառը մարմիններ են և չունեն իրենց սեփական լույսը: Մեր Արեգակնային համակարգության մոլորակները տեսնում ենք միայն նրանց կողմից Արեգակի լույսի անդրադարձման շնորհիվ: Լույսի անդրադարձված քանակը շատ քիչ է, և համակարգության հեռավոր անդամը՝ Պլուտոնը, դժվարությամբ ենք տեսնում նույնիսկ միջին չափերի աստղադիտակների օգնությամբ: Իսկ հեռավոր աստղերի մոլորակները, եթե այդպիսիք, իրոք, կան, չեն կարող անմիջականորեն դիտվել նույնիսկ ամենամեծ աստղադիտակների օգնությամբ: Եվ դրա պատճառը ո՛չ միայն դրանց նվազ պայծառությունն է: Կարևորն այն է, որ մենք փորձում ենք մոլորակը նկատել անհամեմատ ավելի մեծ պայծառության աստղի անմիջական հարևանությամբ, նրանից չափազանց փոքր անկյունային հեռավորության վրա: Այդուհանդերձ, դրանց գոյությունը կարելի է բացահայտել ոչ անմիջականորեն: Եթե գոյություն ունի աստղ-մոլորակ համակարգ, ապա այդ համակարգի անդամները պետք է պտտվեն համակարգի ծանրության ընդհանուր կենտրոնի շուրջը: Եթե աստղի զանգվածը շատ անգամ ավելի մեծ է մոլորակի զանգվածից, ինչպես Արեգակ—Երկիր զույգի դեպքում, ապա համակարգի ծանրության կենտրոնը գրեթե համընկնում է աստղի կենտրոնի հետ և հետևաբար գործնականորեն մոլորակն է պտտվում աստղի շուրջը: Բայց եթե մոլորակի զանգվածն այդքան փոքր չլինի աստղի զանգվածից, ապա համակարգի ծանրության կենտրոնը կգտնվի աստղի կենտրոնից որոշ հեռավորության վրա, նույնիսկ նրա սահմաններից դուրս, և աստղը նույնպես կպտտվի այդ կենտրոնի շուրջը: Եվ ահա, եթե զգալի զանգվածով մոլորակ ունեցող աստղը շատ հեռու չէ մեզնից, ապա հնարավոր է նկատել նրա շարժումները և, անմիջականորեն չտեսնելով մոլորակը, այդ միջոցով բացահայտել դրա գոյությունը: Աստղերի հեռավորության մեծացման հետ դրանց ուղեծրային պտույտի հետևանքով առաջացող անկյունային տեղաշարժը փոքրանում է և կարող է աննկատ մնալ: Ուրեմն, մոլորակներ կարող են հայտնաբերվել միայն մերձավոր աստղերի մոտ:

Եվ ի՞նչ: Դիտվեցին, այսպես կոչված, Բառնարդի աստղի տատանողական շարժումները: Դա, ըստ Արեգակից ունեցած հեռավորության, երկրորդ աստղն է մեր Գալակտիկայում: Այդ տատանումները կարող են պայմանավորված լինել Յուպիտերի զանգվածի կարգի մեկ, կամ փոքր-ինչ պակաս զանգված ունեցող երեք մութ մարմինների գոյությամբ, մարմիններ, որոնք ամենայն հավանականությամբ կարող են մոլորակներ լինել: Մութ մարմինների՝ մոլորակների տիպի օբյեկտների գոյության նշաններ են նկատվել մինչև մոտ 20 լուսատարի հեռավորության վրա գտնվող, այսինքն՝ Արեգակի մերձավոր աստղերից ութի մոտ ևս: Իսկ դա նշանակում է, որ մեր Արեգակնային համակարգը միակը չէ Տիեզերքում, և մեր մոլորակային համակարգությունն առհասարակ հազվադեպ երևույթ չէ: Եթե Արեգակի շրջապատի մի քանի տասնյակ աստղից մի քանիսն ունեն մոլորակներ, ապա ամբողջ Գալակտիկայով մեկ, ուր կա մի քանի հարյուր միլիարդ աստղ, մոլորակներ, միջին հաշվով, պետք է ունենան դրանցից մի քանի տասնյակ միլիարդը: Եվ դա միայն մեր Գալակտիկայում:

Ուրեմն՝ մոլորակները Տիեզերքում չափազանց շատ են: Բայց դրանք բոլորն, իհարկե, չեն կարող կյանքի համար նպաստավոր պայմաններ ունենալ. մի մասը կարող է իր աստղից շատ հեռու գտնվելու պատճառով սառը լինել, ինչպես ասենք, մեր Նեպտունը, կամ Պլուտոնը, իսկ մի մասը՝ ընդհակառակը, շատ մոտ և չափից ավելի ջերմ՝ ինչպես մեր Մերկուրին: Արեգակնային համակարգությունում ինը մոլորակից միայն մեկն է նպաստավոր կյանքի համար: Եթե ընդունենք, որ մյուս

աստղերի մոլորակներից նույնիսկ հարյուրից մեկը հարմար պայմաններ կունենա կյանքի համար, ապա միայն մեր Գալակտիկայում մոտ մի քանի հարյուր միլիոն այդպիսի մոլորակ կլինի: Այստեղ, իհարկե, պետք է նկատի ունենալ, որ, որոշելով կյանքի համար նպաստավոր պայմաններ ունեցող մոլորակների քանակը, մենք նկատի ունենք մեր՝ երկրային պայմանները, այլ կերպ ասած, մենք այս հարցում «երկրային շովինիզմ» ենք ցուցաբերում: Չէ՛ որ այլ տիպի կյանքի համար, ասենք, ոչ-ածխածնային հիմքով, այլ ազոտային, անհրաժեշտ պայմանները կարող են տարբեր լինել և ոչ այդչափ կրիտիկական, ինչպես մեզ մոտ:

Այսպիսով, Տիեզերքում կան բազմաթիվ մոլորակներ, որոնց վրա կարող է կյանք լինել: Բայց այդ հարցի մի կողմն է: Մենք կարող ենք մեզ համար մի հարմար մոլորակ գտնել և ինչ-որ ժամանակ, երբ Երկրի վրա նեղվածք ստեղծվի նրա աճող բնակչության համար, տեղափոխվել այնտեղ՝ բնակություն հաստատելու: Արդեն այսօր իսկ, տիեզերական թռիչքների մանկական քայլերի օրերին, դա այնքան էլ ֆանտաստիկ չի թվում:

Հարցի մի այլ կողմը, որ հետաքրքրում է մեզ տվյալ դեպքում, մոլորակի վրա կյանքի առաջացումն է: Մեզ մոտ կյանքն առաջացել է ըստ երևույթին 4—4,5 միլիարդ տարի առաջ, օվկիանոսում. ինչպես գտնում է սովետական գիտնական, ակադեմիկոս Ա. Օպարինը, կյանքն առաջացել է քիմիական եղանակով անօրգանական մոլեկուլներն օրգանականի և ապա կենսունակ մոլեկուլների վերածվելու միջոցով: Որքանո՞վ է այդ հավանական: Փորձերը վկայում են, որ ուլտրամանուշակագույն ճառագայթների ազդեցությամբ պարզ անօրգանական մոլեկուլներից առաջանում են օրգանական մոլեկուլներ, որոնցից արդեն կարող են սինթեզվել և շատ ավելի բարդ, կենսունակ օրգանական մոլեկուլներ: Փորձերը ցույց են տվել նաև, որ բարդ օրգանական մոլեկուլներ կարող են ստեղծվել պրոտոնների ռմբակոծման ազդեցությամբ և միջաստղային տարածությունում. ուրեմն, կյանքի գոյացման առաջին քայլերը կարող են կատարվել և այնտեղ ու ապա շարունակվել մոլորակների վրա: Ավելին, բավականին բարդ, 8—9 ատոմից բաղկացած օրգանական մոլեկուլներ, ինչպես էթիլային սպիրտ, ացետալդեհիդ և այլն, արդեն հայտնաբերվել են միջաստղային տարածությունում ռադիոաստղագիտական դիտումների միջոցով:

Շատ դժվար է, իհարկե, գնահատել բարդ օրգանական մոլեկուլներից կենսունակ մոլեկուլների ձևավորման հավանականությունը: Առավել դժվար է պարզել, թե գոյացած կյանքի զարգացումը քանի՞ դեպքում կընթանա այնպես, որ հանգեցնի կյանքի բարձրագույն ձևի՝ մտածող էակի ու ապա՝ քաղաքակրթության ստեղծմանը: Որքան էլ փոքր լինեն այս վերջին երկու հավանականությունները, մոլորակների թիվը Տիեզերքում այնքան մեծ է, այսինքն՝ կյանքի ու ապա քաղաքակրթության ընտեղծման համար այնքան շատ հնարավորություններ կան, որ դժվար է պատկերացնել, թե անհուն Տիեզերքում այն իրականացել է միայն մեկ անգամ՝ մեր Երկրի վրա, և որ դրա արդյունքը միայն ու միայն մենք ենք՝ երկրային քաղաքակրթությունը: Այդպես մտածելով, ասես թե կրկին աստվածացնում ենք մարդուն ու նրա օրրան Երկրագունդը և, իհարկե, այլ իմաստով, վերածնում նախակոպեռնիկոսյան դարաշրջանը, դիտելով Երկիրը որպես մի առանձնահատուկ, «աստվածային» վայր ամբողջ Տիեզերքում:

Եթե քաղաքակրթության զարգացումը բարեհաջող է ընթանում, ապա կարելի է ենթադրել, որ այն, զարգանալով հասնում է չափազանց բարձր մակարդակի, այնպես որ միջոցներ է ստեղծում միջաստղային թռիչքների համար: Երբ մոլորակը չի բավականացնում իր աճող բնակչությանը, քաղաքակրթությունը հետախուզական (?) արշավախմբեր է ուղարկում, ասենք, մինչև տասը լուսատարի հեռավորության վրա գտնվող մոլորակները, որոնք նախապես հայտնաբերված են եղել, և բնակեցնում է դրանք: Ասենք, մոտ հազար տարի հետո այստեղ ևս գերբնակեցվածություն է ստեղծվում, և նրանք բնակեցնում են հաջորդ տասը լուսատարի հեռավորության վրա եղած՝ իրենց համար հարմար մոլորակները: Եթե երկար ժամանակ ամեն ինչ ընթանա նկարագրված եղանակով, ապա մի քանի միլիոն տարի հետո ամբողջ Գալակտիկան բնակեցված կլինի այդ էակներով: Սակայն այդ դեպքում, մենք, անշուշտ, կիմանայինք այդ գերզարգացած քաղաքակրթության գոյության մասին. տիեզերական մի հրաշք կլիներ այդ: Քանի որ «հրաշք» չկա, ապա պետք է ենթադրել, որ, կա՛մ քաղաքակրթությունների կյանքի տևողությունը մեծ չէ, կամ էլ նրանք կարողանում են կարգավորել իրենց բնակչության աճն այնպես, որ ուրիշ մոլորակների «գաղութացման» կարիք չեն զգում: Կարելի է նաև ընդունել, որ կա՛մ ուրիշ քաղաքակրթություն առհասարակ չկա, կամ մեր քաղաքակրթությունը զարգացման ամենաբարձր աստիճանի վրա է գտնվում: Վերջին երկու ենթադրությունը մեզ նորից տանում է ետ, դեպի նախամիջնադար: Իրոք, դժվար է հաշտվել այն մտքի հետ, որ այլ քաղաքակրթությունների գոյության դեպքում նրանք բոլորն իրենց զարգացման մակարդակով մեզնից ցածր պիտի լինեն: Չէ՛ որ մեր տեխնիկական քաղաքակրթությունը հազիվ մեկ-երկու հարյուրամյակի պատմություն ունի: Դժվար է պատկերացնել, թե ինչ մակարդակի հասած կլինեն այն գիտակից էակները, որոնք առաջացել են շատ ավելի վաղ և ոչ թե մեկ-երկու հարյուր, այլ, ասենք, մի քանի հազար կամ տասնյակ հազար տարվա տեխնիկայի պատմություն ունեն:

Այլ, հատկապես, ավելի բարձր մակարդակի վրա գտնվող քաղաքակրթությունների գոյության ընդունումը նոր խնդիրներ է առաջադրում: Ինչպե՞ս իմանալ այդ մասին: Կարելի՞ է, արդյոք, «զրուցել» նրանց հետ, ասենք, մի հարց տալ նրանց և ստանալ հարցի պատասխանը: Եթե, այո, ապա ի՞նչ միջոցներով: Նման խնդիրները շատ են և յուրաքանչյուր խնդրից նորերն են ծագում:

Զրույց այն իմաստով, ինչպես մենք ենք հասկանում, իհարկե, հազիվ թե հաջողվի: Եթե ընդունենք, որ մեր Գալակտիկայում կա, ասենք, տասը «զրուցակից», ապա նրանց միջին հեռավորությունը մեզնից կլինի մոտ տասը հազար լուսատարի: Այդ նշանակում է, որ մեր՝ լույսի արագությամբ ուղարկած ազդանշանը նրանց կհասնի տասը հազար տարի հետո միայն: Նրանց ազդանշանը մեզ հասնելու համար կպահանջի նույնքան ժամանակ: Ուրեմն, մեր հարցի պատասխանը, լավագույն դեպքում, կստանանք քսան հազար տարի հետո: Հայտնի չէ, թե մեր այդքան հեռավոր հետնորդներին կհետաքրքրի՞, արդյոք, այդ պատասխանը: Իսկ եթե մեր «զրուցակիցը» մոտակա գալակտիկաներից մեկում, ասենք՝ Անդրոմեդայի հայտնի միգամածությունում լինի, ապա պատասխան ուղերձը նրանից կստանանք... մոտ չորս միլիոն տարի հետո: Ուրեմն, այս հարցում գործնականորեն խոսք կարող է լինել միայն միակողմանի կապի մասին: Կարելի է հուսալ, որ ավելի բարձր գիտատեխնիկական մակարդակի վրա գտնվող քաղաքակրթությունները «մարդասիրական» մղումով կարող են «դասընթացներ» բացել ավելի ցածր աստիճանի վրա գտնվող քաղաքակրթությունների համար, ցանկանալով հաղորդել նրանց իրենց հայտնի դարձած բնության օրենքները և տեխնիկական առաջընթացի արդյունքները:

Մեր ունեցած գիտելիքների համաձայն, միջաստղային տարածության մեջ ազդանշաններ ուղարկելու համար ամենահարմարը գերկարճալիք՝ 10—30 սմ ալիքի երկարության ռադիոալիքներն են: Լուսային ազդանշանները այդ նպատակի համար պիտանի չեն, քանի որ միջաստղային փոշին խիստ կլանում է լույսը: Օրինակ, Գալակտիկայի կենտրոնական տիրույթների աստղերի լույսը մինչև մեզ հասնելը թուլանում է մի քանի հարյուր միլիարդ անգամ, և այդ պատճառով այդ տիրույթի աստղերն անտեսանելի են մեզ համար: Վերը նշված ալիքների տիրույթից դուրս գտնվող ռադիոճառագայթները ևս չեն կարող օգտագործվել միջաստղային ռադիոկապի համար, քանի որ դրանք նույնպես կա՛մ կլանվում են միջաստղային տարածությունում, կա՛մ չեն թափանցում մեր Երկրագնդի մթնոլորտը: Ուրեմն, եթե կամենում ենք մեզ հղված ուղերձներ որոնել, ապա որոնումները պետք է կատարել նշված ռադիոալիքների տիրույթում: Եվ, եթե ուզում ենք հավանական քաղաքակրթություններին հայտնել մեր գոյության մասին, այդ պետք է անենք, օգտագործելով նույն երկարության ռադիոալիքները: Նման փորձեր արդեն արվել են: Ճիշտ է, մեր էներգետիկական հնարավորությունները դեռ շատ մեծ չեն, և առայժմ ի վիճակի ենք ազդանշաններ ուղարկել մեզնից ոչ շատ հեռու գտնվող և, իհարկե, մոլորակներ ունեցող աստղերը միայն:

Կարելի է պատկերացնել կապի մի այլ միջոց ևս՝ միջաստղային թռիչքները: Սակայն, ինչպես ցույց են տալիս հաշվարկները, նույնիսկ ֆոտոնային շարժիչի օգտագործման և գրեթե լուսային արագություններով թռչելու դեպքում առաջանում են չափազանց մեծ, համարյա անհաղթահարելի դժվարություններ, որոնք ստիպում են հրաժարվել կապի այդ միջոցից:

Այսպիսով, անհիմն չէ ենթադրել, թե ինչ-որ մեկը կամ նույնիսկ մի քանիսը Տիեզերքի ինչ-որ տեղից, այլ քաղաքակրթություններ փնտրելու նպատակով, համբերատար կերպով ազդանշաններ է հղում մեզ: Եթե ինքներս դեռ հնարավորություն չունենք ազդանշան հղելու Գալակտիկայի հեռավոր ծայրամասերը, ապա ազդանշանի ընդունման հարցում մեր հնարավորություններն այժմ շատ ավելի լայն են: Սակայն այստեղ ևս կա որոշակի բարդություն: Նախ, ինչպե՞ս տարբերել որևէ քաղաքակրթության ուղարկած արհեստական ազդանշանները Երկրագունդը ողողող բնական ազդանշաններից, որ ճառագայթում են տարբեր տեսակի երկնային մարմինները: Դրա համար անհրաժեշտ է ամենից առաջ լավ ուսումնասիրել բոլոր բնական ազդանշանները, դրանք արհեստականի տեղ չդնելու համար: Օրինակ, երբ 1967 թ. անգլիական ռադիոաստղագետները հայտնաբերում են առաջին, այսպես կոչված՝ բաբախիչը, որն անհավատալի մեծ ճշտության պարբերականությամբ ռադիոիմպուլսներ էր արձակում, ապա նրանք խկույն ենթադրում են, թե ընդունում են ինչ-որ քաղաքակրթության ազդանշաններ և դրանք

անվանում են «փոքրիկ կանաչ մարդուկներ»: Գիտակցելով այդ «հայտնագործության» չափազանց մեծ կարևորությունը, նրանք մոտ վեց ամիս այն գաղտնի են պահում, որպեսզի համոզվեն, որ այդ հայտնագործությունը ճշմարիտ է: Այդ ընթացքում նրանք հայտնաբերում են երեք այդպիսի ռադիոաղբյուր ևս, որը բացառում էր դրանց արհեստական լինելը, քանզի շատ անհավանական է, որ Գալակտիկայի չորս տարբեր տեղերից ինչ-որ չորս քաղաքակրթություններ նույն տիպի ազդանշաններ հղեն մեզ: Հիմա արդեն մոտ 150 բաբախիչ է արձանագրված և հայտնի է, որ դրանք արագ պտտվող նեյտրոնային աստղեր են: Այնպես որ, դեռևս արհեստական ծագում ունեցող ազդանշաններ չեն հայտնաբերվել:

Այժմ պատկերացնենք, որ մեզ հաջողվել է արձանագրել տիեզերական աբոնենտի ուղարկած հաղորդագրությունը: Ինչպե՞ս վերծանել այն, ինչպե՞ս որևէ բան հասկանալ դրանից: Ի՞նչ լեզվով մեր «ավագ ընկերները» կփորձեն «խոսել» մեզ հետ: Թվում է՝ դա պետք է լինի մաթեմատիկայի լեզուն, այն լեզուն, որով այժմ «բանակցում» ենք հաշվիչ մեքենաների հետ, նրանց հանձնարարություններ տալիս և պատասխան ստանում կատարած աշխատանքի վերաբերյալ: Քաղաքակրթությունները կարող են իրենց դասընթացի սկզբում, ասենք, իմպուլսների ձևով հաղորդել զերոյից մինչև ինը թվերը: Այնուհետև, ասենք, «մեկ գումարած մեկ հավասար է երկուսի» արտահայտության միջոցով մեզ ցույց կտան, թե որոնք են «գումար» և «հավասար» նշանները: Նույն եղանակով կարելի կլինի սովորեցնել թվաբանական, ինչպես նաև երկրաչափական ու եռանկյունաչափական բոլոր հասկացությունները և ավելի բարդ մաթեմատիկական նշաններ, ինչպես, օրինակ՝ ինտեգրալ, դիֆերենցիալ և այլն: Դրանից հետո հեշտ կլինի հասկանալ ֆիզիկական և քիմիական պարզ բանաձևերը: Դրանց կհաջորդեն բանաձևերի միջոցով արտահայտած՝ մեզ արդեն հայտնի, ապա՝ դեռևս անհայտ բնության օրենքները:

Այսպիսով, կարող է թվալ, թե ընդունված հաղորդագրության վերծանումը բարդ խնդիր չէ: Սակայն այդ խնդիրը մենք շատ պարզեցված ներկայացրինք: Իրականում հաղորդագրությունը հազիվ թե սահմանափակված լինի միայն մաթեմատիկական նշաններով ու բանաձևերով: Կպահանջվեն նաև բառեր, առանձին արտահայտություններ՝ գիտական, տեխնիկական և սոցիալական հասկացությունների հաղորդման համար: Առայժմ այնքան էլ պարզ չէ, թե այդ ինչ կերպ կարելի է անել, նման բնույթի հաղորդագրությունն ինչպե՞ս «կարդալ»: Մաթեմատիկոսներն ու լեզվաբանները շարունակում են պրպտումներն այս ասպարեզում:

Ամփոփելով՝ կարելի է ասել, որ կան բավականաչափ նախադրյալներ՝ ենթադրելու, որ մենք միայնակ չենք Տիեզերքում: Հույժ անհավանական է թվում, թե անհուն Տիեզերքում կյանքի գոյացման, մտածող էակների և ապա քաղաքակրթության առաջացման բազում հնարավորություններից իրացվել է միայն մեկը և դրա արդյունքը մենք ենք՝ Երկրագնդի մարդկությունը: Եվ բնական է ենթադրել, որ գոյություն ունեցող այլ քաղաքակրթություններից կլինեն այնպիսիները, որոնք իրենց զարգացման աստիճանով մեզնից շատ ավելի բարձր կարող են լինել: Այդ դեպքում պարզապես աններելի կլինի չփորձել ընդունել նրանց մեզ հղած հաղորդումները: Չէ՛ որ դրանցում մեզ համար անգնահատելի տեղեկություններ կարող են լինել: Ուրեմն, արժե փորձել ազդանշաններ որսնել:

Շարադրվածից հետևում է, որ արտաերկրային քաղաքակրթությունների խնդիրը վաղուց դուրս է եկել ֆանտաստիկայի շրջանակներից և դարձել լուրջ, չափազանց կարևոր գիտական խնդիր. ընդ որում, այդ խնդիրը վերաբերում է գիտության չափազանց տարբեր բնագավառների՝ աստղագիտությանը (մոլորակների որոնում, ուր կարող է կյանք առաջանալ ու զարգանալ), կենսաբանությանը՝ իր տարբեր բաժիններով (կյանքի առաջացման ու զարգացման խնդիրներ, մտածողություն ու գիտակցության ունակության ձևավորում), պատմությանը, հնէաբանությանն ու հասարակագիտությանը (մտածող էակների, քաղաքակրթության զարգացման ուղիներ, գոյության տևողության հարց), կրկին աստղագիտությանը, ռադիոաստղագիտությանը, ռադիոֆիզիկային և էլեկտրոնիկային (արտաերկրային քաղաքակրթությունների հետ կապի հարցը), մաթեմատիկային, լեզվաբանությանը (ստացված հաղորդագրությունների վերծանում), տեխնիկային, մասնավորապես, հրթիռային տեխնիկային (միջաստղային թռիչքների, այլ մոլորակների այցելության հնարավորության քննարկում):

Մնում է հուսալ, որ երբևիցե մեզ, վերջապես, կհաջողվի կապ հաստատել (գործնականորեն՝ միակողմանի) Տիեզերքում որևէ տեղ բնակվող գիտակից էակների հետ: Ինչպես ասաց ակադեմիկոս Վ. Համբարձումյանը Բյուրականում կայացած արտաերկրային քաղաքակրթությունների հարցին նվիրված միջազգային գիտաժողովում, արտաերկրային քաղաքակրթությունների գոյության ապացույցը կհանդիսանա Երկրագնդի մարդկության գիտական մեծագույն նվաճումը:



# ԲԱՆՎՈՐ ԻՎԱՆԻ ՄԱՐՏԱԿԱՆ ՈՒՂԻՆ

ԼՐԱՑԱՎ ՄԵՐ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ հնագույն անդամ, պրոֆեսիոնալ հեղափոխական, Բաքվի հերոսական կոմունայի ակտիվ մասնակից, փառաբանված հայկական հրաձգային դիվիզիայի զինվորական կոմիսար Իվան Աբգարի Վարդանովի ծննդյան 90-ամյակը:

Ինձ վիճակվել է հանդիպել այդ հիասքանչ բոլշևիկի հետ քսանական թվականներին՝ մեր հարազատ մայրաքաղաք Երևանում: Որքան ես հիշում եմ, 1921 թվականի մայիս ամսին Ի. Ա. Վարդանովը նշանակվել էր մեր հայկական հեծյալ գնդի զինվորական կոմիսար: Գնդի անձնակազմն ակնհայտ ուրախությամբ ընդունեց այդ վաստակաշատ բոլշևիկի նշանակումը ստորաբաժանման զինվորական կոմիսարի պատասխանատու պաշտոնում:

Շուտով մեր գունդը, երիտասարդ հայկական կարմիր բանակի մյուս ստորաբաժանումների հետ միասին, ամենաակտիվ կերպով մասնակցեց Դարալագյազում և Զանգեզուրում դարանակալած դաշնակցականների հակահեղափոխական ուժերի ջախջախման օպերացիային: Այդ արշավի ժամանակ, հատկապես Զանգեզուրի անառիկ լեռներում բույն դրած դաշնակ մաուզերիստների դեմ մղված համառ մարտերում, գնդի հեծյալները շատ հերոսական սխրանքներ կատարեցին:

Երիտասարդ հայկական կարմիր բանակի զորամասերը, 11-րդ կարմիր բանակի ստորաբաժանումների հետ սերտ փոխգործողությամբ ձեռնարկած վճռական հարձակման շնորհիվ, որն ընթանում էր արագ թափով, անհամեմատ կարճ ժամանակամիջոցում ջախջախեցին դաշնակների գլխավոր ուժերը և նրանց մնացորդները դուրս շպրտեցին հայկական հողի սահմաններից:

Կարելի է համարձակորեն ասել, որ այդ օպերացիայում հեծյալ գնդի փայլուն մարտական գործողությունների հաջողության մեջ զինվորական կոմիսար Ի. Ա. Վարդանովը քանիցս վճռական դեր է խաղացել: Նրան միշտ տեսնում էինք ամենավտանգավոր տեղամասերում, որտեղ որոշվում էր գնդի վարած ահեղ մարտերի բախտը: Նա կուսակցական-քաղաքական աշխատանքի իր հմուտ կազմակերպմամբ և անձնական օրինակով ոգևորում էր գնդի մարտիկներին ու հրամանատարներին՝ արիաբար ու վճռականորեն պայքարելու դաշնակ մաուզերիստների դեմ: Հենց մարտերում դրսևորած իր հերոսության ու խիզախության շնորհիվ էր, որ հնագույն բոլշևիկ Իվան Աբգարի Վարդանովը նվաճեց մեծ հեղինակություն և արժանացավ գնդի անձնակազմի մեծ սիրուն:

Գնդի այդ փառավոր մարտական արշավից հետո Ի. Ա. Վարդանովը 15 տարի անընդմեջ ծառայեց Հայկական հրաձգային դիվիզիայի զորամասերում, զբաղեցնելով տարբեր պատասխանատու պաշտոններ: Լեգենդար Գայի և ականավոր զորապետներ ու կուսակցական աշխատողներ Լազյանի, Մելիք-Շահնազարովի, Հովսեփյանի, Սափրազբեկյանի, Աթոյանի և ուրիշների հետ միասին, նա շատ աշխատանք է ներդրել դիվիզիայի ստորաբաժանումների անձնակազմի մարտական և քաղաքական պատրաստականության բարձրացման գործում:

Այսօր մենք լիակատար հիմք ունենք հաստատելու, որ հնագույն բոլշևիկ, պրոֆեսիոնալ հեղափոխական Իվան Աբգարի Վարդանովի դաստիարակած սաները Հայրենական մեծ պատերազմի տարիներին համոզիչ կերպով ցույց էին տալիս մեծ Լենինի կուսակցությանն իրենց անհուն նվիրվածությունը, դրսևորում էին արիություն ու անվեհերություն հիտլերյան զավթիչների դեմ մղած մարտերում:

Հոկտեմբերյան մեծ հեղափոխության այդ սքանչելի մարտիկի ծննդյան 90-ամյա հոբելյանի օրը, մարտիկ, որն անձնուրացորեն պայքարել է քաղաքացիական պատերազմի տարի-

ների և աչքի ընկել իր մարտական խիզախություններով և որը մեծ ներդրում է ունեցել Հայկական հրաձգային դիվիզիայի կազմավորման ու ամրապնդման գործում, մենք, այդ դիվիզիայի վետերանները, գլուխ ենք խոնարհում նրա պայծառ հիշատակի առջև:

**Հ. ԲԱՂՐԱՄՅԱՆ**

Հայկական դիվիզիայի Լենինականի հեծյալ գնդի նախկին հրամանատար, Սովետական Միության մարշալ

*9 մայիսի, 1979 թ.*

ԻԲՐԵՎ ՍՈՒՅՆ ՀՈԴՎԱԾԻ բնաբան մենք ընտրել ենք Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Հ. Ք. Բաղրամյանի հիասքանչ խոսքերը, որ գրել է մեր խնդրանքով՝ Իվան Վարդանովի (Հովհաննես Վարդանյան) ծննդյան 90-ամյակի առթիվ: Ազատարար Հոկտեմբերի համար մարտնչած հեղափոխականների և քաղաքացիական կռիվների հերոսների աստղաբույլի մեջ արժանավոր տեղ ունի Իվան Վարդանովը:

...Ծնվել է 1888 թվականի մարտի 20-ին, չքավոր գյուղացու ընտանիքում: Տակավին տասը տարեկան էր, երբ թողեց հայրենի Շինուհայրը և տասնյակ համագյուղացիների հետ մեկնեց Բաքու: Դա մի ժամանակաշրջան էր, երբ միջնադարյան չնչին բերդաքաղաքից Բաքուն, Ապշերոնյան թերակղզու նավթի շնորհիվ, դարձել էր Ռուսաստանի արդյունաբերության առաջնակարգ կենտրոններից մեկը: Հզոր մագնիսի պես Բաքուն իրեն էր ձգում երկրամասի աշխատավոր մասսաներին: Զանգվածային արտագնացությունը քայքայում էր գյուղը: Միայն 1898—1899 թվականներին Զանգեզուրից Բաքու էր արտագաղթել ավելի քան 3.000 մարդ, այդ թվում Շինուհայրից՝ 130 մարդ (տե՛ս «Материалы по изучению быта государственных крестьян Кавказского края», Тифлис): Անմխիթարելի պայմաններում էին բանվորները, հատկապես նավթագործները: Շատ երկար էր աշխատանքային օրը, անչափ ցածր՝ վարձատրությունը, անմխիթար՝ բանվորների կուլտուր-կենցաղային և սանիտարական պայմանները: Մաքսիմ Գորկին, որ այդ ժամանակ եղել է Բաքվում, հետագայում գրել է. «Նավթահորերն իմ հիշողության մեջ մնացել են որպես մռայլ դժոխքի հանճարեղորեն ստեղծված պատկեր» (Собрание Сочинений, т. 17, стр. 113):



Երկրամասի պրոլետարական կենտրոնում՝ մազութի թագավորությունում, պատանի Իվանն աշխատանքի անցավ նավթահանքերում իբրև թիթեղագործ բանվոր: Աշխատում էր զոր ու գիշեր: Աստիճանաբար նա մերձեցավ հեղափոխության հորձանուտը: 1906 թվականի օգոստոսին տասնութամյա Իվան Վարդանովը մտնում է կոմունիստական կուսակցության շարքերը, ընդմիշտ իր բախտը կապում նրա հետ:

Ռուսական երեք հեղափոխությունների տարիներին նա Բաքվի պրոլետարիատի շարքերում արիաբար կռվել է բարիկադների վրա, ցարիզմի կողմից հալածվել, 1905 թ. գոտեմարտերում ծանր վիրավորվել: Իվան Վարդանովին գիտեին Ստ. Շահումյանն ու Պ. Ջափարիձեն, Մ. Ազիզբեկովն ու Ի. Ֆիոլետովը: Քանիցս նա կատարել է ՌՍԴԲԿ Բաքվի կոմիտեի պատասխանատու և դժվարին հանձնարարությունները, Բալախանու, Բիբի-Հեյբաթի նավթագործ բանվորների մեջ տարածել հեղափոխական գրականություն և թռուցիկներ[1]:

Իվան Վարդանովը Բաքվի ճանաչված ականավոր հեղափոխականներից էր, քաղաքական ցույցերի ու գործադուլների ակտիվ մասնակից, ընդհատակյա կոփված բոլշևիկ: Բաքվի բանվորների 1914 թվականի քաղաքական նշանավոր գործադուլի ժամանակ նա առաջին շարքերում էր, գործադուլային կոմիտեի անդամ: Նա ակտիվորեն մասնակցել է մեծ Հոկտեմբերի դրոշով երկրամասում սովետական կարգերի հաստատման համար ծավալված պայքարին, բանվորների մեջ տարածել Վ. Ի. Լենինի, կոմունիստական կուսակցության գաղափարները: 1917 թ. օգոստոսին Ի. Վարդանովն ընտրվել է գործադուլային կոմիտեի անդամ, ՌՍԴԲԿ Բիբի-Հեյբաթի շրջկոմի կազմում:

1918 թվականի Բաքվի մարտյան իրադարձություններին Վարդանովը բանվորական կարմիր գվարդիայի ջոկատներում, Սերգո Մարտիկյանի հրամանատարությամբ, մարտնչում է սովետական կարգերի հաղթանակի համար: Իր համագյուղացիների՝ Առաքել Ծատուրյանի, Ծատուր Մկրտչյանի, Արսեն Աղայանի, Հարություն և Մեսրոպ Թովմասյանների և այլոց հետ միասին Ստ. Շահումյանի գլխավորությամբ Վարդանովը պայքարել է հակահեղափոխական ուժերի դեմ:

Կոմունայի ծանր օրերին Կովկասի գործերի արտակարգ կոմիսար, Բաքվի ժողկոմխորհի նախագահ Ստ. Շահումյանի կյանքն ու գործը պաշտպանողներից էին Շինուհայր գյուղի Բաղրամանց տոհմի զավակներ Իվան Վարդանովը և Առաքել Ծատուրյանը:

Երբ թշնամու գնդակից զոհվում է Առաքելը, Իվանն իր խնամքի տակ է առնում նրա ընտանիքը՝ չորս անչափահաս երեխաներով: Եվ ահա երևանյան այն բնակարանում, ուր 1933 թվականի հունիսին հանդիպեցի նրան, ապրում էին նաև Առաքելի երեխաները, որոնց հայրական գորովով խնամել և կրթության է տվել Վարդանովը:

Բաքվի կոմունայի օրերին Ստ. Շահումյանի հանձնարարությամբ Ի. Վարդանովը մեկնել է Իրան՝ Էնզելի, Ռաշտ, մարտական առաջադրանք կատարել: Նա այնտեղից Բաքու է տեղափոխել ռուսական բանակին պատկանող գույքը՝ մեծ քանակությամբ ռազմամթերք, հանդերձանք ու պարեն, որն այնքան խիստ անհրաժեշտ էր հեղափոխական ուժերին՝ կարմիր գվարդիայի մարտական գործողությունների ընթացքում:

1918 թ. հունիսին Շահումյանի կարգադրությամբ Ի. Վարդանովն իր ընկերների հետ միասին Բաքվից տասը միլիոն ռուբլի է փոխադրել Թուրքեստանյան հեղափոխական ուժերի համար: «Գործուղվել եմ Տաշքենդ,— իր ինքնակենսագրությունում գրել է Վարդանովը,— մարտական ջոկատի հետ փոխադրել եմ 10 միլիոն ռուբլի դրամ»[1]: Այնուհետև Բագրատ Բորյանի հետ միասին մեկնել է Մոսկվա՝ կոմունային ցույց տրվող օգնությունն ուժեղացնելու համար:

Բաքվի կոմունայի ժամանակավոր պարտությունից հետո Ի. Վարդանովը շարունակում է ծառայությունը կարմիր բանակում՝ իբրև կոմիսար: Այդ ժամանակ մեծ էր զինվորական կոմիսարների դերը. որպես կանոն, նրանք հեղափոխական կոփվածքի բանվորներ էին կամ հեղափոխությանը նվիրված զինվորներ:

Քաղաքացիական կռիվների տարիներին Վարդանովը կարմիր բանակի շարքերում կռվել է Ցարիցինում, Աստրախանում, Հյուսիսային Կովկասում: Հիրավի, 1918 թվականի հուլիսի վերջերից մինչև նոյեմբերը Ի. Վարդանովը բազում քաջագործություններ է կատարել Ցարիցինում և Աստրախանում, Չյորնի Յարում, Դենիկինի դեմ մղած կռիվներում, հաջողությամբ իրականացրել է Ս. Մ. Կիրովի և Գ. Կ. Օրջոնիկիձեի մարտական առաջադրանքները:

1920 թվականի ապրիլին 11-րդ կարմիր բանակի շարքերում Վարդանովը մտել է Բաքու, ուր ծածանվել է Հոկտեմբերի ազատարար դրոշը: Կարմիր բանակի 28-րդ դիվիզիայի, իսկ այնուհետև 32-րդ հրաձգային դիվիզիայի կազմում նա մասնակցում է Ղարաբաղի և Զանգեզուրի ազատագրմանը, առաջ է շարժվում դեպի Նախիջևան:

1920 թվականի հուլիսի 31-ին 28-րդ հրաձգային դիվիզիային և նրան աջակցող ուժերին հրաման է տրվում կանխել Դրոյի հարձակումը Էնգելյուրդի վրա, ապահովել Գորիս—Ղարաքիլիսա—Նախիջևան ուղեմասի անվտանգությունը: Մարտական առաջադրանքը կատարողների մեջ էր և առաջին հեծյալ գունդը, որի զինվորական կոմիսարն էր Վարդանովը: Անձնական խիզախության ու արիության համար Վարդանովն արժանանում է բարձր հրամանատարության գովասանքին:

Կարմիր ռազմիկները հեղափոխական երգերով էին լցրել հայոց աշխարհը:

Երբ 1920 թվականի նոյեմբերի 29-ին Հայաստանում ճառագեց մեծ Հոկտեմբերի արևը, Իվան Վարդանովը Երևան մտած կարմիր բանակի գնդերից մեկի զինկոմիսարն էր: Իր զորամասով նա 1921 թվականի փետրվար—մարտ ամիսներին մասնակցել է նաև Վրաստանի ազատագրմանը, իսկ հետո՝ Հայաստանում դաշնակցության խռովության ջախջախմանը: «1921 թվականի փետրվար—մարտ ամիսներին իբրև 11-րդ կարմիր բանակի բաղ-

1 Տե՛ս ՍՄԿԿ Կկ-ին առընթեր ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4, ց. 4, գ. 1016, թ. 1—2:

1 ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ, ֆ. 4, ց. 4, գ. 1016, թ. 2:

բաժնի հրահանգիչ մասնակցել եմ ինտերնացիոնալ մարտական ջոկատների ստեղծմանը,— գրել է Ի. Վարդանովը,— գործուն մասնակցություն եմ ունեցել Վրաստանում սովետական իշխանության հաստատմանը, մենշևիկյան կառավարության ջախջախմանը: Բաթումն ազատագրելուց հետո մարտական ստորաբաժանումների հետ միասին վերադարձել եմ Հայաստան, մասնակցել դաշնակցության հրահրած հակաժողովրդական խռովության ճնշմանը, սովետական կարգերի ամրապնդման գործին»:

1921 թվականի մարտի վերջերին 11-րդ կարմիր բանակի զորամասերը փոխադրվում են Հայաստան (Ծուլավեր, Ղարաքիլիսա, Համամլու կայարանները)՝ դաշնակցական խռովության ճնշմանը մասնակցելու համար: Նրանք մշակում են մարտական գործողությունների հստակ պլան, ըստ որի թշնամու ուժերի վրա հարձակումը կատարվում է երկու տեղից. 18-րդ դիվիզիան՝ Ելենովկա—Ախտայից, իսկ 20-րդ դիվիզիան և հայկական միացյալ հեծյալ գունդը, որի զինկոմն էր Իվան Վարդանովը*, Սպիտակի լեռնանցքից դեպի Ապարան—Աշտարակ տանող հատվածով: Հաղթահարելով տեղանքի և ձմռան հարուցած անասելի դժվարությունները, կարմիր զորամասերն առաջ էին շարժվում (տե՛ս Ա. Ն. Մնացականյան, **Ռևոլյուցիան Անդրկովկասում և Ռուսաստանի պատվիրակները,** «Հայաստան» հրատ., 1961 թ., էջ 297—298):

Մի քանի օր անց Իվան Վարդանովը կարմիր բանակի երևանյան խմբավորման կազմում մարտերով մտավ Երևան: Սովետների հաղթական դրոշը նորից ծածանվեց մայրաքաղաքի վրա:

1921 թվականի հուլիսի առաջին օրերին Զանգեզուրը վերջնականապես ազատագրվում է: Հայաստանի ժողկոմխորհի նախագահ, Կովկասյան կարմիր բանակի ռազմահեղափոխական խորհրդի անդամ Ալ. Մյասնիկյանը 1921 թ. հուլիսի 18-ին կարմիր բանակի զորամասերի հրամանատար Վելիկանովին և զինվորական կոմիսար Ռադնեկին Զանգեզուրի ազատագրման առթիվ հղած ողջույնի հեռագրում նշել է. «Կոմունիզմի պատմական ոսկե գրքում մի էջ էլ ավելացավ, ուր մտցված են Երևանի զորամասի զինվորների փառապանծ անունները»: Դրանց թվին էր պատկանում և Իվան Վարդանովը, որը Զանգեզուրում 1920—1921 թվականներին ծավալված պայքարում բարի անուն էր վաստակել և որի մասին այնքան ջերմորեն է հիշում մարշալ Բաղրամյանը:

* Տե՛ս XI բանակի № 550 հրամանը:

Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանության հաստատումից հետո Իվան Վարդանովը զինվորական ծառայությունը շարունակում է Սովետական Հայաստանում: 1921—1924 թվականներին նա հայկական դիվիզիայի հեծյալ գնդի, իսկ հետո Քանաքեռի հրետանային արհեստանոցի զինվորական կոմիսարն էր: Այդ տարիներին կոփվեցին ու աչքի ընկան Հայաստանի կարմիր բանակի հայ առաջին հեծյալները, որոնց մեջ հատկապես առանձնանում էր վաշտի հրամանատար, այժմ Սովետական Միության մարշալ Հովհաննես Բաղրամյանը:

ՍՍՀՄ ռազմահեղափոխական խորհրդի 1923 թ. հոկտեմբերի 22-ի հրամանով Վարդանովը նշանակվում է Գ. Օրջոնիկիձեի անվան ադրբեջանական դիվիզիայի ռազմատնտեսական մատակարարման վարչության զինկոմ: Դիվիզիայի շտաբի պետը Բաքվի կոմունայի ճանաչված առաջնորդ, մեծ լենինյան Ստեփան Շահումյանի ավագ որդին էր՝ Սուրեն Շահումյանը, կոմունայի բանվորական կարմիր գվարդիայի գնդացրային ջոկատի նշանավոր հրամանատարը: Խիզախ կոմունարները համատեղ զինվորական ծառայության ընթացքում ավելի խորացրին իրենց բարեկամությունը, ուսանելի օրինակ դարձան բոլորի համար:

ՍՍՀՄ ռազմահեղափոխական խորհրդի 1925 թ. մարտի 26-ի հրամանով Իվան Վարդանովը դարձավ ԲԳԿԲ Լենինգրադի Ն. Գ. Տոլմաչևի անվան ռազմաքաղաքական ակադեմիայի ունկնդիր: Թեև նա սիստեմատիկ կրթություն չէր ստացել, բայց ակադեմիայի աչքի ընկնող, առաջավոր ուսանողներից էր: Համառ, անխոնջ աշխատասիրությամբ յուրացնում էր ուսման բավականին ընդարձակ և հագեցած ծրագրերը: Բարձր գնահատականի է արժանացել «Անդրկովկասի Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Հանրապետությունների ազգային զորամասերում կարմիր բանակայինների ինտերնացիոնալ դաստիարակությունը» թեմայով նրա դիպլոմային աշխատանքը: Իվանը բազմիցս հանդես է եկել ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականությանը նվիրված դասախոսություններով: Սիրում էր վերհիշել Բաքվի բանվորների ինտերնացիոնալ համերաշխ ընտանիքում անցկացրած օրերը: «Ինտերնացիոնալիզմը սովորել եմ Ստեփան Շահումյանից», իր ինքնակենսագրությունում 1932 թ. գրել է Ի. Վարդանովը: Նա հետևողականորեն պայքարել է տրոցկիզմի, հակալենինյան այլ խմբավորումների և բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների դեմ:

1925 թվականին հեծելազորի հրամանատարների Լենինգրադի որակավորման դասընթացներում էին սովորում Գ. Կ. Ժուկովը,



Կ. Կ. Ռոկոսովսկին, Վ. Ի. Չիստյակովը, Մ. Ի. Սավելևը, Ի. Ք. Բաղրամյանը և ուրիշներ, որոնց հետ մարտական ջերմ բարեկամություն էր հաստատել Ի. Վարդանովը: Լենինգրադի ռազմաքաղաքական ակադեմիայում նա քրտնաջան կերպով ուսումնասիրում էր մարքսիզմ-լենինիզմի տեսությունն ու պատմությունը, լենինիզմի հիմունքները, ակտիվորեն պաշտպանում բոլշևիկյան կուսակցության լենինյան գլխավոր գիծը: Նա մեծ ջանք էր գործադրում ռուսաց լեզվին տիրապետելու, Վ. Ի. Լենինի աշխատությունները բնագրով ուսումնասիրելու համար:

Ակադեմիան ավարտելու կապակցությամբ Ի. Վարդանովին տրված բնութագրում (1928 թ. մարտի 7), ասված է. «Իվան Աբգարի Վարդանովն ունի մեծ եռանդ և կամք, վերին աստիճանի համեստ է. թեև հանրակրթական կրթություն չի ստացել, ռազմական գործում իր բնածին ունակությունների շնորհիվ խորացել է, համառորեն և բարեխիղճ սովորել: Նա սրտացավ, շատ լավ ընկեր է, բոլորի կողմից հարգված, ընտրվել է կուրսի և համակադեմիական կուսկոմիտեների կազմում, ունի ռազմական ու հեղափոխական աշխատանքի պատկառելի ստաժ, կուսակցական-քաղաքական աշխատանքի հարուստ փորձ: Հանձնաժողովը գտնում է, որ Ի. Ա. Վարդանովին նպատակահարմար է օգտագործել ռազմական օկրուգների մասշտաբով աշխատանքում՝ իբրև քաղաքական,ռազմական տրիբունալի աշխատող, կամ կուսակցական հանձնաժողովներում: Լինելով ազնիվ, նվիրված և փորձված կոմունիստ, Վարդանովն իրեն լիովին կարդարացնի»:

Դրանից մի քանի տարի անց, 1933 թվականի հունիսի 14-ին Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Խանջյանի ստորագրությամբ Ի. Վարդանովին տրված բնութագրում հիշատակվում են նույն հատկանիշները և շեշտվում, որ նա կայուն և լավ ղեկավար է, հավատարիմ լենինյան, տաղանդավոր զինվորական:

Իվան Վարդանովը, այո՛, սիստեմատիկ կրթություն չէր ստացել: Նրա համալսարանը կյանքն էր, հեղափոխական ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպությունները և ինքնակրթությունը: Բնությունը նրան օժտել էր մեծ բանականությամբ, խոր տրամաբանությամբ և մարդկային լավագույն բարեմասնություններով: 1908 թվականին Բալախանիում գիշերային բանվորական հինգամյա դպրոց, իսկ հետո, ինչպես նշվեց, տարիներ անց, 1925—1928 թթ., ռազմաքաղաքական ակադեմիայի դասընթացներ: Ահա այն ուսումնական հաստատությունները, ուր սովորել է Վարդանովը: Հիրավի, նա խիկական ժայռակտորներից էր, ինչպես այն ժամանակ կոչում էին հավատարիմ լենինյաններին: Նա կրակոտ հռետոր էր, օժտված պոռթկուն և համոզիչ խոսքով, հրապարակագիր և պրոպագանդիստ: Զարմանք էին հարուցում նրա բացառիկ աշխատասիրությունը, սուր հիշողությունը, երևույթների մեջ խորանալու, ընդհանրացումներ անելու ունակությունը, նրա մեծ հումանիզմը: Իսկ երկաթե կա՜մքը, լեռնականին հատուկ հաստատակամությունն ու անվեհերությո՜ւնը...

Իվան Վարդանովն ակադեմիան հաջողությամբ ավարտելուց հետո վերստին աշխատանքի է նշանակվում Հայկական 76-րդ լեռնահրաձգային դիվիզիայում. սկզբում հրետանային գնդի զինկոմիսարն էր, իսկ հետո դիվիզիայի քաղբաժնի պետը:

Ավելի քան հինգ տարի նա անբասիր ծառայեց հայկական դիվիզիայում, այն զորամասում, որի ձևավորման ակունքների մոտ է եղել քաղաքացիական կռիվների հերոս, Հայաստանի ժողկոմխորհի առաջին նախագահ, ռազմժողկոմ Ա. Ֆ. Մյասնիկովը (Մյասնիկյան): Հայկական դիվիզիայի երախտավորներ Հայկ Բժշկյանի (Գայ), Հովսեփ Լազյանի, Գևորգ Սաֆրազբեկյանի, Հակոբ Ալթոյանի, Բագրատ Առուշանյանի, Իվան Վեքիլյանի, Հովհաննես Բաղրամյանի, Համազասպ Բաբաջանյանի, Արտակ Վարդանյանի, Աքանազ Կարապետյանի, Նվեր Սաֆարյանի, Սիմոն Զաքյանի, Նիկոլայ Հովհաննիսյանի, Գևորգ Չայլախյանի, Լևոն Կարապետյանի, Աշոտ Սարգսյանի, Ներսես Բալոյանի, Սարգիս Մարտիրոսյանի, Գրիգոր Օգանեզովի, Սարգիս Սարգսյանի և այլոց հետ միասին Իվան Վարդանովը մեծ ջանքեր է գործադրել հայկական լեռնահրաձգային 76-րդ դիվիզիայի մարտունակության բարձրացման գործում:

Հրետանային գնդում ծառայած տարիներին՝ 1929—1931 թվականներին, Իվան Վարդանովն իր տեսադաշտում էր պահում զինվորների գաղափարաքաղաքական դաստիարակության, նրանց կուլտուրական մակարդակի բարձրացման, կենցաղային պայմանների բարելավման հարցերը: Նրա ղեկավարությամբ մարտկոցներում ստեղծվում են լենինյան բարեկարգ անկյուններ, գնդի ակումբ-ճաշարան:

1930—1931 թվականներին Վարդանովը պարգևատրվել է ՀՍՍՀ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով, ՀՍՍՀ Կենտգործկոմի պատվոգրով, իսկ 1933 թվականին ներկայացվել է Կարմիր դրոշի շքանշանի:

Մեծ են Իվան Վարդանովի ծառայությունները կարմիր բանակի ազգային կադրերի պատրաստման, երկրի ռազմապաշտպանական հզորության ամրապնդման, մարտիկների բա-

ղաքական կոմման, Սովետական Հայաստանի սոցիալիստական վերափոխումների բնագավառում: Իվանը հաճախ էր կրկնում ռուս հանճարեղ զորավար Ա. Վ. Սուվորովի թևավոր խոսքերը. «Դժվար է ուսուցման ժամանակ, հեշտ՝ մարտում»: «Գլուխդ բարձր պահիր», պահանջում էր Իվանը զինվորից: «Եթե զինվորը գլխիկոր է քայլում,— ասում էր նա,— նշանակում է ֆիզիկապես լավ չի կոփվել: Հարկավոր է մշտապես մարզվել»:

Հայկական դիվիզիայի ողջ անձնակազմը, հրամանատարական և քաղաքական աշխատողների ղեկավարությամբ, ակտիվորեն մասնակցում է հայ գյուղի սոցիալիստական վերակառուցման, գյուղատնտեսության կոլեկտիվացման աշխատանքին: Իվան Վարդանովն առաջավորների շարքերում էր: Բանակայիններից ստեղծված տասնյակ բրիգադներ գյուղում շեֆական բեղմնավոր գործունեություն ծավալեցին, զորացրված մարտիկներն իրենց ընտանիքներով առաջինն արձագանքեցին համատարած կոլեկտիվացման լոզունգին, դարձան կոլտնտեսականներ, հետևողական պայքար մղելով դասակարգային թշնամու դեմ: Սովետական Հայաստանի տարեց կոլտնտեսականները մինչև օրս սիրով են հիշում Իվան Վարդանովին, կոլտնտեսային կարգերի ջերմ ջատագովին:

1933 թվականի կեսերին Իվան Վարդանովը կարմիր բանակի գլխավոր քաղաքական վարչության կողմից նշանակվում է Սումի Մ. Վ. Ֆրունզեի անվան հրետանային դպրոցի զինկոմիսար, ուր աշխատում է մինչև 1935 թվականի հունիսը: ՍՍՀՄ պաշտպանության ժողկոմատի նույն թվականի հունիսի 3-ի հրամանով նա անցնում է ԲԳԿԲ հրամկազմի վարչության տրամադրության տակ: Որոշ ժամանակ անց Իվան Վարդանովը նշանակվում է Ուկրաինայի կոմերիտմիության անվան Սևծովյան նավատորմի առափնյա պաշտպանության հրետանային ուսումնարանի կուսկազմակերպության հանձնաժողովի պատասխանատու քարտուղար (նախագահ): 1937 թվականի մայիսի 19-ին Սևծովյան նավատորմի կուսակցական կոնֆերանսը Ի. Վարդանովին ընտրում է Սևծովյան նավատորմի կուսակցական հանձնաժողովի կազմում:

Այստեղ, Սևաստոպոլում, ծովայինների շրջանում Վարդանովն իր հեղափոխական եռանդն ու կորովը, ռազմական գիտելիքներն ու փորձը, քաղաքական-կուսակցական աշխատողի տաղանդն ամբողջությամբ նվիրաբերում է հայրենիքին, բարձր պահում լենինյանի վսեմ կոչումը:

ՍՍՀՄ պաշտպանության ժողկոմատի 1937 թվականի հոկտեմբերի 11-ի հրամանով Վարդանովին շնորհվում է գնդի կոմիսարի զինվորական կոչում:

Իվան Վարդանովը բազմիցս ընտրվել է կուսակցական, սովետական և զինվորական ղեկավար մարմիններում: 1923 թվականին նա ընտրվել է Բաքվի սովետի անդամ, 1926—1928 թթ.՝ Լենինգրադի Ն. Գ. Տոլմաչևի անվան ռազմաքաղաքական ակադեմիայի կուսկոմիտեի անդամ, 1928—1935 թվականներին Հայաստանի կենտրոնական գործադիր կոմիտեի անդամ, իսկ Հայաստանի կոմկուսի VIII համագումարում ընտրվել է Հայաստանի կոմունիստական կուսակցության Կենտկոմի և բյուրոյի անդամ:

Ի. Վարդանովի կյանքի ու գործունեության վերաբերյալ հարուստ նյութ են ծառայում դիվիզիայի ստորաբաժանումներին տրված հրամանները ու հրահանգները, «Կարմիր զինվորի» էջերում հրապարակված բաց նամակները ու հոդվածները: Դրանցում միաժամանակ արտացոլված են Հայկական դիվիզիայի կազմավորման ու մարտունակության բարձրացման գործում Ա. Մյասնիկյանի, Գ. Օրջոնիկիձեի, Ս. Կիրովի, Ա. Եգորովի, Ս. Պուգաչովի, Ա. Կորկի, Բ. Կուզնեցովի և այլոց մատուցած ծառայությունները, բոլոր նրանց, ովքեր ուժ ու եռանդ չեն խնայել սովետական ազգային զորամիավորումների մարտունակության բարձրացման, ինտերնացիոնալ դաստիարակության ու համախմբվածության գործում: 1929 թվականին, լինելով կուսակցության զտման երևանյան հանձնաժողովի նախագահ, Ի. Վարդանովը մեծ հոգատարություն էր ցուցաբերում կուսակցության շարքերի լենինյան միասնության պահպանման նկատմամբ:

Իվան Վարդանովը մարտիկներից, հրամանատարներից, քաղաշխատողներից պահանջում էր անդուլ կերպով տիրապետել մարքսիզմ-լենինիզմի հիմունքներին, ուսումնասիրել բոլշևիզմի տեսությունն ու պատմությունը, մերկացնել բուրժուական գաղափարախոսությունը, բարձրացնել հեղափոխական զգոնությունը, վառոդը միշտ չոր պահել: Յուրաքանչյուր հրամանատար ու կարմիր բանակային պարտավոր է բոլշևիկորեն պայքարել դիվիզիայի ռազմաքաղաքական ուսուցման, բոլշևիկյան տեմպերի համար, բարձր պահել հայ ժողովրդի պատիվը,— ասում էր Իվան Վարդանովը: Նա խնդիր էր դնում հարստացնել կարմիր բանակի հերոսական ավանդույթները: «Մեր ուժը,— ասում էր նա,— աշխատավոր մասսաների դասակարգային համախմբվածության և գիտակցականության մեջ է: Հարկավոր է կատարելապես տիրապետել ռազմական տեխնիկային, պատրաստ լինել գալիք մարտերին» («Խորհրդային Հայաստան», 23 փետրվարի, 1932):



Իվան Վարդանովը որոշակի ավանդ ունի 76-րդ հայկական լեռնահրաձգային (հետագայում Կ. Ե. Վորոշիլովի անվան կարմրադրոշ, իսկ 1942 թ. նոյեմբերից՝ 51-րդ գվարդիական) դիվիզիայի սխրանքներում: Մեծ Հայրենականի տարիներին դիվիզիան պարգևատրվել է Լենինի շքանշանով, Գերագույն գլխավոր հրամանատարի հրամանով կոչվել է Վիտեբսկյան, բազում քաջագործություններ կատարել ստալինգրադյան դյուցազնամարտերում, սովետական ժողովրդի պատմական մեծ հաղթանակի գործում: Դիվիզիայի 25 ռազմիկներ արժանացել են Սովետական Միության հերոսի կոչման, 19.141-ը պարգևատրվել են շքանշաններով ու մեդալներով: Դիվիզիայում տարբեր տարիներին ծառայած զորահրամանատարներից չորսը դարձել են ռազմաճակատի մասշտաբով պատասխանատու աշխատողներ, այդ թվում՝ Սովետական Միության մարշալ, Սովետական Միության կրկնակի հերոս Ի. Ք. Բաղրամյանը, զրահատանկային զորքերի գլխավոր մարշալ, Սովետական Միության հերոս Հ. Խ. Բաբաջանյանը, քսանը՝ բանակի, ութը՝ կորպուսի, իսկ 70-ը՝ դիվիզիայի մասշտաբով պատասխանատու աշխատողներ: Դիվիզիայի սաներից ավելի քան 50-ը դարձել են գեներալ, 200-ը՝ գնդապետ (տե՛ս «Բանբեր Հայաստանի արխիվների», № 3, 1976, էջ 5, 262):

Ի. Վարդանովը թեև շուրջ 15 տարի կադրային զինվորական էր, ավարտել էր ռազմաքաղաքական ակադեմիան, սակայն առաջվա պես ընկերների շրջանում կոչվում էր բանվոր Իվան, դրանից նա իրեն շոյված էր զգում: «Զինկոմ Վարդանովն իր ազնիվ բնավորությամբ մնացել էր Բաքվի հին նավթագործ բանվոր Իվանը,— գրել է հայկական դիվիզիայի վետերան Մկրտիչ Գույլյանը:— Նա շատ համեստ էր, հարգված, կենսախինդ, բանվորական կառքին նստած առաջ գնացող, կառավարության ու կուսակցության բոլոր ղեկավար օրգաններում ճանաչված ու սիրված»[1]:

Հեղափոխական փոթորիկների և քաղաքացիական պատերազմի բովով անցած, սոցիալիստական շինարարության դժվարություններն ապրած վետերանի կյանքի թելը կտրվեց 1939 թ. դեկտեմբերի 17-ին, Թիֆլիսում: Իվան Վարդանովը մինչև կյանքի վերջն անբասիր ծառայեց հայրենիքին, սովետական ժողովրդին ու նրա զինված ուժերին:

Ի. Վարդանովը կուսակցության ու ժողովրդի պանծալի զավակն էր: Նրա մասին հիացմունքով են խոսում բոլոր նրանք, ովքեր ծառայել են նրա հետ, վայելել նրա հոգատարությունը: Գեներալ մայոր, Սովետական Միության հերոս Ասքանազ Կարապետյանի վկայությամբ՝ Իվանը պրոֆեսիոնալ հեղափոխականի տիպար էր: Նրան հատուկ էր բանվորական շիտակությունը, ընկերասիրությունը, աշխատասիրությունը, նվիրվածությունը, կարգապահությունը, հայրենասիրությունը:

Գեներալ Նվեր Սաֆարյանն ականատեսով է հիշում զինկոմ Վարդանովին՝ զինվորների հոգատար հորը, նրան, ով, եռանդ չխնայելով մարտիկների ռազմաքաղաքական դաստիարակության համար, բարի անուն է թողել: «Իվանը մեծ ինտերնացիոնալիստ էր,— ասում է Ն. Սաֆարյանը,— փորձված կուսակցական-քաղաքական աշխատող, հմայիչ մարդ: Նա վայելում էր զինվորների, ընկերների, աշխատավորության սերն ու հարգանքը»:

Իվան Վարդանովի կյանքը նման էր լայնահուն գետի: Նա ապրեց ընդամենը 50 տարի: Բայց անցավ մաքառումներով լի, երկար ու իմաստավորված ճանապարհ:

**Խ. Հ. ԲԱՐՍԵՂՅԱՆ**
**Պրոֆեսոր**

[1] *ՀՍՍՀ ՀՀԿՊԱ., ֆ. 688, ց. 3, գ. 27, թ. 19:*

# ՆՎԻՐՈՒՄ

Անդրանիկ Յայլոյանը կռվի դաշտից տուն չդարձավ: Հաղթանակը Անդրանիկի ու նրա մարտական ընկերների տաք ու կենսատու արյունով իմաստավորվեց, մայրերի, քույրերի խիզախումներով, արցունքով ու քնքշությամբ սրբագործվեց:

Անդրանիկը գյուղական սովետի գործադիր կոմիտեի նախագահ էր: Լուսաղբյուր գյուղի մարդիկ նրան շատ էին սիրում, այդ սերն այսօր գյուղում դարձել է մի տեսակ պաշտամունք, Անդրանիկը՝ հայրենասիրության չափանիշ և ամեն անգամ իրենց որդիներին բանակ ճանապարհելիս, լուսաղբյուրցիները հիշում են Անդրանիկ Յայլոյանին, նրա հետ հերոսաբար զոհված մյուս համագյուղացիներին...

Մարդիկ հիշում են Անդրանիկի բանակ մեկնելու փոթորկալից ժամանակը, երբ հայրենիքը վտանգի մեջ էր, օգնության էր կանչում իր որդիներին ու դուստրերին:

— Գյուղում տղամարդ չմնաց,— ասաց Անդրանիկը,— տիրություն արեք, լավ պահպանեք գյուղը:

...Անդրանիկին բանակ էին ճանապարհում արտասվալից աչքերով կանայք ու աղջիկներ, նրանց հետ և մի կոմերիտուհի, որ նոր էր ավարտել միջնակարգ դպրոցը. կոլտնտեսության կոմերիտական կազմակերպության քարտուղարն էր նա՝ Աղունիկը:

Գյուղը Աղունիկին ընտրեց գյուղսովետի գործկոմի նախագահ:

Գրասենյակ գնալուց առաջ նա քայլերն ուղղեց դեպի տուն: «Տեսնեմ հայրս ի՞նչ կասի»:

Երկաթուղային Սարգիսը լսեց աղջկան և՝

— Է՜, ի՞նչ ասեմ, լուսահոգի հայրդ ուզում էր քեզ բարձրագույն կրթության տալ...

Աղջիկը մի պահ ոչինչ չհասկացավ: Ինչպե՞ս...

— Ինչպե՞ս, ուրեմն... հայրս...

— Տասնյոթ տարի առաջ... նրա հիշատակին հավատարիմ մնալու համար հարկավոր է ճիշտ ապրել...

Սարգիսը նրա հորեղբայրն էր...

— Այդպե՜ս... հարկավոր է ճիշտ ապրել...— մի կերպ զսպելով հուզմունքը արտասանեց նա:

Եվ սկսվեց Աղունիկի աշխատանքային գործունեությունը: Անփորձ աղջիկը մի կերպ կարողացավ հաղթահարել առաջին դժվարությունները: Բայց պատերազմի դժվարությունները այնքա՜ն շատ էին: Ռազմաճակատից տխուր լուրեր էին հասնում գյուղ:



Գյուղում նորաբաց գարուն էր, բայց մանկալ չկար, սերմնացանները չէին վերադառնում... Ի՞նչ պետք է անեին թաց աչքերով մայրերը, աղջիկները, գյուղում մնացած ծերունիները: Անհրաժեշտ էր օգնության ձեռք մեկնել նրանց, արթուն պահել ամենքի հայրենասիրական ոգին, կուսկազմակերպության և կոլտնտեսության վարչության հետ այնպես կազմակերպել աշխատանքները, որ ինչքան հնարավոր է շատ հաց, միս և ձու ուղարկվեր ռազմաճակատ, ֆաշիզմի դեմ կռվող մեր մարտիկներին:

Լրջացել, ասես, մեկեն տարեց էր դարձել այդ օրերին Սպիտակի շրջանի Լուսաղբյուրի գյուղսովետի գործադիր կոմիտեի նորընտիր նախագահը: Եվ ահա շուտով, նրա անմիջական նախաձեռնությամբ, ռազմաճակատ տանող ռելսերի վրա կանգնեց գյուղատնտեսական մթերքներով բեռնված վագոնը, որի վրա խոշոր տառերով գրված էր. «Գործող բանակին, Սպիտակի շրջանի Լուսաղբյուր գյուղի աշխատավորների կողմից»: Հետո լուսաղբյուրցիները շատ այդպիսի վագոններ ուղարկեցին ռազմաճակատ, յուրաքանչյուր վագոնի հետ՝ իրենց սերն ու նվիրվածությունը, սրտի անկեղծ խոսքն ու կարոտը:

Ռազմաճակատի մեր մարտիկներին օգնելու այս լավագույն օրինակին հետևեցին շրջանի մյուս գյուղերի բնակիչները:

Հայրենասիրական այս շարժման նախաձեռնողը դարձավ Աղունիկ Ենգոյանը: Ամենուր օգնում, քաջալերում էին Աղունիկին, վստահում և հավատում նրան:

Մի օր կուսկազմակերպության քարտուղար Ստեփան Ղազարյանն իր մոտ կանչեց Աղունիկ Ենգոյանին:

— Աղջի՛կս, դու արժանի ես զինվորագրվելու կոմունիստական կուսակցությանը:

Աղունիկը դիմում գրեց: Դա 1942 թվականին էր: Նա միաժամանակ սրտամոտ, ոգևորող խոսքով, անձնական նվիրվածությամբ կարողանում էր մոբիլիզացնել ռազմաճակատին օգնող կոմերիտականների ուժերը: Նրանց անունից շաբաթը մի անգամ ծանրոց էր ուղարկվում ռազմաճակատ: Ամեն ինչ հայրենիքի պաշտպանության, ամեն ինչ ռազմաճակատի համար: Մերթ ձի նստած սլանում էր Աղունիկը շրջկենտրոն, լուծում հազար ու մի հարցեր, մերթ այնտեղից վերադառնում էր դաշտ, դաշտից՝ գրասենյակ, ուր մինչև ուշ գիշեր իր նըման հայրենասեր ջահելների հետ պլաններ էր կազմում, ծրագրում, մշակում... Հարկ էր ոչ միայն ռազմաճակատին օգնություն կազմակերպել, այլև օժանդակել զոհվածների ու հաշմանդամ դարձած մարդկանց ընտանիքներին:

Կոլտնտեսության վարչության նախագահ Եղիշե Հերթևցյանի հետ սկզբում ցուցակագրել էին այդպիսի ընտանիքներին, հետո համարյա ամբողջ գյուղի ընտանիքներն էլ ընդգրկվեցին պատերազմից տուժածների ցուցակում: Այնպես որ օգնել էր պետք բոլորին: Պետք էր հավաքել մինչև վերջին հասկը, տաքի հանել բոլոր ծերերին, կանանց ու աղջիկներին: Այդ օրերին համայնական դաշտերում հերոսական աշխատանք էին կատարում Սիրանուշ Գասպարյանը, Եղիազար Հակոբյանը, Արեգ Պապիկյանը, Գինո Մկրտչյանը և ուրիշներ:

Գերանդին կամ փոցխը ձեռքին, Աղունիկը միշտ նրանց հետ էր... Ցերեկը աշխատում, իսկ երեկոյան սեղանի առաջ նստած կարդում էր բանակից ստացված նամակները, հազար անգամ տխրում էր, ուրախանում, ոգևորվում: Ահա այդ նամակներից մեկը. «Սպիտակի շըրջանի Լուսաղբյուր գյուղից ռազմաճակատ ուղարկված ծանրոցներից մեկի մեջ մեր վաշտի զինվորների համար կար ավելի քան 100 զույգ բրդյա ձեռնոց: Դրանցից մեկի վրա կարմիր թելով ասեղնագործված էին «Ա. Ե.» տառերը. այն բաժին ընկավ ինձ: Հարգելի նախագահ, չգիտեմ՝ ո՞վ է այդ «Ա. Ե.»-ն, բայց անկեղծորեն խնդրում եմ՝ անսահման շնորհակալություն հայտնել նրան, այդ թանկագին նվերի համար: Այդ ձեռնոցներն ինձ կհաղորդեն արևոտ Հայաստանի հաճելի ջերմությունը:

Շարքային՝ Իվան Ֆեոդորովիչ»:

Նամակը կարդաց մի քանի անգամ, ասես, հարազատ եղբայրն էր գրողը: Նստեց ու թըղթին հանձնեց իր անկեղծ հուզմունքը. «Թանկագին Իվան Ֆեոդորովիչ: Ձեզ բաժին հասած ձեռնոցները ես եմ գործել: Ասեղնագործված տառերը իմ անվան և ազգանվան առաջին տառերն են: Ես ոչ միայն գյուղսովետի գործկոմի նախագահ եմ, այլև լավ ձեռնոց գործող: Հաջորդ ծանրոցով կուղարկեմ Ձեզ իմ գործած բրդյա հագուստը»:

Եռանկյունի ծրարը գնաց փոստարկղ, իսկ կարճ ժամանակ անց իր ռուս եղբորն ուղարկեց մի ձեռք տաք հագուստ: Ապա հաջորդեցին նամակները՝ ջերմ, անկեղծ: Մի օր էլ... վաշտից ստացված նամակում գրված էր, որ Իվան Ֆեոդորովիչը հերոսաբար զոհվել է մարտական առաջադրանք կատարելիս:

Ռազմաճակատի հետ այդպիսի նամակագրական կապ էին ստեղծել գյուղի շատ աղջիկներ, բազմաթիվ ծնողներ: Նման նամակներն այն ահեղ օրերի պայծառ հայելիներն են, որ տարիների հեռվից անդրադարձնում են սովետական ռազմիկների ու թիկունքում մնացածների հայրենասիրական ոգին ու գործերը:

...Իսկ Անդրանիկ Յայլոյանն այլևս նամակ չէր գրում... նա զոհվեց, որ զազիր թշնամին դուրս շպրտվի հայրենի հողի սահմաններից, որ օր առաջ մեր ողջ երկրում և հայրենի Լուսաղբյուրում թևածի խաղաղությունը... Աղունիկ Ենգոյանը շարունակեց նրա գործը և խոստացավ աշխատել այնպես, ինչպես պատվիրել էր Անդրանիկը— ջանալ բուժել պատերազմի վերքերը, զորավիգ լինել որբուկներին, շենացնել հայրենի գյուղը:

Պատերազմին հաջորդած յուրաքանչյուր տարի նոր ու բարդ խնդիրներ էր բերում իր հետ:

Մարդիկ աշխատում էին հոգնություննն ու հանգիստը մոռացած, ամեն ինչ անում էին բարեկեցիկ կյանք ստեղծելու համար: Երկրագործները դաշտ էին գնում արամամութին, զոր ու գիշեր, առանց դադարի կալում, բանում էր քամհար մեքենան: Կալվորները սայլերով պահեստ էին տանում հացահատիկը...

Կոլտնտեսության անասնապահներն օրերով մնում էին կանաչ սարերում, ամեն ինչ անում հայրենիքին որքան հնարավոր է շատ կարագ, կաթ, բուրդ ու միս հանձնելու համար:

Կարճ ժամանակամիջոցում Լուսաղբյուրի գյուղական սովետի գործկոմը շրջանում և հանրապետությունում ճանաչվեց որպես կուռ, գործունյա ու փորձառու կառավարման մարմին: ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահությունը, տեսնելով Աղունիկ Ենգոյանի նվիրական աշխատանքը, 1954 թվականին նրան հանձնարարեց նաև հարևան՝ Խնկոյան գյուղի գործկոմի ղեկավարությունը: Խելացի ու գործունյա ղեկավարը ջանում էր ժամանակին լուծել մարդկանց հուզող հարցերը, ապահովել տնտեսական ու կուլտուրական վերելքը: Լուրջ դժվարությունների հանդիպելիս Աղունիկին օգնում էին համապատասխան վերադաս կազմակերպությունները: Տարիներ առաջ նրան հանդիպեցի Սպիտակի շրջսովետի գործկոմի նախագահի աշխատասենյակում: Դեպուտատը եկել էր ընտրողների խնդրանքով. պահանջում էր Խնկոյան գյուղում հիմնել մեծ առակագրի կիսանդրին, տուն-թանգարանը. .

Օրեր անց շրջսովետի նստաշրջանը քննարկում էր կուլտուրայի օջախների շինարարության վիճակը շրջանի գյուղերում: Դեպուտատները ակտիվ մասնակցում էին մտքերի փոխանակությանը, խելացի առաջարկություններ անում: Ձայն խնդրեց նաև շրջսովետի դեպուտատ Աղունիկ Ենգոյանը: Նա նստաշրջանի մասնակիցներին հայտնեց խնկոյանցիների ցանկություն-խնդրանքը՝ Աթաբեկ Խնկոյանի ծննդավայրում կառուցել տուն-թանգարան, կանգնեցնել նրա կիսանդրին:

Նստաշրջանից գյուղ վերադարձավ լավ տրամադրությամբ: Գյուղական ակումբում շատերն էին սպասում նրա վերադարձին, և ահա միանգամից սկսվեց հարց ու փորձը:

— Ե՞րբ ենք սկսելու,— հետաքրքրվեց Աթաբեկ Խնկոյանի որդին՝ Վահե Խնկոյանը:

— Կստացվի, ընդառաջում են, այս տարի կսկսենք:

Շուտով գրնգացին մուրճերը: Շինարարներին օգնության եկան գյուղի դպրոցի աշակերտներն ու ուսուցիչները: Կարճ ժամանակամիջոցում վեր բարձրացան տուն-թանգարանի պատերը: Միաժամանակ բակում կանգնեցվեց առակագրի կիսանդրին:

Եվ, մեկ տարի անց, ամեն ինչ պատրաստ էր: 1964 թվականի օգոստոսյան մի պայծառ օր մեծ հանդիսավորությամբ տեղի ունեցավ տուն-թանգարանի և կիսանդրու բացումը: Ցնծության մեջ էր լեռների փեշին փռված Խնկոյան գյուղը: Կիսանդրու և տուն-թանգարանի բացմանը մասնակցող կուսակցական, սովետական աշխատողները, գրողները շնորհակալական ջերմ խոսքեր ասացին հատկապես գյուղական սովետի գործադիր կոմիտեի, Աղունիկ Ենգոյանի հասցեին: Բայց գյուղի հոգսերը դրանով չավարտվեցին: Ամբողջովին անբարեկարգ էր Խնկոյանից Լուսաղբյուր տանող ավտոճանապարհը, դժվարանցանելի: Խորապես ուսումնասիրվեց հարցը, քննարկվեց միացյալ գյուղսովետի նստաշրջանում: Մշակվեց կոնկրետ միջոցառումների պլան, որը պետք է իրագործվեր գյուղսովետի դեպուտատ Արտաշես Կիրակոսյանի ղեկավարած բարեկարգման և շինարարական մշտական գործող հանձնաժողովի ուժերով: Նստաշրջանին հաջորդեց գործնական աշխատանքը: Այժմ Խնկոյանից Լուսաղբյուր է ձգվում հարթ, լավ պատրաստված ճանապարհը և այնտեղ միանում Լենինականից Սպիտակ տանող մայրուղուն:

— Այդ ամենում իր ակտիվ, սրտացավ ու գործունյա ղեկավար մասնակցությունն ունի Աղունիկ Ենգոյանը,— ասում է գյուղսովետի գործկոմի նախագահը:

— Քանի ապրում ես, պիտի աշխատես ու լավ աշխատես,— հաճախ էր ասում Աղունիկը,— բարիք գործես մարդկանց համար: Իսկ եթե այդ ցանկության հետ ունես նաև հնարավորություններ, ուրեմն շատ բան կարելի է անել:

Ոչ ոքի համար գաղտնիք չէ, որ բոլորն էլ ուզում են ունենալ գեղեցիկ, հարմարավետ բնակարաններ, կուլտուրայի ակումբներ, գրադարաններ, խանութներ, կենցաղսպասարկման օբյեկտներ: Այս հարցերը, անշուշտ, անհանգստություն են պատճառում գյուղսովետի գործադիր կոմիտեին, շրջանային ու գյուղական սովետի դեպուտատներին: Նրանց ակտիվ գործունեության արգասիքն են Լուսաղբյուր գյուղի 500 աշակերտական տեղով դպրոցի հիանալի շենքը, մանկապարտեզը, բաղնիքն ու կենցաղսպասարկման նոր տաղավարը, գեղեցիկ հանրախանութը: Հանրախանութը շահագործման է հանձնվել վերջերս: Այն գտնվում է գյուղի կենտրոնում, Լենինական—Սպիտակ մայրուղու եզրին: Երկու փոքրիկ խանութները գաճաճներ թվացին լուսավոր ու գեղեցիկ առևտրի այս մեծ շենքի կողքին: Սակայն, դրանք ևս անհրաժեշտ էին: 225 տնտեսություն ունեցող գյուղի հարաճուն պահանջմունքները միայն հանրախանութը չէր կարող բավարարել:

— Ամեն ամիս վաճառում ենք 50 հազար ռուբլու տարբեր տեսակի ապրանքներ, այնքան, որքան երկու խանութները վաճառում էին երեք ամսում,— ասում է հանրախանութի վարիչ Հովհաննես Ղարագյոզյանը:

Լսում ես նրան և ուրախանում գյուղացու ապրելակերպում տեղի ունեցած մեծ վերափոխումներով: Նրա համար արդեն սովորական բան են հեռուստացույցը, սառնարանն ու գազը, հեռախոսն ու բաղնիքը: Սակայն գյուղը



մնում է գյուղ՝ իր նորոգ կյանքով, իր հին ու նոր բազմաթիվ պրոբլեմներով, խնդիրներով: Դրանք հուզում են յուրաքանչյուր գյուղացու, գյուղսովետի յուրաքանչյուր դեպուտատի:

Մի անգամ գյուղսովետի գործկոմի գրասենյակ տանող ճանապարհին ծերունազարդ Կարապետ Յայլոյանը Աղունիկ Ենգոյանի հետ զրուցում էր. նա հուզված ասում էր.

— Աղունիկ ջան, ախր, խմելու ջուրը շատ քիչ է...

Իրոք, գյուղում ընդամենը մի քանի ծորակներ կային: Նախագահն անմիջապես ծոցատետրում նշումներ կատարեց: Նշումներն անպատասխան չէին: Հինգ ամսում ջրի ծորակների թիվը 5-ից հասավ 22-ի: Շատ լուսաղբյուրցիներ աղբյուրներ ունեն իրենց տներում, բակերում: Քսաներկուերորդ ծորակը պատրաստեց շինարար Արմեն Մարուքյանը՝ գյուղի կենտրոնական մասում:

— Ամեն ինչ չէ, որ միշտ այսպես մարդկանց սրտով է լինում,— ասում է գյուղսովետի գործկոմի նախագահը և ցույց տալիս գրառումներով լի նոթատետրը:— «Ակումբը դեռևս հին ու խարխուլ շենքում է, հարկավոր է նորից դիմել շրջանային սովետի գործադիր կոմիտեին, ՀՍՍՀ կուլտուրայի մինիստրությանը...»: Նշված են նաև մյուս խնդիրների լուծման ուղիները:

— Միայն ընդհանուր պահանջմունքները բավարարելով չի կարելի գոհացնել մարդկանց,— ասում է Աղունիկը,— պետք է ջանալ ճիշտ զուգակցել մարդկանց ու պետության շահերը:

Վերջերս գյուղսովետի գործկոմի գրասենյակ եկավ Խնկոյանի կոլտնտեսության ոչխարաբուծական ֆերմայի անվանի հովիվ Ազատ Մկրտչյանը: «Ում դիմեցի, մերժեցին,— ասաց նա,— անասունները մնացել են առանց կերի»:

Ավելի քան 30 խոզ է պահում Ազատ Մկրտչյանը, 10 խոշոր և 30 մանր եղջերավոր անասուններ: Ամեն տարի պետությանն է վաճառում ավելի քան երկու տոննա միս:

— Դիմեցի շրջանային սպառողական կոոպերացիայի վարչություն,— պատմում է Աղունիկը,— Սպիտակի հացամթերքների կոմբինատ: Շուտով համակցված կերն առաքվեց: Ի դեպ, անասնապահության համար օժանդակ տնտեսություն ունեցողներ շատ կան թե՛ Խնկոյան, թե՛ Լուսաղբյուր գյուղերում: Գյուղական սովետի գործադիր կոմիտեն մտահոգվում է այդ տնտեսությունների ընդլայնմամբ, օգնում գյուղացիներին ո՛չ միայն կեր, այլև բարձր մթերատու անասուններ հայթհայթելու: Դրանով ձգտում ենք կենսագործել ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի առաջադրած խնդիրները: Պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևն իր զեկուցման մեջ անդրադառնալով հանրային անասնապահության զարգացման միջոցառումներին, նշեց, որ անհրաժեշտ է հոգալ կոլտնտեսականների, բանվորների ու ծառայողների անհատական տնտեսությունների մասին: Չէ՛ որ այդ տնտեսությունները պարենային ռեսուրսների համալրման կարևոր աղբյուր են: Եվ մենք ամեն կերպ ջանում ենք օգնել, որ նրանք կարողանան ընդլայնել իրենց հնարավորությունները, ավելի շատ միս վաճառեն պետությանը: Մեր գյուղերի աշխատավորները գյուղական սովետ են դիմում նաև անձնական, ընտանեկան ու այլ հարցերով, և մենք աշխատում ենք օգտակար լինել նրանց:

ՍՍՀՄ նոր սահմանադրությամբ ընդլայնվեցին սովետների իրավունքները ինչպես մյուս, նույնպես և տնտեսական բնագավառում: Այժմ պետական իշխանության տեղական մարմինները հետևողականորեն իրականացնում են իրենց ընձեռված սահմանադրական իրավունքները, գործնականորեն միջամտում տնտեսությունների էկոնոմիկայի զարգացմանը:

Մշտապես բարձրանում է տեղական սովետների դերը: ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում, ՍՍՀՄ IX գումարման Գերագույն սովետի տասներորդ նստաշրջանում քննարկվեց և հաստատվեց տնտեսական ու սոցիալական զարգացման 1979 թ. պլանը, որը գործունեության մարտական ծրագիր է բոլոր տնտեսությունների, ինչպես և գյուղական սովետների համար:

ՍՄԿԿ Կենտկոմի նոյեմբերյան պլենումում ընկ. Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառում խորապես համակողմանի վերլուծված են մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման անցած երեք տարիների արդյունքները, նշված են 1979 թ. պլանի կատարման ու գերակատարման, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների և տասներորդ հնգամյակի առաջադրանքների իրագործման ուղիները:

Առաջադրված խնդիրների լուծման գործում նոր ուղենիշ հանդիսացավ «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքների հետագա բարելավման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշումից բխող ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության՝ «Ժողովրդական դեպուտատների սովետների խնդիրների մասին» նոր որոշումը: Փաստաթղթում արծարծված հիմնական հարցերը վերաբերում են կոմունիզմ կառուցող մարդկանց քաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության միասնության ապահովմանը, խնդիր է դրված քաղաքացիներին առավել լայնորեն ներգրավել պետության ու հասարակության գործերի կառավարման ո-

լորտը. նրանց ուժերն ի սպաս դնել տնտեսական ու սոցիալական զարգացման պլանների կատարման, արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման վեհ նպատակին:

Նշված պահանջները կենսագործելու համար մշակվել է համապատասխան միջոցառումների պլան, գործի է դրվել գյուղսովետի երկարամյա փորձը, ակտիվ գործում են մշտական հանձնաժողովները, որոնցում ընդգրկված են տնտեսությունների ղեկավարներ, մասնագետներ, մանկավարժներ, ակումբների և գրադարանների վարիչներ, շարքային բանվորներ ու կոլտնտեսականներ:

— Տարիներ շարունակ ես մտածել եմ այն մասին և համոզվել, որ պետք է գյուղից վերև ջրամբար կառուցել: Մեզ մոտ անձրևներ շատ են լինում և հաճախ վարարում են գետակները: Հարկավոր է ամբարել այդ ջուրը և օգտագործել դաշտերի ոռոգման համար,— ասաց Աղունիկ Ենգոյանը:

Այժմ կառուցվում է Խնկոյանի ջրամբարը, որը տարեկան կուտակելու է 50 հազար խմ ջուր, որով կոռոգվի ավելի քան 60 հեկտար անջրդի հողատարածություն: Կոռոգվի նաև հացահատիկի, խոտաբույսերի ցանքատարածությունների զգալի մասը: Կոլտնտեսությունը կունենա ո՛չ միայն ավելի շատ շաքարի ճակընդեղ ու հացահատիկ, այլև կավելանան կերի պաշարները: Զգալի չափով կթեթևանան հանրային տնտեսության անասնապահների հոգսերը:

Գյուղական սովետի գործադիր կոմիտեն մի շարք միջոցառումներ է կիրառում նաև ձմռան շրջանում անասնապահների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման նպատակով, գործադրվում են հնարավոր բոլոր միջոցները՝ մսուրային շրջանում կատարելու և գերակատարելու անասնապահական մթերքների արտադրության ու պետվաճառքի առաջադրանքները, կենսագործելու ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումի որոշումները:

Աղունիկ Ենգոյանի աշխատանքային հարուստ կյանքն սկիզբ է առել 1942 թվականի պատերազմական ահեղ օրերին, անցել է փորձություններով լի տարիների միջով: Կյանքի այդ ճանապարհը շիտակ է, անշեղ, ազնիվ ու ճանաչում բերող:

Աննկատ չի մնացել աշխատանքի անխոնջ զինվորի վաստակը: Դրա վկայությունն են Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանը, «Կովկասի պաշտպանության համար» մեդալը, Հայկական ՍՍՀ Գերագույն սովետի ու ՀՍՍՀ Մինիստրների խորհրդի, ՀԼԿԵՄ Կենտկոմի պատվոգրերն ու այլ մեդալներ, պարգևներ, խրախուսանքներ:

Հոգեբուխ աշխատանքի ո՛չ միայն պայծառ վկաներն են այս պարգևները, այլև մեր կուսակցության ու կառավարության գնահատականը, հոգատարության վառ դրսևորումը հայրենիքի արժանավոր դստեր նկատմամբ: Աղունիկ Ենգոյանն աշխատում է երբեք պարտք չմնալ հարազատ պետությանը, հայրենի գյուղին ու մարդկանց: Ունի իր երջանիկ ընտանիքը: Ամուսինը՝ Հայրենական պատերազմի վետերան Գերասիմ Ավետիսյանը, ռուսաց լեզու և գրականություն է ավանդում Խնկոյան գյուղում: Աղջիկները՝ Գրետան, Վարդուհին ու Գեղեցիկը, ճանաչված մանկավարժներ են Լուսաղբյուր գյուղում: Պատրաստվում է մանկավարժ դառնալ նաև որդին՝ Հովհաննես Ավետիսյանը, որը նոր է ավարտել միջնակարգ դպրոցը: Այժմ նա աշխատում է հայրենի գյուղի կոլտնտեսության դաշտերում, բայց գիրքն ու տետրը, գրիչը Հովհաննեսի անբաժան ընկերներն են: Գերասիմ Ավետիսյանի օջախում երեկոյան հավաքվում են ընկերները, հարազատները, ուրախանում, հաղորդում միմյանց օրվա անցուդարձը:

Լուսաղբյուր և Խնկոյան գյուղերի յուրաքանչյուր օրն իմաստավորվում է խաղաղ ու երջանիկ կյանքով, լարված աշխատանքով: Այս ամենի մեջ անմաս չէ Աղունիկ Ենգոյանն ու նրա ղեկավարած գյուղական սովետի գործադիր կոմիտեն: Եվ այդ արդյունավետ մասնակցությունը նորանոր հաջողություններ է բերում գյուղին: Ահա ինչու ամեն անգամ, երբ խոսք է բացվում կնոջ հայրենասիրության, նրա ղեկավարման ձիրքի, անհողդողդ կամքի, մայրական վեհության ու քնքշալից հոգատարության մասին, հառնում է այդ համեստ, գործունյա կնոջ կերպարը, իբրև աշխատասիրության մարմնացում, պատրաստ հաղթահարելու ամեն դժվարություն: Ու մտածում եմ. թո՛ղ նայեն Աղունիկին մեր ջահելները, մատաղ սերնդի ներկայացուցիչներն ու սովորեն նրանից ապրել ազնիվ, աշխատել բոլորանվեր ու բարեխիղճ:

Վ. Ս. ԱԹԱՆԵՍՅԱՆ
Սպիտակի շրջանային «Լուսարձակ» թերթի պատասխանատու քարտուղար



# ԼԵՌ ԿԱՄՍԱՐԻ ԵՐԳԻԾԱՆՔԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

«Մոլություններու վրա ծիծաղիլն առաքինության ճամփուն մեջ գտնվիլ կենթադրե»:

Հ. ՊԱՐՈՆՅԱՆ

**ԴԺՎԱՐ Է ԳԵՐԱԳՆԱՀԱՏԵԼ** երգիծանքի դերը հասարակական կյանքում: Բոլոր ժամանակներում առաջավոր երգիծաբանները ծաղրել, ձաղկել են չարը, սոցիալական արատները, հաստատել լավատեսության, մարդասիրության սկզբունքները: Ճիշտ է նկատել Հեգելը, անելով, որ հին, ստրկատիրական աշխարհը չէր խորտակվում միայն մեծ թրակիացու՝ Սպարտակի, սրի հարվածներից: Նրա գահավէժ կործանմանը խթանել են Եզոպոսի առակները, Արիստոֆանի կատակերգությունները, Լուկիանոսի զրույցները, Յուվենալիուսի սատիրաները (տե՛ս Гегель, Эстетика, М., 1971, т. 3, стр. 601):

Սովետական գրականության սկզբնավորման առաջին իսկ օրվանից գեղարվեստական խոսքի համակարգում իր արժանի տեղը գրավեց երգիծանքը, որը հուսալի զենք դարձավ նոր կյանքի հիմնադրման ճանապարհին: Սովետական երգիծանքն իր բազմազան ժանրերով անողոքաբար մերկացնում էր հին աշխարհի մնացուկները, կրոնական նախապաշարմունքները, նացիոնալիզմը, բյուրոկրատիզմը, գաղափարական մոլորությունները, կենցաղային հետամնացությունն ու բացասական շատ այլ երևույթներ:

Սովետահայ գրականության մեջ իր խոր ակոսն է բացել նրա տաղանդավոր ներկայացուցիչներից մեկը՝ Լեռ Կամսարը, իր նուրբ ու սրամիտ կոմիկական աշխարհզգացողությամբ:

Ավարտելով ծննդավայրի՝ Վանի Երամյան դպրոցը, Լեռ Կամսարը (Արամ Թովմաղյան) մեկնում է Էջմիածին՝ Գևորգյան ճեմարանում սովորելու: Քահանա հայրը ցանկանում էր որդուն կրոնավոր դարձնել: Մինչ տարիներ անց աշխարհն ու մարդուն ջերմորեն սիրող երգիծաբանն ասել է. «...ինչպես ամբողջ ժամանակ ճենճերահոտ շնչող խոհարարը զզվում է իր եփած կերակուրից, այդպես էլ մենք զզվեցինք եկեղեցուց էլ, աստծուց էլ, նրա խոստացած արքայությունից էլ»:

Էջմիածնում սովորելու տարիները Կամսարի համար եղել են բավականին արգասավոր: Լինելով ընդունակ և ուսումնատենչ պատանի, նա խորապես յուրացնում է հայ ժողովրդի պատմությունը, հայ և ռուս գրականությունը, կարդում տարբեր փիլիսոփաների շատ գործեր: Արտաքուստ ինքնամփոփ, սակայն ներքուստ փոթորկոտ երիտասարդի համար Էջմիածինը շատ կողմերով ուսանելի էր: Այստեղ նա հաղորդակից է դառնում հասարակական-քաղաքական իրադարձություններին, որոնք լայն թափով զարգանում էին XX դարի սկզբին Ռուսաստանում, ինչպես նաև նրա ծայրամասերում, այդ թվում և Հայաստանում, ուր կապիտալիստական հարաբերությունների ներթափանցման հետևանքով փլուզվում էր և հայ գյուղաշխարհը: Քաղաքում և գյուղում առավել սրվել էին սոցիալ-տնտեսական հարաբերությունները: Համատարած կարիքը, աղքատությունն ու մարդկային տառապանքը ծանր էին ազդում Կամսարի հոգեկան աշխարհի վրա: Այնտեղ, Արևմտյան Հայաստանում, թուրք բռնավորի վայրագություններն ու սեփական «ազգայինների» շահատակությունները, այստեղ՝ Արևելյան Հայաստանում, ցարական չինովնիկների ու հայ աղաների անխնա շահագործումը ապագա երգիծաբանին մղում են դեպի ժողովրդական դեմոկրատիզմը, նրա հոգին համակում ատելության թույնով ընդդեմ բռնության ու շահագործման:

1908 թ. արդեն հասունացած, բավականին

կենսափորձ ձեռք բերած Լեռ Կամսարը, ավարտելով ճեմարանը, մտնում է հասարակական կյանքի ասպարեզ: Ժողովրդին ծառայելու մտադրությամբ նա վերադառնում է Վան և, որպես հայոց լեզվի ու գրականության ուսուցիչ, աշխատում տեղի կենտրոնական վարժարանում: Կամսարն ամբողջովին նվիրվում է գրական և մանկավարժական գործունեությանը, որպես լրագրող-երգիծաբան աշխատակցելով Վանի «Աշխատանք» թերթին: Սակայն երկար չի տևում նրա խաղաղ կյանքը...

1914 թ. պայթում է առաջին համաշխարհային պատերազմը՝ իր արյունահեղ շրջապտույտի մեջ առնելով հայ ժողովրդին: Վայրագ երիտթուրքերը, որոնք զանգվածաբար բնաջնջում էին արևմտահայությանը, հանդիպեցին Վասպուրական աշխարհի կատաղի դիմադրությանը: 1915 թ. ապրիլ—մայիս ամիսներին հերոսության, անձնազոհության ու հայրենասիրության օրինակ հանդիսացավ Վանի ինքնապաշտպանական գոյամարտը: Լեռ Կամսարն իր քաջարի ջոկատի գլուխն անցած, զենքը ձեռքին, մասնակցում է հայրենի քաղաքի հերոսական պաշտպանությանը:

1915 թվականի օգոստոսին Լեռ Կամսարն ընտանիքով բռնում է գաղթի ճանապարհը: Կրելով գաղթականի անողորմ ճակատագիրը, նա հաստատվում է Երևանում, ուր շարունակում է ընդհատված աշխատանքը՝ ուսուցչությունը և թղթակցում Երևանի, Թբիլիսիի, Բաքվի հայկական պարբերականներին:

Լեռ Կամսարի երգիծանքը ձևավորվեց հին ու նոր աշխարհի խաչմերուկներում, խտացնելով իր մեջ անցման շրջանի բնորոշ գծերը: Նախ՝ առաջին համաշխարհային պատերազմը և արևմտահայության ահավոր եղեռնը, ապա՝ դաշնակցության տիրապետությունն ու «հայկական հարցի» ստոր վաճառքը իմպերիալիստական դիվանագիտության կողմից և, վերջապես՝ հայ ժողովրդի ազգային վերածնությունը սոցիալիստական հեղափոխության շնորհիվ հիմնականում պայմանավորեցին տաղանդավոր երգիծաբանի ստեղծագործության թեմատիկան:

Լեռ Կամսարն աներեր հաստատակամությամբ էր մտնում հայ դասական երգիծանքի արահետները և, շարունակելով նրա կենարար ավանդույթները, ծիծաղի զենքով ծառանում հարազատ ժողովրդի արժանապատվությունը ոտնահարողների, կապիտալի հզոր արքաների, հասարակական ու սոցիալական չարիքի դեմ: Մարդու դեմ՝ մարդու համար— ահա երգիծաբանի գեղագիտական իդեալը, որին հարազատ է մնացել նա ստեղծագործական առաջին թոթովանքից մինչև կյանքի վերջը:

Լեռ Կամսարը կատարելապես ինքնատիպ գրող էր, հիանալի տիրապետում էր երգիծանքի ներբերանգներին: Նրա ստեղծագործական ընդհանուր համակարգում նկատվում է թերևս երկու կարևոր առանձնահատկություն: Նախ՝ նրա ծիծաղի գլխավոր թիրախները բացառապես օրվա այրող պրոբլեմներն են, պրոբլեմներ, որոնք չեն շրջանակվում իրականության որևէ կողմով, այլ ընդգրկում են հասարակական կյանքի գրեթե բոլոր ոլորտները: Ապա՝ Լեռ Կամսարի երգիծանքում իրականության կոմիկական ընկալման ելակետը գլխավորապես գաղափարականն է: Սալտիկով Շչեդրինի նման, կենցաղային մանրուքներն անգամ նրա կողմից դիտարկվել են քաղաքական ակնոցներով: Եվ, եթե նկատի առնենք այն հանգամանքը, որ Լեռ Կամսարի ստեղծագործական կյանքը համընկավ պատմական մի այնպիսի ժամանակաշրջանի հետ, երբ աշխարհավեր փոթորիկների մեջ խորտակվում էր հինը և նրա փլատակների վրա բարձրանում նորը՝ սոցիալիստական հասարակարգը, ապա միանգամայն հասկանալի կդառնան Լեռ Կամսարի երգիծանքի կարևորությունը և նրա բերած այն թարմ շունչը, որ բխում էր դարաշրջանի հեղափոխական ալեբախումներից: Հենց սրանով էլ Լեռ Կամսարի ծիծաղը դառնում էր նոր որակ՝ ինչպես թեմատիկ-գաղափարական առումով, նույնպես և արտահայտման եղանակներով:

Արդեն ճանաչված գրողի անուն ուներ Կամսարը, երբ 1920 թ. նոյեմբերին Հայաստանում հաստատվում են սովետական կարգերը: Հեղափոխությունը կյանքի է կոչում պատմության քառուղիներում մոլորված բազմաթիվ հայ մտավորականների, որոնք հայրենիքի ու ժողովրդի դառն ճակատագրից խոցված՝ դեգերում էին օտար ու անորոշ հորիզոններում: Տարբեր ուղիներով դեպի մուրհի ու մանգաղի երկիրն են գալիս ժողովրդի ազնիվ զավակները, մեծ եռանդով լծվում նրա սոցիալիստական առօրյային:

Լեռ Կամսարն այն գրողներից էր, որ անհաղորդ չմնաց սովետական հայրենիքի կանչին և անվերապահորեն «ընդունեց սոցիալիստական հեղափոխությունը, որպես պատմական մեծիմաստ օրինաչափություն, որպես հայ ժողովրդի ազատագրական դարավոր տենչերի մարմնավորման արտահայտություն», հաստատ համոզված, որ սովետական իշխանությունը բերելու է ազգային ու սոցիալական վերջնական ազատություն՝ կրակից ու փոթորիկներից հրաշքով փրկված իր ժողովրդին:

Հայրենասիրական այդպիսի գիտակցությամբ էլ 1921 թ. Թավրիզից, ուր հոսանքով նետվել էր փետրվարյան ավանտյուրայի օրերին, նա վերադարձավ հայրենիք և նվիրվեց



նրա շինարարական ու կուլտուրական, պատմական վերելքին: Շինարարական տենդով համակված հայրենիքը նրան հաղորդում է ստեղծագործական մեծ լիցք, ջերմություն, ինչպես նաև մարտական կրքոտություն ու անհաշտվողականություն այն ամենի հանդեպ, ինչը խորթ էր ու վնասակար նոր ժամանակների ոգուն: Սովետահայ մամուլի էջերում նա մերկացնում է հին աշխարհի վերջին մոհիկաններին՝ նէպմանին, քաղքենուն, տերտերին: Նրա երգիծանքը դասակարգային մարտահրավեր է՝ նետված բուրժուական աշխարհին:

1924 թ. լույս տեսավ Լեռ Կամսարի Անվավեր մեռելներ փոքրիկ ժողովածուն, որի մեջ զետեղված էին հոգևորականությանը և կրոնը մերկացնող սատիրական երկերը: 1926 թ. Հայպետհրատը լույս է ընծայում երկրորդ ժողովածուն՝ Ազգային այբբենարան խորագրով: Այդ երկու ժողովածուներն էլ հրատարակվել են պետական ու քաղաքական ականավոր գործիչ Սարգիս Լուկաշինի անմիջական նախաձեռնությամբ: Հանրապետության նախագահը շատ բարձր է գնահատել Լեռ Կամսարի «երգիծական փայլուն տաղանդը», ափսոսալով, որ նրա ֆելիետոններից քիչ են տպագրվում: Եվ, որպես երախտագիտության խոսք, Լեռ Կամսարը երկրորդ ժողովածուն նվիրեց իր մեծ ու անկեղծ բարեկամին՝ Լուկաշինին:

Լեռ Կամսարի երգիծանքում հետևողականությամբ մերկացվել են իմպերիալիստական խոշոր տերությունների հանցագործ քաղաքականությունը և բուրժուական դիվանագիտության ստոր մեքենայությունները աշխարհի տարբեր երկրներում: Լեռ Կամսարի այնպիսի գործեր, ինչպիսիք են՝ Համաշխարհային պատերազմը, Համաշխարհային բժիշկը, Միամյա քաղաքական հաշվետես, Դիվանագիտական զրույցներ և այլ քաղաքական ֆելիետոններ ու պամֆլետներ, հոյակապ վավերագրեր են, որոնցում ոչնչացնող քննադատության են ենթարկված բուրժուական պաշտոնական բարոյականության կեղծիքն ու այլանդակությունը:

Երգիծաբանը չի խնայել նաև բուրժուականազգայնական կուսակցություններին: Հատկապես սուր ծաղրի է ենթարկել դաշնակցությանը: Հայաստանը և նրա դաշնակիցները, Բժիշկները, Պառլամենտ, Թումբ, Կնոջ դերը հայ պատմության մեջ գործերը մեր օրերում ևս հնչում են իբրև ահեղ դատավճիռ այդ կուսակցության ազգակործան քաղաքականության դեմ:

20-ական թվականներին Կամսարի երգիծանքը պայքարի առաջին գծում էր, պայքար, որն ուղղված էր մեր երկրի արտաքին ու ներքին սև ուժերի դեմ: Այդ շրջանի ստեղծագործություններում նա համարձակ մերկացնում, ծաղրում էր սպիտակ էմիգրացիային՝ ցույց տալով այն խոշոր պատմական շրջադարձը, որ 1920 թ. նոյեմբերից հետո տեղի ունեցավ հայ ժողովրդի կյանքում:

Լեռ Կամսարի երգիծանքում բացառիկ կարևոր նշանակություն ունեն այն գործերը, որոնք նվիրված են մեր կյանքի ներքին թեմաներին: Ծաղրի ու ծիծաղի հզոր զենքով նա անողոք պայքարել է սոցիալիստական հասարակությանը խորթ երևույթների դեմ, դրանով իսկ հաստատելով մեր հասարակարգի պատմական դերը մարդկությանը կապիտալիզմի լծից ազատագրելու գործում: Այս շրջանում նրա ուշադրության կենտրոնում են սոցիալիստական բարոյականության խնդիրները, կուլտուրական հեղափոխությունն ու նոր մարդու ձևավորումը: Կամսարի ամենատես աչքից չեն վրիպել հեղափոխության ուժով կյանքի հետնաբակերը նետված նէպմանը (Մանուշին ձեռքը, 1925), չինովնիկի կեցվածքով բյուրոկրատը (Ֆիկտիվ պաշտոններու ռեալ պաշտոնյան, 1927), սիրո, ընտանիքի և բարոյականության հարցերը (Սիրո ուժը, 1925, Վեց ամիս տևող հավիտյան մը, 1935), աշխատանքային, կենցաղային թերությունները (Աշխարհագրական ամուսնություն, 1928, Երևանի փողոցները, 1928, Ֆաուստ, 1925) և այլն:

Ամեն ինչի նկատմամբ սրտացավությունը Լեռ Կամսարին տարել է փողոց ու գործարան, ընտանիք ու հիմնարկություն՝ երգիծական շոշափուկներով գտնելու և ծաղրելու, հասարակության դատաստանին ներկայացնելու իր դարն ապրածը, արատավորը, այլանդակը, երևույթներ, որոնք անհարիր են նոր, սոցիալիստական բարոյականության սկզբունքներին: Երգիծաբանը քաղաքացիական անհանդուրժողականության մթնոլորտ է ստեղծում մեր օդը շնչող, մեր սայլին նստած, բայց օտարի հոգեբանությամբ համակված մարդկանց շուրջ: Ինքը խորիմաստ բնորոշում է տվել, անվանելով նրանց տանու շորեր հագած մարդիկ, որոնց, եթե «Մի երեսին նայես՝ այնպիսի պրոգրես, որ չես կարող գլխարկդ չհանել, իսկ երկրորդ երեսի վրա այնպիսի հետադիմություն, այնքան հնի կոշտացած մնացուկ, որ չես կարող գլխարկդ չծածկել: Մի երեսում սոցիալիզմ, մյուսում՝ նեխված կապիտալիզմ» (Լեռ Կամսար, Մարդը տանու շորերով, էջ 266):

Ներքին թեմաներ արծարծելիս Լեռ Կամսարի երգիծանքի հիմնական նպատակն է արմատախիլ անել անցյալի մնացուկները, մաքրել փուշն ու տատասկը, հաղթահարել թերությունները՝ մի կողմից, հաստատել նորը, սոցիալիստական բարոյականությունը՝ մյուս կողմից:

Նա ևս կարող էր իր ծիծաղի մասին կրկնել Րաֆֆու հետևյալ խոսքերը. «Մենք այգեպանի պաշտոն ենք կատարում: Այգեպանը, երբ անխնա կտրում է ծառի չորացած, փտած ու ավելորդ ճղները, չէ մտածում նրանց տեղը մի նոր ճյուղ կպցնել. որովհետև գիտե, որ նորը ինքն իրան կբուսնի, եթե ծառի մեջ կյանք կա, ուժ կա և հողի մեջ արմատներ ունի» (Րաֆֆի, Երկեր, 1964, հ. 9, էջ 281):

Խորապես գիտակցելով երգիծանքի հասարակական նշանակությունը, Լեռ Կամսարը գրողի քաղաքացիական պարտքն է համարում բացահայտ պատերազմ հայտարարել սոցիալիստական հասարակարգին խորթ այնպիսի երևույթների դեմ, ինչպիսիք են՝ բյուրոկրատիզմը, պրոտեկցիոնիզմը, սպառողական հոգեբանությունը, կաշառակերությունը, կենցաղային այլասերվածությունը, որոնք բուրժուական աշխարհի բացիլներ են՝ ունակ նեխահոտ արձակելու, եթե ժամանակին դրանց դեմ չօգտագործվի սոցիալիստական պրոֆիլակտիկան՝ մեր ժողովրդի բարոյական հզոր ապտակը: Սովետական իշխանության առաջին տարիներին գրված մի շարք ֆելիետոններում (Ֆիկտիվ պաշտոններու ռեալ պաշտոնյան..., Հրահանգ մեկե ավելի պաշտոն ունեցողներու համար, Ջերմաչափ Գրիգորը, Հեքիաթի կցան և այլն) դիմակազերծված է «որոշ չափովի» սկզբունքը, որով տառապում են որոշ ղեկավար աշխատողներ. սրանք չեն էլ զգում մեր կյանքի հորդաբուխ զարկերակը: Այդպիսի մարդկանց մեջ է, որ նստած է, ինչպես Վ. Ի. Լենինն է ասում, կոմունիստ Օբլոմովը, որին պետք է երկար ժամանակ լվանալ, մաքրել, թափ տալ և քրքրել (տե՛ս Երկեր, հ. 33, էջ 261):

Բյուրոկրատիզմը բուրժուական հասարակարգի կատեգորիա է: «Գայլի պես կրկրծեի ամեն բյուրոկրատիզմ»— ամբողջ ձայնով բացականչել է Վլ. Մայակովսկին: Որքան էլ բյուրոկրատիզմի ոտքի տակից խլվել է սոցիալական հողը, այնուամենայնիվ, այն ինչ-որ տեղ զգացնել է տալիս իրեն, երևում իր խղճուկ համազգեստով: Լեռ Կամսարն անխնա ծաղրում է բյուրոկրատին, որն ամեն ինչ անում է որոշ չափով, գործարար աշխատանքը փոխարինում ճառերով ու բանաձևերով: Նա աջ ձեռքով գրում է, ձախով՝ պատասխանում:

Վաղ շրջանի ֆելիետոններից մեկում (Հեքիաթի կցան) պատին է սեղմված Երևանի գավգործկոմի աշխատակիցը. մարմնացած բյուրոկրատ, իր ասածի մի մարդ: Նրա աշխատանքային ոճը հարուցում է սովետական քաղաքացիների արդարացի զայրույթը: Նա աննշան մի հարցով քաղաքացուն այնքան է ըսպասեցրել, որ խեղճի կինը նույնիսկ «մարդուն կորած կկարծեր», իսկ «պզտիկ տղան սկսել էլ քալել ու իր ձեռքով կերակուր կուտեր»: Ավելի ուշ շրջանի ֆելիետոններից մեկում (Հոգեկան հիմնարկի ֆիզիկական պետը— 1956), բյուրոկրատիզմի նկատմամբ իր անհանդուրժողականությամբ Լեռ Կամսարը քարը քարի վրա չի թողնում հիմնարկի պետի աշխատանքային ոճից: «Մենք այդպիսի պետ մեր օրում չէինք տեսել: Այդ մարդը նայում է մեզ՝ ու չի տեսնում: Պողոսին Պետրոս է անվանում, Գարեգինին՝ Արտավազդ, Լևոնին՝ Սիմոն ու ոչ մեկին իր անունով չի կոչում» (Մարդը տանու շորերով, էջ 144): Բնագրից հեռացած այս պետը ոչինչ ընդհանուր չունի մեր բարոյական սկզբունքների հետ: Նա ապականում է մեր օդը: Նրա թթվաշ դեմքից փչում է բուրժուական չինովնիկի նեխահոտը: Միայն այդ «մեծատառ պետը» կարող էր բարբաջել իր աշխատակիցների մասին այսպես. «Ես ձեզ այս կերպ չէի պատկերացնում, բայց թե որ այդպես եք ստեղծված՝ ոչինչ, մի կերպ կտանեմ ձեզ»:

Հումանիստ երգիծաբանն իր ողջ ստեղծագործության մեջ, բուրժուական հոգեբանության դրսևորումների դեմ մղած անհաշտ գրական պայքարում հավատարիմ է մնացել Մ. Գորկու այն թևավոր մտքին, թե՝ «մեր մեջ կան չթաղված մեռելներ. դրանք դեռևս խմում են, ուտում, ման են գալիս փողոցներում և շնչում, բայց շրջապատը թունավորում են նեխման հեղձուցիչ հոտով» (Գրական-հրապարակախոսական հոդվածներ, Հայպետհրատ, 1949, էջ 85):

Լեռ Կամսարը մեկն էր այն գրողներից, որոնց ստեղծագործություններում երբեք չթուլացավ ծիծաղի մերկացնող ուժը ինչպես ազգային այբբենարանը չհասկացող, այնպես էլ տանու շորերով, գրաբար մարդկանց նկատմամբ: Այս տեսակետից շատ բնորոշ է նրա վերջին ժողովածուն՝ Մարդը տանու շորերով (1965) խորագրով, ուր ամփոփված են առավելապես այն ֆելիետոններն ու մանրապատումները, որոնցում ծաղրված է այն ամենը, ինչ խանգարում է մեր առաջընթացին: «Ոզնի» երգիծական հանդեսում համարձակ է հնչում Լեռ Կամսարի ձայնը «ներկված գաղափարներով» մարդկանց (Բարի խորհուրդ), բյուրոկրատների (Իմ օրատետրը, Հոգեկան հիմնարկի ֆիզիկական պետը), պրոտեկցիոնիզմի (Ժամանակ և տարածություն), իրենց պաշտոնական դիրքը չարաշահողների (Թատրոնի դիրեկտորը), ինքնամատակարարողների (Ինքնասպասարկում), կաշառակերության (Արմատական միջոցառումներ), առևտրական կանոնները խախտողների (Հերքում, Մուկ ու կատու), կենցաղային ու ամուսնական այլասերվածություն (Հետադարձ ամուսնություն, Էքստերիտորիալ ամուսիններ) և այլ վերապրուկների դեմ: Ճիշտ է, նշված ժողովածուում միշտ չէ, որ երգիծաբանին հաջողվել է մեր կյանքում տեղ գտած արատավոր երևույթներին օբյեկտիվ գնահատական տալ, երբեմն նա տարվում է մանրուքներով, լսվում է անտեղի նվնվոց (Հանդիպում, Ականջ, Կոմունալ զգվանք և այլն), սակայն Կամսարը միանգամայն իրավացի էր, երբ ո՛չ միայն տեսնում, այլև մեր հասարակության հրապարակային դատաստանին էր ներկայացնում այդ թերությունները, որոնք արմատախիլ անելու համար ոչ առանց հիմնավոր պատճառի Սովետական Հայաստան է հրավիրում Հ. Պարոնյանին (Պարոնյանը Հայաստանում): Խոսքն ուղղելով նրանց, ովքեր շրջանցելով սովետական օրենքները՝ չարաշահում են իրենց դիրքը, ունեն սպառողական հոգեբանություն, անմաքուր ձեռքեր, մեծ երգիծաբանի անունից նա բացականչում է. «Կողոպտել իմ նորաստեղծ հայրենիքի գա՞նձը... Օ՜, ես Հայաստան կուգամ և շանթեր կթափեմ անոնց գլխուն: Խնայել չգիտեմ» (Մարդը տանու շորերով, էջ 321):

Լավին՝ լավ, վատին՝ վատ ասելու իր գեղագիտական ելակետից Լեռ Կամսարը ժխտում է թերությունները կոծկելու, գործարար աշխատանքը «կից գրություն»-ներով, «հիշեցում»-ներով, «այսու հայտնվում է»-ներով, «ի պատասխան»-ներով փոխարինելու արատավոր երևույթները: Եթե մեկը իր տեղում չէ, ապա պետք է նրան հասկացնել (այն էլ շատ ազդու), որ սովետական օրենքները կարուսել չեն, որով նա պտտվի ցանկացած առանցքի շուրջը: Ո՛չ: Կարուսելացավով տառապող աշխատողին պետք է իջեցնել կարուսելից (Կարուսել) և համապատասխան բուժում նշանակել: Կամ եթե մեկը սովորել է համտես անել ժողովրդական բարիքը՝ սեփական գրպանին ծառայեցնելով վստահված պաշտոնը, պետք է բռնել նրա ձեռքը և ականջին շանթել սովետական օրինականության հզոր ապտակը:

Լեռ Կամսարի երգիծանքում նրբացուցիչ դեպք հանցանաց չկա մեր բարոյականությունը շրջանցողների նկատմամբ: Նրա ծաղրն ավելի քան սուր է, երբ պատկերում է սոցիալիստական սեփականության վրա ձեռք բարձրացնողներին (Մի փոքր պատմություն, Հիմնարկի մահը, Կոնգոն Երևանում և այլն): Դրանք բորբոսնած ուղեղով մարդիկ են, «ինդուկտիվ մեթոդ»-ով շարժվող մարդիկ, որոնք խաբեբա են, գող, որկրամոլ: Իր և յուրայինների խոհանոցին ծառայող և «մեղրի պուլիկի մոտ» նստած մարդկանց դեմ նրա երգիծանքում միայն մեկ դատավճիռ կա. կտրել, արմատախիլ անել նրանց մեր միջավայրից իբրև փտած, նեխած վերապրուկներ, իբրև մեր պայծառ օդն ապականողներ: Այս է թելադրում մեր կենսափիլիսոփայությունը, որն իր հոյակապ խտացումն է գտել Ալպյան հպարտություն (1957) վավերագրական նոթում: Երևանցիների անունից երգիծաբանը սովետական ժողովրդի օրինական հպարտությունն է արտահայտում պատմական խոշորագույն նվաճումների համար: Հակադրելով բուրժուական աշխարհին Սովետական Միությունը՝ Լեռ Կամսարը գրում է. «Բայց տեսեք, Ռուսաստանն առանց քաշվելու այսօր աջ ու ձախ կտրատում է իր գետերն ու ծովերը, իրար միացնում նավարկելի ջրանցքներով, ոռոգում է անջրդի անապատները և այլն:

Եթե աստված ապագայում բողոքի անգամ, ելնելով իր ստեղծագործական իրավունքից, այնուամենայնիվ, դատը չի շահի:

Դատարանը տեսնելով, որ աշխարհի այս մեկ-վեցերորդ մասն իր նախնական տեքստից այնքան է հեռացել, այնքան մշակվել ու բարեփոխվել, տեսնելով, որ նախկինից մի ստորակետ անգամ չի մնացել՝ կմերժի աստծո հայցը:

Այո՛, աստծո ստեղծագործությունն այնքան է մաշվել, որ, եթե, այնուամենայնիվ, նա պնդի իր ստորագրությունը դնել այս հեղինակության տակ՝ բանագող պիտի համարվի»:

Մեր իդեալների իրագործման այսպիսի բարձրունքներից էլ նա հարձակվում է այն ամենի վրա, ինչն օտար է, խորթ ու անհարազատ: Ցույց տալով կյանքի հակառակ կողմը և լույս աշխարհ հանելով արտաքուստ մանրուքներ թվացող, բայց քաղքենիական նեխահոտ արձակող երևույթներ, Լեռ Կամսարն ստիպում է խորհել, թե ինչու գոյություն ունեն դրանք և խորթ բարքերի կրողները, որոնց խղճուկ ձայնը դեռևս լսվում է մեր պայծառ կյանքի հետնաբակերում:

Ժամանակը չէ՞ արդյոք մեր բարոյական օրենքների ողջ հզորությամբ պատմության աղբանոցը նետել տանու շորերով, բայց օտարի կեցվածքով այդ մարդկանց:

Քաղաքացիական հենց այս համոզմամբ էլ Լեռ Կամսարի երգիծանքը շարունակում է մնալ մարտական դիրքերում:

Վ. Ե. ՄԱԿԱՐՅԱՆ
Բանասիրական գիտությունների թեկնածու

# ՀԱՆՈՒՆ ՆՈՐ ՄԱՐԴՈՒ ՁԵՎԱՎՈՐՄԱՆ

Հասարակությունը, պետությունը ուժեղ են մասսաների գիտակցականությամբ: Ինչպես նշված է ՍՄԿԿ XXV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ՝ մեր կուսակցությունն «իր մշտական հոգսն է համարում կոմունիստական գիտակցականության, կոմունիզմ կառուցելու պատրաստակամության, կամքի ու հմտության դաստիարակումը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 107): Նոր հասարակարգի կառուցման այս հույժ կարևոր խնդրի լուծման գործում կուսակցությունը չափազանց մեծ նշանակություն է տալիս մասսայական ինֆորմացիայի միջոցների ունեցած դերին:

Մասսայական ինֆորմացիայի միջոցների խնդիրն է ո՛չ միայն նպատակասլաց ու հետևողականորեն լուսաբանել կուսակցական, կոմերիտական, արհմիութենական և հասարակական այլ կազմակերպությունների, մանկավարժական, արտադրական կոլեկտիվների գործունեությունն այդ ասպարեզում, այլև ցույց տալ, թե գաղափարաքաղաքական աշխատանքն ինչպես է նպաստում տնտեսական խնդիրների լուծմանը:

Ծանոթանալով «Աշտարակ» շրջանային լրագրի համարներին, կարելի է հանգել այն հետևության, որ խմբագրության կոլեկտիվը լրագրային ամենատարբեր ժանրերով պարբերաբար անդրադառնում է նոր մարդու ձևավորման, աշխատանքային նոր հերթափոխի պատրաստման հարցերին, հետևողականորեն լուսաբանում այդ ասպարեզում շրջանային կազմակերպությունների, արտադրական կոլեկտիվների գործունեությունը:

Հատկապես ուշադրության են արժանի երիտասարդության գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության ասպարեզում լրագրի դրսևորած ակտիվությունն ու հետևողականությունը: Սա խիստ կարևոր խնդիր է, որի հաջող լուծմամբ հավասարապես շահագրգռված են պետությունը, հասարակությունը, աշխատանքային կոլեկտիվը, դպրոցը, ընտանիքը: Այսօր «ընտանիք-դպրոց-արտադրություն» շղթայում հավասարապես կարևոր է յուրաքանչյուր օղակի դերը, յուրաքանչյուր օղակ նոր մարդու ձևավորման պրոցեսում մշտապես կատարելագործվում է, առավել մեծանում է դրա ներդրումն այդ բնագավառում:

Դպրոցական նստարանից է ծավալվում նոր մարդու ձևավորման, աշխատանքային դաստիարակության պրոցեսը: Այդ հարցին էր նվիրված ուսուցիչների հունվարյան խորհրդակցությունը, ուր շրջանի մանկավարժները նշեցին, թե ինչ է կատարված «Հանրակրթական դպրոցների սովորողների ուսուցումը, դաստիարակությունը և աշխատանքի համար նրանց նախապատրաստումն է՛լ ավելի կատարելագործելու մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման կենսագործման բնագավառում: Այդ ամենին տեղեկանում ենք լրագրի 6-րդ համարում տպագրված ընդարձակ հաղորդումից: Շրջանի մի շարք գյուղերի դպրոցներում բացվել են ուսումնական արհեստանոցներ՝ հագեցած դպրոցական ժամանակակից սարքավորումներով, ամռան ամիսներին կազմակերպվում են արտադրական բրիգադներ, որոնք զգալիորեն նպաստում են շրջանի տնտեսական նվաճումներին: Սակայն բոլոր դպրոցներում չէ, որ վիճակը բարվոք է, կան նաև թերացումներ: Խորհրդակցությունում առաջարկվել է հաշվի առնել այս կամ այն մասնագիտության նկատմամբ շրջանի տնտեսությունների, հիմնարկ-ձեռնարկությունների պահանջները, անհրաժեշտության դեպքում երբեմն փոխել դպրոցների արտադրական-մասնագիտական թեքումը, ստեղծել ուսումնաարտադրական կոմբինատներ:

Ինչ խոսք, նշված միջոցառումները մասնագիտական կողմնորոշման հնարավորություն կընձեռեն աշակերտներին: Չէ՛ որ մոտ 3.000 կոմերիտականներ ու երիտասարդներ աշխատում են շրջանի դաշտերում, այգիներում, մեքենայական պարկերում, ֆերմաներում, արտադրական ձեռնարկություններում, շինարարական հրապարակներում: Անում է առողջ և ջահել աշխատավորների նոր սերունդ:

Սակայն մի շարք տնտեսություններ երիտասարդության նկատմամբ դեռևս պատշաճ ուշադրություն չեն ցուցաբերում. այդ է պատճառը, որ միջնակարգ դպրոցի շրջանավարտների զգալի մասը չի աշխատում և չի սովորում: Անդրադառնալով այս մասին (№ 132, 1978 թ.), լրագիրը նշում է, որ մասնագիտական կողմնորոշումը դպրոցականների անձնական գործը չէ, այն պետական, հասարակական կարևոր նշանակություն ունի: Չէ՛ որ այսօրվա աշակերտը վաղվա աշխատավորն է, կոմունիզմ կառուցողը: Պետք է ուղղություն տալ նրա նախասիրություններին, օգնել գտնելու և հաստատելու իր անհատականությունը: Լրագիրը ջանում է արձագանքել շրջանում մասնագիտական կողմնորոշմանը նպաստող յուրաքանչյուր միջոցառման, տարածել այն լավագույնը, որ կազմակերպվում է այդ բնագավառում (№№ 116, 117, 1978):

Ժամանակակից սոցիալ-տնտեսական կյանքի ակտիվ մասնակիցը կարող է լինել նա, ով լավ է տիրապետում մարքս-լենինյան տեսությանը, մեր կուսակցության քաղաքականությանը, գիտությունների նվաճումներին: Այդ իմաստով հանրահայտ է այն վիթխարի դերը, որ ունի աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցումը: Լրագիրը պարբերաբար տպագրում է հոդվածներ, թղթակցություններ, որոնցում լուսաբանվում է քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման դրվածքը:

Քաղաքական և տնտեսագիտական կրթության ուսումնական տարվա արդյունքների ամփոփմանն է նվիրված լրագրի 69-րդ համարի Քաղաքական ուսուցումը դարձնել ավելի կոնկրետ, գործնական ընդարձակ թղթակցությունը: ՀԿԿ շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Թ. Կարապետյանի հոդվածն ամբողջական պատկերացում է տալիս կուսակցական աշխատանքի այդ կարևոր բնագավառի մասին:

Ինչ խոսք, քաղուսուցումը պատշաճ մակարդակով վարելու համար մեծ է պրոպագանդիստի դերը: Լրագիրը, վերլուծական հոդվածներից բացի, Մեր պրոպագանդիստը խորագրի ներքո պարբերաբար ներկայացնում է շրջանի առաջավոր պրոպագանդիստներին, նրանց ուսանելի փորձը: Աշտարակի սովխոզի դիրեկտոր, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Հ. Սիմոնյանը անձնական փորձից գիտե, թե որքան կարևոր է, երբ քաղաքական ուսուցումը վարում են իրենք՝ տնտեսության ղեկավարները: Արտադրության հարցերին քաջատեղյակ պրոպագանդիստի համար ավելի դյուրին է քաղաքական ուսուցումը կապել տնտեսության խնդիրների հետ, օգնել ունկնդիրներին՝ հաջողությամբ կենսագործելու կուսակցության առաջադրած գաղափարաքաղաքական, տնտեսական պահանջները (№ 56):

Լրագրի մի այլ համարում (№ 63) ներկայացվում է գյուղտեխնիկայի Աշտարակի միավորման քաղդպրոցի ամփոփիչ պարապմունքի ընթացքը. պրոպագանդիստն է միավորման կառավարիչ Ն. Հեբոյանը: Ունկնդիրները կարողանում են տեսական հարուստ նյութը զուգորդել իրենց աշխատանքային տեղամասի հանգուցային պրոբլեմների վերլուծության հետ, ցույց տալ, թե անձամբ ինչպես են նպաստել աշխատանքային կարգապահության բարձրացմանը, նյութական ռեսուրսների խնայողաբար ծախսմանը: Նման բարձր մակարդակով են անցնում նաև Ոսկեվազի միջնակարգ դպրոցի տեսական սեմինարի ղեկավար, «Գիտելիք» ընկերության Ոսկեվազի դասախոսական խմբի 26 տարիների անփոփոխ նախագահ Լ. Գևորգյանի վարած պարապմունքները (№ 59): Հետաքրքրական է հրապարակված հարցաթերթիկը՝ քաղաքական ուսուցման, աշխատավորների տնտեսագիտական կրթության և արտադրության նվաճումների կապի վերաբերյալ (№ 57): Տեսական հարուստ գիտելիքների և պրակտիկ ակտիվ գործունեության համար նպատակային էջը ներկայացնում է ուսուցման ամենատարբեր օղակներում ընդգրկված ունկնդիրների պատասխանները: Նրանք նշում են, որ տեսական գիտելիքների յուրացումը մեծապես նպաստում է տնտեսական ու քաղաքական ինքնակրթության զարգացմանը, բարձրացնում աշխատանքային կարգապահությունը, պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ:

Դաստիարակչական աշխատանքի արդյունավետության բարձրացման նոր, հզոր խթան հանդիսացավ այդ գործի նկատմամբ կոմպլեքսային մոտեցման գաղափարի առաջադրումն ու համակողմանի հիմնավորումը կուսակցության XXV համագումարում, այսինքն՝ գաղափարական-քաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության սերտ միասնության ապահովումը՝ բնակչության տարբեր խմբերի յուրահատկությունների հաշվառմամբ:

Իրենց բազմազանությամբ աչքի են ընկնում Դաստիարակչական աշխատանքներում կոմպլեքսային մոտեցում խորագրի ներքո հրապարակվող նյութերը: Առավել նպատակասլաց և ներգործուն հոդվածում (№ 60) հանդես է եկել շրջսովետի գործկոմի կուլտուրայի բաժնի վարիչ Ալ. Դատումյանը: Գաղափարախոսական, դաստիարակչական աշխատանքների հաջողության գրավականը կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների, դպրոցների, կուլտուր-լուսավորական հիմնարկությունների աշխատանքների, մասսայական ինֆորմացիայի

միջոցների գործունեության կոորդինացումն է, նշել է նա՝ անդրադառնալով շրջանի կուլտլուսավորական հիմնարկություններին: Նրանց ձեռնարկած մի շարք միջոցներ դրական ազդեցություն են թողել աշխատավորների ստեղծագործական ակտիվության բարձրացման վրա, որի շնորհիվ հաջողությամբ կատարվում են ընթացիկ հնգամյակի սոցիալ-տնտեսական առաջադրանքները: Իրենց նպատակին են ծառայել բանավոր և ցուցադրական ագիտացիան, առաջավորների մեծարումը, նրանց փորձի տարածումը, գեղարվեստական ինքնագործունեության ելույթները, բազում հանդիպումները գիտության, արվեստի ու գրականության անվանի գործիչների հետ: Հոդվածագիրը նշել է նաև, որ, այդուհանդերձ, աշխատավորության գաղափարական, քաղաքական դաստիարակության բնագավառում դեռևս կան լուրջ թերություններ, որ շրջանի մի շարք կուլտուր-լուսավորական հիմնարկություններում (Բյուրականի, Ուշիի, Կարբիի, Օշականի) անբավարար է երիտասարդության շրջանում տարվող աշխատանքը, պատշաճ կերպով չի մասսայականացվում վարպետ-դաստիարակների հարուստ փորձը, հազվադեպ են կազմակերպվում մեծարման երեկոներ, հանդիպումներ արտադրության առաջավորների հետ:

Դաստիարակչական աշխատանքում կոմունիստական կուսակցությունն առաջնահերթ տեղ է հատկացնում մարդկանց աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի ոգով համակելուն: Լրագրի էջերում ակնարկների, դիմանկարների շարքի, հարցազրույցների և այլ հոդվածների միջոցով մեծարվում է աշխատավոր մարդը:

Բարձր բերքի վարպետը ակնարկը (№ 13), որի հեղինակն է Պ. Նազարյանը, Արայի սովխոզի առաջավոր այգեգործ Սարգիս Հարությունյանի մասին է: Նրա «ընտանեկան օղակը» բարձր բերք է ապահովել յուրաքանչյուր հեկտարից: Ակնարկում բավական հաջող են բացահայտված հերոսի քաղաքացիական դիրքորոշումը, գործի նկատմամբ սրտացավ վերաբերմունքը, նրա աշխատանքային ակտիվությունը:

Լրագրի էջերում իր հաստատուն տեղն ունի գիտահետազոտական աշխատանքի թեման: Շրջանային մամուլի ավանդական թեմատիկայում այդ նորույթի երևան գալը յուրովի թարմացնում և արդիական շունչ է տալիս ողջ լրագրին: Զգացվում է, որ խմբագրության ստեղծագործական կոլեկտիվը հետզհետե հմտանում է գիտական հիմնարկությունների գործունեության լուսաբանման դժվարին ու պատասխանատու աշխատանքում: Ուշագրավ է, օրինակ, Սովորում են աշխատանքում հոդվածը, որը նվիրված է ռադիոֆիզիկայի և էլեկտրոնիկայի գիտահետազոտական ինստիտուտի հատուկ կոնստրուկտորական բյուրոյի երիտասարդ կոլեկտիվին:

ՍՄԿԿ Կենտկոմի «Գաղափարախոսական, քաղաքական-դաստիարակչական աշխատանքի հետագա բարելավման մասին» որոշման մեջ ասված է. «Մասսայական ինֆորմացիայի օրգաններին հաճախ պակասում է առանձին աշխատավորների, ամբողջ աշխատավորական կոլեկտիվների լավագույն հասումները, առաջավոր փորձը կենդանի ու մատչելի ձևով ցույց տալու և պրոպագանդելու կարողությունը: Ընդ որում, այնպես ցուցադրելու, որ բացահայտվի այդ փորձի էությունը, որ դրանով շահագրգռվեն միլիոնավոր մարդիկ, որ այն օգնի դրա լայն գործնական տարածմանը»: Այս պահանջը խմբագրության կոլեկտիվին և թղթակցական ակտիվին պարտավորեցնում է է՛լ ավելի բովանդակալից և ուսանելի դարձնել առաջավոր փորձի լուսաբանումը:

Զարգացած սոցիալիստական հասարակարգի բուն էությունից է բխում կյանքի նկատմամբ մարդկանց ակտիվ դիրքորոշմամբ տոգորելու պահանջը: Մարդու գնահատման ճիշտ չափանիշը նրա կոմունիստական համոզմունքն է, աշխատանքային ու հասարակական ակտիվությունը, կոմունիստական բարոյականության սկզբունքներին համապատասխան վարքագիծը: Մարդու մոտ այդ հատկանիշները ձևավորվում և հաստատվում են ամենից առաջ աշխատանքային կոլեկտիվում: Ուստի, անհրաժեշտ է հաշվի առնել ո՛չ միայն արտադրական պլանների կատարման ցուցանիշները, այլև կոլեկտիվում տիրող կարգապահության վիճակը, բարոյաքաղաքական մթնոլորտը, աշխատանքի ու կենցաղի պայմանները: Լրագիրն զգալի տեղ է հատկացնում աշխատանքային կոլեկտիվի դաստիարակչական դերին: Ցավոք, այս կարգի ոչ բոլոր նյութերն են աչքի ընկնում խոր վերլուծությամբ, կոլեկտիվի դաստիարակչական դերի համոզիչ ու պատճառաբանված մեկնաբանությամբ: Եվ, այնուամենայնիվ, խրախուսելի է խմբագրության փորձը՝ նման նյութերի հեղինակ դարձնել բուն արտադրության մարդկանց՝ բրիգադավարների, վարպետների, գյուղատնտեսների, որոնք քաջատեղյակ են արտադրությանն ու արտադրական կոլեկտիվին:

Աշխատանքային կոլեկտիվի հետ մեկտեղ անձի ձևավորման, զարգացման վրա ազդում են և այլ գործոններ՝ ընտանիքը, ըստ բնակավայրի կազմակերպվող դաստիարակչական աշխատանքի մակարդակը, կենցաղային պայմանները, ֆիզիկական կուլտուրան և սպորտը, հանգստի կազմակերպումը: Լրագիրն իր համարներից մեկում (№ 83, 1978) Ոսկեհատ գյուղի կյանքից վերցված օրինակով ձաղկում է այն երևույթը, երբ տղամարդիկ թեթև վաստակի հետևից ընկնելով գյուղատնտեսական ծանր աշխատանքները թողնում են կանանց հույսին: Նրանց օրինակին են հետևում երիտասարդներից շատերը: Հոդվածում իրավացիորեն քննադատվում է ծնողների, շրջապատի անտարբեր վերաբերմունքը աճող սերնդի հանդեպ: Ինչ խոսք, մեծ է նման հոդվածների ներգործուն ուժը:

Մարդու բարոյական դաստիարակության առումով հետաքրքրական է Աշտարակի շրջժողդատարանի նախագահ Յու. Վիրաբյանի Եվ գերանը զարնվում է ափերին... հոդվածը (№ 84, 1978), ուր հեղինակը մեղադրում է մեծերին, ծնողներին, որոնց անտարբերության, ժամանակին նախազգուշական միջոցներ ձեռք չառնելու, երեխաների արատավոր հակումները չկանխելու պատճառով դատարանի առջև են կանգնում կյանքի շեմին նոր ոտք դրած երիտասարդները:

Աշխատավորության ժամանցի, հանգստի կազմակերպման գործում մեծ է կուլտուրայի օջախների դերը: Խելացիորեն տնօրինել երիտասարդության ազատ ժամանակը թղթակցությունում (№ 70, 1978) նշվում է, որ երիտասարդական թեմաներով կազմակերպված դասախոսությունները, զեկուցումները, զրույցները, զանազան թեմատիկ միջոցառումները, գեղարվեստական ինքնագործունեության խմբերի ելույթները, մեծարման երեկոները միշտ էլ ծառայել են իրենց նպատակին: Սակայն նման միջոցառումները սիստեմատիկ չեն կազմակերպվում, իսկ որոշ տեղերում սկսված լավ նախաձեռնություններն էլ շատ շուտ մոռացվում են:

Որ արտադրական հաջողությունները մեծապես պայմանավորված են կուլտուրական հանգստի խելացի կազմակերպմամբ, ցույց է տալիս Սասունիկի սովխոզի օրինակը. այդ տնտեսության հաջողությունների գրավականներից մեկը նրա ղեկավարի հոգատար, հետևողական վերաբերմունքն է աշխատավորության կուլտուրայի, կենցաղի բարելավման նկատմամբ: Արժանի է ընդօրինակման հոդվածում (№ 111, 1978 թ.) լրագիրը պատմում է սովխոզի տնտեսական ղեկավարության և տեղի կուլտլուսավորական հիմնարկությունների համատեղ գործունեության գոհացուցիչ արդյունքների մասին: Մի այլ համարում տպագրված Մարդկանց հոգսերը՝ ուշադրությունից դուրս (№ 92, 1978 թ.) հոդվածում ներկայացված են խմբագրության և շրջանի անասնաբուժարանի միացյալ բրիգադի ստուգայցի արդյունքները: Խոսքն այն մասին է, որ յայլաղներում անուշադրության է մատնված սարվորների հանգստի, բուժման ու սպասարկման գործը: Չկա գրականություն, հազվադեպ են հյուրընկալվում գեղարվեստական ինքնագործունեության խմբերը, ագիտբրիգադները, գրեթե չեն ցուցադրվում կինոնկարներ: Լրագիրն իրավամբ պահանջում է վերացնել այդ թերությունները, բարելավել սարվորների կուլտուրական սպասարկումը:

Լրագիրը մշտապես էջեր է նվիրում աշխատավորությանը սովետական հայրենասիրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու հարցերին: Ծառայում եմ հայրենիքին խորագրի ներքո հրապարակված թղթակցությունները յուրօրինակ բաց նամակ են՝ ուղղված ո՛չ միայն զինվորի հարազատներին, այլև ուսուցիչներին, ընկերներին: Հայրենիքի նկատմամբ ունեցած պարտքի գերազանց կատարումը ռազմահայրենասիրական դաստիարակության լավագույն արգասիքն է:

Ռուսաստանի հետ Արևելյան Հայաստանի միավորման 150-ամյակը խորագիրը ամբողջ 1978 թվականին չի իջել թերթի էջերից: Թեմատիկ հոդվածներ, էջեր են նվիրվել այդ պատմական իրադարձությանը: Հոդվածաշարերով հանդես են եկել դասախոսներ, պատմաբաններ, ժուռնալիստներ: Հայ-ուկրաինական, հայ-լատվիական տնտեսական ու կուլտուրական դարավոր բարեկամության մասին են պատմում լրագրի էջերում տպագրված մի շարք նյութեր:

Ընթերցողների լայն ճանաչմանն է արժանացել լրագրի «Քարաբաղնիս» երգիծական էջը, ուր անխնա խարազանվում են առկա թերությունները: Չկա մի բնագավառ, որի կողքով անտարբեր անցնի «Քարաբաղնիսը», և՛ կենցաղային, և՛ տնտեսական, և՛ սպասարկման ոլորտի թերությունները սուր քննադատության են ենթարկվում լրագրի էջերում: Շրջանային կազմակերպությունները մեծ ուշադրությամբ են արձագանքում «Քարաբաղնիսի» ֆելիետոններին: Համարից համար «Քարաբաղնիս»-ի բոխչայից խորագրի տակ ընթերցողին են ներկայացվում քննադատված կազմակերպությունների, տնտեսությունների պատասխանները:

«Աշտարակ»-ն իր նպատակասլաց գործունեությամբ օգնում է շրջանի աշխատավորությանը՝ կենսագործելու կուսակցության առաջադրանքները, պայքարելու կոմունիստական բարոյականությանն անհարիր երևույթների դեմ: Լրագիրը գիտե ընթերցողին և իր էությամբ հասցեագրված է նրան: Անշեղորեն աճում է այդ ընթերցողի մակարդակը, և «Աշտարակ»-ը ջանում է միշտ գտնվել նոր պահանջների բարձրության վրա:

ԱԻԴԱ ՀՈՎՆԱՆՅԱՆ

*վճարված տուգանքները զգալի են արդյունաբերական շինարարության, շինանյութերի, սննդի արդյունաբերության, առևտրի մինիստրություններում:*

*Ուսումնասիրությունները ցույց են տվել, որ երկաթուղային միջոցների գերնորմատիվ պարապուրդների առաջացման հիմնական պատճառներն են՝ աշխատանքի վատ կազմակերպումը և ցածր կարգապահությունը, շաբաթ, կիրակի օրերին և գիշերային ժամերին բեռնում և բեռնաթափում չկատարելը, այդ աշխատանքների վատ մեքենայացումը, վագոնների ոչ ռիթմիկ մատակարարումը:*

*Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի պետի տեղակալ Գ. Դ. ՄԻՐԻՄԱՆՅԱՆԸ գրում է, որ հոդվածում ճիշտ է ներկայացված արդյունաբերական ձեռնարկությունների կողմից վագոնների օգտագործման վիճակը և բացահայտված՝ վագոնների գերնորմատիվ պարապուրդների պատճառները:*

*Ձեռնարկված միջոցների շնորհիվ հանրապետությունում վագոնների օգտագործումը 1979 թ. առաջին կիսամյակում, նախորդ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատ, որոշ չափով բարելավվել է: Վագոնների շրջանառության զգալի աճի պայմաններում բեռնման-բեռնաթափման ընթացքում պարապ մնացած վագոնների քանակը պակասել է շուրջ 23,6 հազարով: Գերնորմատիվ պարապուրդները կրճատվել են մոտ 300 հազ. վագոն-ժամով: Համապատասխանորեն նվազել է վճարված տուգանքների գումարը:*

*Այնուամենայնիվ, մեզ մոտ յուրաքանչյուր վագոն միջին հաշվով նորմայից ավելի 4 ժամ պարապ է մնում: Կիսամյակում վագոնների գերնորմատիվ պարապուրդները հասնում են մեկ միլիոն վագոն-ժամի:*

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Ինչպես տեսնում ենք, չնայած ձեռնարկված միջոցառումներին և կատարված կոնկրետ աշխատանքին, հանրապետությունում երկաթուղային վագոնների օգտագործման վիճակը հեռու է բավարար լինելուց: Մինիստրությունների, գերատեսչությունների, վարչական մարմինների պարտքն է ամենօրյա հետևողական ջանքեր գործադրել երկաթուղային շարժակազմի գերնորմատիվ պարապուրդները նվազագույնի հասցնելու, վագոնների շրջապտույտը արագացնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի՝ երկաթուղային տրանսպորտի զարգացման միջոցառումների մասին 1977 թ. հունիսի 13-ի որոշման պահանջները, ընկեր Լ. Ի. Բրեժնևի՝ Սիբիրի և Հեռավոր Արևելքի շրջաններում կատարած ուղևորության ընթացքում արված դիտողություններն ու ցուցումները մինչև վերջ կենսագործելու նպատակով:**

---



---


Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 02034 Պատվեր 2185 Թղթի չափսը 70×108 1/16 Տիրաժ՝ 16.300 Գինը՝ 20 կոպ.։ Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության 3/IX—1979 թ.*


# Ձեզ համար, ընթերցողնե՛ր

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Լև Տոլստոյի մասին: *«Հայաստան» հրատ., 1979:*

Բնագիտության և տեխնիկայի պատմությունը Հայաստանում: *Գիտական աշխատությունների ժողովածու— 7: Ե., ԳԱ հրատ., 1979:*

Շ. ՆԱԶԱՐՅԱՆ— Արտադրանքի ինքնարժեքը և դրա իջեցման ուղիները: *«Հայաստան» հրատ., 1979:*

Ռ. ՄԻՐԶՈՅԱՆ— Արդյունաբերության և առևտրի տնտեսական կապերի կատարելագործումը: *Ե., ԳԱ հրատ., 1979:*

Գ. ԱՆԱՆՅԱՆ— Եղիշե Չարենցը և ռուս գրականությունը: *ԵՊՀ հրատ., 1979:*

Վ. ՂԱԶԱՐՅԱՆ— Խաչատուր Աբովյան *(հասարակական գործունեությունը): Ե., ԳԱ հրատ., 1979:*

Լ. ՍՄԻՌՆՈՎ, Ե. ԶԱՅՑԵՎ— Դատավարություն Տոկիոյում: *«Հայաստան» հրատ., 1979:*

Զ. ԲԱԼԱՅԱՆ— Երկու կրակի մեջ: *Ե., «Սովետական գրող», 1979:*

Ա. ՂԱԶԱՐՅԱՆ— Պատերազմ, մարդիկ, ճակատագրեր: *Գիրք 1: Ե., «Սովետական գրող», 1979:*

**В. И. Ленин, КПСС о работе Советов.** М., Политиздат, 1979.

**Л. И. БРЕЖНЕВ. — Актуальные вопросы идеологической работы КПСС.** В двух томах. Т. I. Изд. второе, доп. М., Политиздат, 1979.

**Советская демократия в период развитого социализма.** Изд. 2-е, перераб. М., «Мысль», 1979.

**Развитой социализм и творчество масс.** Актуальные вопросы теории и практики социалистического соревнования. М., Политиздат, 1979.

**Руководящая роль КПСС в условиях развитого социализма.** (Социализм: Опыт. Проблемы. Перспективы). М., «Мысль», 1979.

**Н. ШМЕЛЕВ. — Социализм и международные экономические отношения.** М., «Международные отношения», 1979.

**Ю. МОЛЧАНОВ, А. ВАХРАМЕЕВ. — По пути мира и прогресса.** Внешнеполитическая программа XXV съезда КПСС в действии. М., «Международные отношения», 1979.

**Великий подвиг партии и народа—массовое освоение целинных и залежных земель.** Сборник документов и материалов. М., «Наука», 1979.

**М. ИОВЧУК, Л. КОГАН. — Советская социалистическая культура:** исторический опыт и современные проблемы. М., Политиздат, 1979.

**А. ЧЕРНЯК. — Использование опыта—необходимое условие совершенствования стиля партийной работы.** М., «Знание», 1979.

**К. БРУТЕНЦ. — Освободившиеся страны в 70-е годы.** М., Политиздат, 1979.

**А. КОРШУНОВ. — Отражение, деятельность, познание.** М., Политиздат, 1979.

**Э. ИВАНЯН. — Белый дом: президенты и политика.** Изд. 2-е, перераб. и доп. М., Политиздат, 1979.

Գինը՝ 20 կ. Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԾԱՆՐ ՋՐԱԾԻՆ

*Կառնեգի անվան ինստիտուտում (ԱՄՆ) ստացվել է նոր ձևի ջրածին։ Սովորական ջերմաստիճանում այն թափանցիկ սառցաձև պինդ նյութ է։ Այդ մի նոր քայլ է մետաղական ջրածնի ստեղծման ճանապարհին։ Ջրածնային սառույցն ստացվել է երկրագնդի կեղևի խորքում եղած ճնշմանը հավասար ճնշման պայմաններում։ Գիտնականները գտնում են, որ ամեն մի նյութ, անկախ դրա ձևից, կարելի է վերածել մետաղի, եթե այն ենթարկվի բավական բարձր ճնշման։*

*Փոշեմետաղական ջրածինը կարող է դառնալ միջմոլորակային կամ միջաստղային թռիչքներ կատարող տիեզերանավերի վառելանյութի բաղադրամաս։ Այն արժեքավոր վառելանյութ է նաև ջերմամիջուկային ռեակտորների համար։*

## ՆԱՎԹ՝ ԱՎԱԶԻՑ

*Կանադացի մասնագետները պնդում են, որ մի գեղեցիկ օր նրանք սովորական նավթի պակասը կլրացնեն նավթաբեր ավազների վերամշակմամբ սինթետիկ նավթ ստանալով։ Նրանց կարծիքով այդ ավազներում կա մի քանի տրիլիոն բարել (մեկ բարելը 159 լիտր է) հում նավթ։ Ավազը գտնվում է մինչև 15 մետր խորության վրա՝ փտող բուսականության շերտի տակ։ Նավթակիր ավազի արդյունահանման համար օգտագործվում են հսկա էքսկավատորներ, որոնք մեկ վայրկյանում հանում են 3—4 տոննա ապար։ 2,5 տոննայից ստացվում է մեկ բարել նավթ։*

## ՊՈԼԻՄԵՐԱՅԻՆ ՆՈՐ ՊՐՈՏԵԶՆԵՐ

*Ուկրաինացի բժիշկներն ու քիմիկոսներն առաջարկել են սրտի փականների և արյունատար անոթների պոլիմերային պրոտեզներ, որոնց կառուցվածքում մոլեկուլյար մակարդակով ներմուծված են անտիբիոտիկներ։ Դրանց պատրաստման տեխնոլոգիան պարզ է։ Վիրահատությունից առաջ դրանք լրացուցիչ ախտահանման չեն ենթարկվում։ Պրոտեզների օգտագործումն ապահովում է վերքերի արագ բուժումը, բացառում հետվիրահատման ընթացքում նախկինում հանդիպող բարդությունները, որոնք հետևանք էին կենդանի հյուսվածքի պաշտպանական ռեակցիայի։ Պրոտեզն իր անտիբիոտիկ հատկությունները պահպանում է երեք տարի։*

## ՓՈՔՐ ԵՎ ՀՈՒՍԱԼԻ

*Գերխիտ ռադոնը խիստ թունավոր է։ Պատճառն այն է, որ Մենդելեևի աղյուսակի 86-րդ էլեմենտը բնության մեջ հանդիպում է ռադիոակտիվ իզոտոպների տեսքով։ Նոր հանքահորերի և հանքերի կառուցման ժամանակ դրանք կարող են աստիճանաբար հավաքվել գետնաջրերի տիղմազտիչում և օդում։ Որոշել դրանց կուտակման արագությունը, զգուշացնել վտանգի մասին— ահա այս է ՌԳՌ—11 նոր սարքի խնդիրը։ Եթե նախկինում ռադոնի անալիզի համար հանքահոր էր իջեցվում մի խոշոր սարք, ապա այժմ հսկիչը դրվում է 2,5 կիլոգրամանոց շարժական հարմարանքով։ Չափման ճշգրտությունն ավելացել է 10 անգամ։ ՌԳՌ—11-ը միաժամանակ նաև անալիզի է ենթարկում օդի փոշոտվածությունն ու խոնավության աստիճանը։ Երբ բարձրանում է տարրի խտությունը, սարքի կիսահաղորդչային դետեկտորը տալիս է լուսային ազդանշան։ Այս սարքն օգտագործում են նաև երկրաբանները, ջրաբանները, բժշկության բնագավառի աշխատողները։ Այն նախագծել և պատրաստել են ԼԺՀ և ԳԴՀ ակադեմիաների ինստիտուտները։*